ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

6

ՀՈՒՆԻՍ

ԵՐԵՎԱՆ 1959

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 6
ՀՈՒՆԻՍ
1959 Թ.

★

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXVI
ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ—ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





# ՊԱՏՎՈՎ ԿԱՏԱՐԵԼ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Կոմունիստական հասարակարգի կառուցման մեծագույն առաջմղիչ ուժերից մեկը՝ ազատագրված աշխատանքի բովից ծնված սոցիալիստական մրցությունն է։ Հանդիսանալով նոր կյանքի կերտման ստեղծարար մեթոդ, այն վճռական դեր է խաղացել և շարունակում է խաղալ մեր մեծ Հայրենիքի տնտեսական և կուլտուրական բարգավաճման գործում։ Լինելով միլիոնավոր աշխատավորական զանգվածների քաղաքական բարձր գիտակցության դրսևորում, սոցիալիստական մրցությունը զարգանում է և կատարելագործվում կոմունիստական շինարարության կենսաստեղծ պրոցեսում։ Այս առումով էլ խիստ բնորոշ է այն ուրախալի երևույթը, երբ մեր երկրում կոմունիզմի ծավալուն կառուցման սկիզբը նշանավորվեց սոցիալիստական մրցության առավել բարձր աստիճանով՝ կոմունիստական աշխատանքի բրիգադների կազմակերպմամբ։

ՍՄԿՊ քսանմեկերորդ համագումարի պատվին ծավալված համաժողովրդական շարժումն արտահայտվեց սովետական բանվոր դասակարգի, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի քաղաքական և աշխատանքային բուռն խանդավառությամբ, յոթնամյա պլանի ժամկետից շուտ կատարման նպատակով ստանձնած բարձր պարտավորություններով։ Ձեռնամուխ լինելով յոթնամյա հոյակապ պլանի առաջին տարվա առաջադրանքների կենսագործմանը, մեր ռեսպուբլիկայի աշխատավորները լուրջ հաջողությունների հասան ընթացիկ տարվա անցած ամիսներում։

Կոմունիզմի նյութակա-տեխնիկական բազայի կերտման գործում մեծ դեր վերապահելով սոցիալիստական մրցությանը, ՀԿՊ Կենտկոմը իր մայիսյան պլենումում քննարկեց Հայկական ՍՍՌ կոլտնտեսություններում և սովխոզներում սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքը:

Պլենումը գոհունակությամբ նշեց, որ այս տարվա գարնան գյուղատնտեսական աշխատանքները կատարվել են սեղմ ժամկետում, ագրոտեխնիկայի կանոններով և բարձր որակով։ Անցած չորս ամիսներում ռեսպուբլիկան նշանակալի նվաճումներ ունի և անասնաբուծության ասպարեզում, որն արտահայտվեց (նախորդ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ) մսի արտադրության 21,8 տոկոսի, ձվի՝ 28,1 տոկոսի աճով։ Տվյալ ժամանակաշրջանում ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարմամբ աչքի ընկան Եղեգնաձորի, Վեդու, Կիրովականի, Հոկտեմբերյանի և մի շարք այլ շրջաններ։

Հանգամանորեն քննության առնելով գյուղատնտեսության բոլոր ճյուղերում սոցիալիստական պարտավորությունների կատարման իրական պատկերը, Կենտկոմի պլենումը վեր հանեց աշխատանքի այդ կարևոր բնագավառի

լուրջ թերությունները։ Այս տարի ձգձգվեց ոչ միայն ծխախոտի սածիլումը, այլև դանդաղ ընթացավ խաղողի այգիների բուժումը։ Ժողտնտխորհի սիստեմի սովխոզները այգետնկման տարեկան պլանի միայն կեսն են կատարել։ Մինչդեռ հայտնի է, որ գարնան այգետնկումն ավելի արդյունավետ է, քան աշնան։ Պլենումը անհանդուրժելի գտավ այն հանգամանքը, երբ ռեսպուբլիկայի շրջանների մեծ մասում անբավարար է ընթանում կերաբույսերի և արմատապտուղների, ինչպես և եգիպտացորենի ցանքերի ընդարձակումը։ Այս կարգի թերացումները վտանգում են յոթնամյա պլանի առաջին տարվա առաջադրանքների իրագործումը։

ՀԿԿ Կենտկոմի պլենումը սուր քննադատության ենթարկեց մի շարք շրջանների պարտիական կազմակերպությունների և պետական օրգանների՝ անասնաբուծության ասպարեզում եղած լուրջ թերությունների համար։ Պարզվեց, որ որոշ շրջաններ այս տարվա չորս ամսում չեն կատարել անասնաբուծության զարգացման նպատակով իրենց ստանձնած պարտավորությունները։ Թալինի, Ղուկասյանի, Կալինինոյի, Էջմիածնի, Սիսիանի և Ալավերդու շրջաններում (նախորդ տարվա առաջին չորս ամսվա համեմատությամբ) այս տարի նվազել է անասնաբուծական մթերքների արտադրությունը։ Նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատ ռեսպուբլիկայում պակասել է մեկ ֆուրաժային կովի կաթնատվությունը։ Այս իմաստով դրությունն անմխիթարական է Կալինինոյի, Ստեփանավանի, Ղուկասյանի, Աղինի և Թալինի շրջաններում։ Այս տարվա առաջին չորս ամսում (նախորդ տարվա համեմատությամբ) Ղափանի, Գորիսի, Աշտարակի, Ախուրյանի, Արթիկի և Աղինի շրջանները նշանակալի չափով թերակատարել են անասնաբուծական մթերքների վաճառքի պլանը։

Դատապարտելով այս թերությունները, պլենումը բոլոր պարտիական կազմակերպությունների ուշադրությունը բևեռեց դրանց անհապաղ վերացման վրա, շեշտելով, որ ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների և սովխոզների անասունների գլխաքանակի ներկա աճը երբեք չի ապահովում սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարումը։ Այդ թերությունները չեն կարող չանհանգստացնել պարտիական ու սովետական կազմակերպություններին։

Անասնաբուծության հզոր վերելքի տեսանկյունով մոտենալով եղած վիճակին, պլենումը անբավարար համարեց այն դրությունը, երբ այս տարվա անցած չորս ամիսներին (անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ) խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն աճել է միայն 2,2 տոկոսով, որից կովերինը՝ 6,3 տոկոսով, իսկ մանր եղջերավորներինը՝ 3 տոկոսով։ Ստանձնած սոցիալիստական պարտավորությունների համաձայն ռեսպուբլիկայում այս տարի պետք է կրկնապատկվի խոզի մսի արտադրությունը, մինչդեռ իրականում խոզերի գլխաքանակը ընթացիկ տարվա չորս ամսում ավելացել է միայն 9,7 տոկոսով, իսկ Մեղրիում, Կալինինոյում, Մարտունիում և Աշտարակում նույնիսկ նկատելիորեն նվազել է խոզերի գլխաքանակը։

Չի կարելի հանդուրժել այն դրությունը, երբ նախորդ տարվա առաջին չորս ամիսների համեմատ ընթացիկ տարում ավելացել է անասունների անկումը՝ խոշոր եղջերավորներինը՝ երեք անգամ, մանր եղջերավորներինը՝ երկու ու կես անգամ։ Ամասիայի շրջանի պարտիական կազմակերպու-



թյուններին լուրջ մտահոգություն պետք է պատճառի այն, որ այս տարվա առաջին ամիսներին խոշոր եղջերավոր անասունների անկումը կազմում է 2,3 տոկոս, որից հորթերինը՝ 7,4 տոկոս, իսկ խոզերինը՝ 13,6 տոկոս, այդ թվում խոճկորներինը՝ 23 տոկոս։

Ահա թե ինչու Կենտկոմի պլենումը նման երևույթները համարելով անթույլատրելի և վտանգավոր անասնաբուծության զարգացման համար, պարտավորեցրեց կոլտնտեսությունների և սովխոզների սկզբնական պարտիական կազմակերպություններին, պարտիայի շրջկոմներին, շրջանային Սովետների գործկոմներին և Գյուղատնտեսության մինիստրությանը՝ հայտաբերել մեծ թվով անասունների անկման պատճառները և պատժել այն անձանց, որոնք պատասխանատու են այդ գործում։ Պետք է կատարել ամեն ինչ, որպեսզի բարձր հիմքերի վրա դրվի անասունների կերակրման, խնամքի և նկատվող առանձին հիվանդությունների բուժման գործը, որպեսզի իսպառ վերջ տրվի անկումներին, ապահովվի հոտի արագ վերարտադրությունը և անասունների գլխաքանակի ավելացումը։

Բանն այն է, որ ռեսպուբլիկայի մի շարք շրջաններում (Ղափան, Ամասիա, Ղուկասյան, Կալինինո, Ախուրյան) պարտիական կազմակերպությունները դեռևս վճռական քայլեր չեն արել գյուղատնտեսության բնագավառում եղած թերությունները վերացնելու և ստանձնած սոցիալիստական պարտավորությունները իրոք կատարելու համար։ Դժբախտաբար որոշ շրջաններում լիովին չի հաղթահարված գյուղատնտեսության բնագավառի թերությունները միայն բնական անբարենպաստ գործոնների առկայությամբ պատճառաբանելու մտայնությունը։ Իրականում եղած թերությունների հիմնական պատճառը պարտիական կազմակերպական-քաղաքական աշխատանքի անբավարար վիճակն է։ Դեռ ավելին։ Պլենումը արձանագրեց, որ շատ շրջաններում պարտիական կազմակերպությունները հանդուրժողական վերաբերմունք են հանդես բերում այն աշխատողների նկատմամբ, որոնք ձախողում են ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարումը։

Ինչ խոսք, որ մատնանշված թերությունները վկայում են նաև այն մասին, որ գյուղատնտեսության բնագավառի աշխատողների և ղեկավարների մի որոշ մասը դեռևս խորապես չի գիտակցել սոցիալիստական մրցության վճռական դերը յոթնամյակի կատարման գործում։ Չըմբռնելով սոցիալիստական մրցության բուն էությունը, նրանք գյուղատնտեսության աշխատողներին այդ գործում ճիշտ ուղղություն չեն տվել, որի հետևանքով էլ մի շարք շրջաններում սոցիալիստական մրցությամբ ստանձնել են այնպիսի պարտավորություններ, որոնք ցածր են պլանային առաջադրանքներից։ Ինչպես ողջ ժողովրդական տնտեսության, այնպես էլ գյուղատնտեսության արագ զարգացման կարևորագույն ազդակ համարելով աշխատավորների պրակտիկ պայքարը և ստանձնած սոցիալիստական պարտավորությունների հաջող կատարումը, պլենումը պարտիական կազմակերպություններին և շրջկոմներին հանձնարարեց ամեն կերպ ապահովել սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարումը, առավել բանիմաց, ավելի գործնական միջոցառումներով լուծել գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման և անասնաբուծության զարգացման հրատապ հարցերը։ Այդ կարելի է անել նախ և առաջ աշխատավոր մասսաների մոբիլիզացմամբ, նրանց շրջանում ծավալված սոցիալիստական մրցությանը նոր

թափ հաղորդելով, ձգտելով հասնելու այն բանին, որպեսզի ստանձնած պարտավորությունների կատարումը դառնա յուրաքանչյուր կոլտնտեսականի և սովխոզի բանվորի պատվի գործը։

Հայկական ՍՍՌ կոլտնտեսությունների և սովխոզների առաջավորների ռեսպուբլիկական խորհրդակցությունում ընդունված սոցիալիստական պարտավորությամբ՝ բամբակի արտադրության 1965 թվականի պլանը պետք է կատարել ընթացիկ տարում, շաքարի ճակնդեղինը՝ 1960 թվականին, ծխախոտինը և բանջարեղենինը՝ 1961 թվականին, խաղողինը՝ 1964 թվականին։ Այս խիստ լուրջ և ոգևորիչ պարտավորությունը պարտիական կազմակերպություններից պահանջում է գործի դնել մասսաների կազմակերպման և դաստիարակության բոլոր ձևերը, որպեսզի լուրջ բեկում ստեղծվի ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման գործում։ Իսկ այն շրջանները, որոնք պլանային առաջադրանքներից ցածր կամ աննշան չափով բարձր պարտավորություններ են ստանձնել, պետք է անպայման վերանայեն իրենց սոցիալիստական պարտավորությունները և ստանձնեն այնպիսի պարտավորություններ, որոնց իրագործումը ապահովի պլանային առաջադրանքների ժամկետից շուտ գերակատարումը։

Այժմ անհրաժեշտ է խելացիորեն օգտագործել կոլտնտեսությունների ունեցած բոլոր միջոցները՝ ցանքերը և այգիները լավագույն կերպով մշակելու, ագրոտեխնիկական կանոնները խստորեն կիրառելու, գյուղատնտեսական աշխատանքի առաջավոր մեթոդներն ամենուրեք արմատավորելու համար։ Այսօր ամենակարևորն այն է, որ Հայաստանի կոմունիստները, կոմերիտականները և գյուղի բոլոր աշխատավորները պատվով կատարեն բամբակի, խաղողի, ճակնդեղի, ծխախոտի, հացահատիկի, անասնաբուծական մթերքների և բանջարեղենի արտադրությունն ավելացնելու նպատակով ստանձնած 1959 թվականի պարտավորությունները։

Ելնելով այն փաստից, որ խաղողի և մրգերի արտադրության յոթնամյա պլանի կենսագործումը մեծապես կախված է նոր այգիների յուրացումից՝ ՀԿՊ Կենտկոմի պլենումը պարտավորեցրեց Հայկական ՍՍՌ Ժողտնտխորհին, Գյուղատնտեսության մինիստրությանը, պարտիական շրջկոմներին և շրջսովետների գործկոմներին՝ ձեռք առնել անհրաժեշտ միջոցներ առաջիկա աշնանը խաղողի և պտղատու այգիների տնկումների պլանը անպայման կատարելու համար։ Նման կարևոր առաջադրանքի իրագործումը պահանջում է ոչ միայն բազմաթիվ նոր տնկարանների կազմակերպում, այլև եղած տնկարանների մշակման պրոցեսների արմատական բարելավում։ Տնկարանների խնամքն ու զարգացումը պետք է լինի շրջանային պարտիական կազմակերպությունների, շրջսովետների գործկոմների և Գյուղատնտեսության մինիստրության, ռեսպուբլիկայի Ժողտնտխորհի Սովխոզների վարչության ամենօրյա հոգատարության առարկան։

Ընթացիկ տարվա անցած չորս ամիսներին անասնաբուծական մթերքների և, մասնավորապես, կաթի արտադրության դանդաղ աճը համարելով անթույլատրելի, պլենումը պարտավորեցրեց շրջանային պարտիական կազմակերպություններին, կոլտնտեսությունների վարչություններին, սովխոզների դիրեկտորներին՝ գործադրել բոլոր միջոցները՝ այս ամռանը փակելու այն ճեղքվածքը, որն առաջացավ անցած ամիսների առաջադրանքները կատարելու ընթացքում։ Պետք է հասնել այն բանին, որպեսզի յուրաքանչյուր կթվոր



և անասնապահ ունենա իր ամենօրյա առաջադրանքը և պայքարի դրա անշեղ կատարման համար։

Սիստեմատիկ պայքար կազմակերպելով սոցիալիստական գյուղատնտեսության բոլոր ճյուղերի զարգացման համար, գյուղական շրջանների աշխատողները պետք է գործնական քայլերի դիմեն արոտավայրերի ռացիոնալ օգտագործման, կովերի գիշերային արածեցման, մսացու անասունների գիրացման ուղղությամբ։ Դատապարտելով մատղաշ և միջակից պակաս քաշ ունեցող անասունների վաճառքը, պլենումը միաժամանակ ՀԿՊ գյուղական շրջկոմներից և շրջսովետների գործկոմներից պահանջեց հատուկ ուշադրություն դարձնել խոզաբուծության զարգացման վրա, կանոն դարձնելով, որ 80 կիլոգրամից պակաս քաշ ունեցող և ոչ մի խոզ չպետք է վաճառվի պետությանը։

Ելնելով նրանից, որ ռեսպուբլիկայում միանգամայն անբավարար է թռչնաբուծության վիճակը, Կենտկոմի պլենումը պարտավորեցրեց շրջանների պարտկազմակերպություններին և շրջսովետների գործկոմներին՝ բոլոր կոլտնտեսություններում ստեղծել խոշոր թռչնաբուծական ֆերմաներ, առավելապես խրախուսելով միջկոլտնտեսային թռչնաբուծական ֆերմաներ կազմակերպելու պրակտիկան։ Մեծապես ավելացնելով ձվի արտադրությունը, կոլտնտեսությունները և սովխոզները լրջորեն պետք է զբաղվեն ճագարաբուծությամբ և լողացող թռչունների բազմացմամբ։

Ընդգծելով անասնաբուծության զարգացման համար տոհմաբուծության խոշորագույն դերը, անհրաժեշտ է առաջիկա տարիներում լուրջ բեկում մտցնել և այդ գործում, ավելի լավ կազմակերպել անասունների արհեստական սերմնավորումը, բարելավել արտադրող ցուլերի խնամքը։ Այս ուղղությամբ տեղերում կատարված աշխատանքը համարելով անբավարար, պլենումը նշեց, որ անհրաժեշտ է առաջիկա երկու-երեք տարում կովերի գլխաքանակը համալրել ազնվացեղ երինջներով։

Կենտկոմի պլենումը գյուղատնտեսության ֆրոնտի աշխատողներից պահանջեց ամենակարճ ժամանակամիջոցում հասնել կաթի, մսի (հատկապես խոզի մսի), ձվի և բրդի ինքնարժեքի իջեցման, որի համար անհրաժեշտ է արագ կերպով բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, մեքենայացնել և ավտոմատացնել գյուղատնտեսության արտադրական պրոցեսները։ Միայն այս դեպքում մեծապես կկրճատվեն աշխատանքային ծախսումները և կիջնի գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքը։

Անասնաբուծության զարգացման գլխավոր նախապայմանը համարելով կերի կայուն բազայի ապահովումը, պլենումը պարտիայի շրջկոմներին և շրջսովետների գործկոմներին պարտավորեցրեց կոնկրետ միջոցների դիմել հանրային անասնաբուծության կերի հարուստ բազա ստեղծելու համար։

Անասնաբուծության զարգացման կարևորագույն նախապայման է նաև եգիպտացորենի մշակությունը, որի համար պլենումը պարտիայի շրջկոմներին և շրջսովետների գործկոմներին պարտավորեցրեց ապահովել եգիպտացորենի ցանքերի ավելացման վերաբերյալ ստանձնած պարտավորությունների կատարումը, ամենօրյա հսկողություն սահմանել ցանքի մշակության վրա և հասնել այն բանին, որ կզալիորեն ավելանա բերքատվությունը։

Կենտկոմի պլենումը առանձնապես ընդգծեց այն հանգամանքը, որ ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում և սովխոզներում չափազանց դանդաղ

են արմատավորվում գիտության նվաճումներն ու առաջավոր փորձը: Գյուղատնտեսության յոթնամյա պլանի կատարումը պահանջում է լայնորեն կիրառել անվանի մեխանիզատորներ Գիտալովի և Մանուկովսկու փորձը, ապահովել անասնաբուծության և դաշտավարության աշխատատար պրոցեսների կոմպլեքսային մեքենայացումը: Այս առումով մեծ պարտավորություններ ունեն Գյուղատնտեսության մինիստրությունը և գիտա-հետազոտական հիմնարկները:

Սոցիալիստական մրցության ծավալման գործում խոշոր դեր է վերապահված լենինյան կոմերիտմիությանը, որի անդամներն ընթանում են գյուղատնտեսության առաջավորների շարքերում: Սակայն այս ուղղությամբ կոմերիտմիության ղեկավար օրգանների անելիքները դեռ շատ են. անհրաժեշտ է սոցիալիստական մրցման ոլորտում ընդգրկել երիտասարդական նորանոր զանգվածներ, բարելավել նրանց ղեկավարության գործը:

ՀԿՊ Կենտկոմի պլենումն արձանագրեց, որ Ամասիայի, Ղուկասյանի, Կալինինոյի, Ղափանի և մի քանի այլ շրջաններում պարտիական շրջկոմները և շրջանային Սովետների գործկոմները անբավարար են զբաղվում սոցիալիստական պարտավորությունների կատարմամբ: Ժամանակն է, որպեսզի պարտիական շրջկոմները ավելի համարձակորեն դնեն և լուծեն կոլտնտեսությունների և սովխոզների այն ղեկավարների փոխարինման հարցը, որոնք չեն ապահովում սոցիալիստական պարտավորությունների կատարման նորմալ ընթացքը: Գործի վերածելով պլենումի այս դրույթը, շրջանների պարտիական կազմակերպությունները զգալիորեն կնպաստեն վերցրած պարտավորությունների ժամանակին կատարմանը:

Պլենումը ռեսպուբլիկայի կոմունիստներից և կոմերիտականներից պահանջեց մոտակա օրերին լիովին վերացնել սոցիալիստական պարտավորությունների կատարման ասպարեզում տեղ գտած թերությունները և կրկնապատկված եռանդով պայքարել յոթնամյակի առաջին տարվա պլանները ժամկետից շուտ կատարելու և գերակատարելու համար:

Վեր է ամեն կասկածից, որ ռեսպուբլիկայի աշխատավորները պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ գործի կվերածեն ՀԿՊ Կենտկոմի Մայիսյան պլենումի որոշումները և դրանով իսկ բարձր կպահեն Լենինի շքանշանակիր ռեսպուբլիկայի պատիվը:

---

# ՄԱՍՍԱՅԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ՆՈՐ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՄԱԿԱՐԴԱԿԻՆ

ՀԿՊ Կենտկոմի վերջերս կայացած պլենումը քննության առավ ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների լույսի տակ ռեսպուբլիկայի աշխատավորների շրջանում մասսայական-քաղաքական աշխատանքն ուժեղացնելու միջոցառումների հարցը: Պլենումը նշեց, որ վերջին տարիներում, հատկապես պարտիայի XX համագումարից հետո, ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների կենսագործած մի շարք արմատական միջոցառումների շնորհիվ նշանակալից չափով բարձրացել է աշխատավորների շրջանում տարվող մասսայական-քաղաքական աշխատանքի գաղափարական մակարդակը, ուժեղացել է նրա կապը տնտեսական շինարարության պրակտիկ խնդիրների հետ: Մասսայական-քաղաքական աշխատանքն զգալիորեն բարձրացրել է բանվորների, կոլտնտեսականների ու ինտելիգենցիայի քաղաքական գիտակցականությունը և արտադրական ակտիվությունը, նրանց մոբիլիզացնելով յոթնամյակի վեհ խնդիրները պատվով կենսագործելու համար:

Պլենումը միաժամանակ ընդգծեց, որ այժմ, երբ հաղթանակած սոցիալիզմի երկիրը թևակոխել է իր զարգացման նոր ժամանակաշրջանը—կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը, աշխատավորների կոմունիստական դաստիարակության, մասսայական-քաղաքական աշխատանքի հարցերը ձեռք են բերում առաջնակարգ նշանակություն, դառնում պարտիական, սովետական, արհմիութենական, կոմերիտական և մյուս հասարակական կազմակերպությունների գործունեության կենտրոնական հարցերը:

Մարքսիզմ-լենինիզմը սովորեցնում է, որ սոցիալիզմից կոմունիզմին անցնելու համար անհրաժեշտ է ոչ միայն զարգացած նյութա-տեխնիկական բազա, այլև հասարակության բոլոր քաղաքացիների գիտակցականության բարձր մակարդակ: Որքան բարձր է միլիոնավոր զանգվածների գիտակցականությունը,— ասում է ընկ. Ն. Ս. Խրուշչովը,— այնքան հաջողությամբ կկատարվեն կոմունիստական շինարարության պլանները:

Այժմ մեր առջև ամբողջ հասակով ծառանում է ապագայի մարդու ճիշտ դաստիարակման շնորհակալ ու պատասխանատու խնդիրը: Այդ խնդրի իրականացման համար անհրաժեշտ է վճռաբար բարձրացնել գաղափարական աշխատանքի մակարդակը, այն ամբողջովին ի սպաս դնել սովետական մարդկանց մեջ նոր հատկություններ զարգացնելու գործին, նրանց դաստիարակել կոլեկտիվիզմի ու աշխատասիրության, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության, նոր հասարակարգի բարոյականության վեհ սկզբունքների ոգով, մարքսիզմ-լենինիզմի ոգով:

Ի հակակշիռ շահագործող դասակարգերի բարոյականության, որը հիմնըված է անհատապաշտության, անձնական շահի, թշնամանքի ու խաբեու-

թյան վրա, որի համար բնորոշ է «մարդը մարդուն գայլ է» ֆորմուլան, սոցիալիզմը հաստատում է այլ բարոյականություն՝ համագործակցության ու կոլեկտիվիզմի, բարեկամության ու փոխօգնության բարոյականությունը։

Լենինը բազմիցս նշել է, որ առանց աշխատանքի նկատմամբ մարդկանց հայացքների արմատական հեղաշրջման՝ չի կարելի կոմունիզմ կառուցել։ Ահա թե ինչու մասսաների կոմունիստական դաստիարակության գործը պետք է սերտորեն շաղկապել կյանքի հետ, կոմունիստական շինարարության խնդիրների լուծման հետ։ Դաստիարակության լավագույն դպրոցը, ամենախիստ ուսուցիչը,—ասում է ընկեր Ն. Ս. Խրուշչովը,—կյանքն է, մեր սովետական իրականությունը։ Կոմունիստական դրույթների գրքային, պրակտիկայից կտրված իմացությունը ոչինչ չարժե։ Ամեն ինչ պիտի անել, որպեսզի աշխատանքը, որպես բոլոր նյութական ու կուլտուրական բարիքների ստեղծող, դառնա մարդկանց կենսական, առաջնային պահանջը։

Չպետք է մոռանալ, որ կոմունիստական ապագայի մարդու դաստիարակությունը բարդ պրոցես է, որ կոմունիստական հայացքների ու վարքի նորմաների զարգացումը տեղի է ունենում ոչ թե ինքնահոսով, այլ համառ դաստիարակչական աշխատանքով, մարդկանց գիտակցությունից կապիտալիզմի մնացուկները վերացնելու միջոցով։

Այս հանգամանքը ավելի բարձր խնդիրներ է դնում գաղափարական ֆրոնտի բոլոր աշխատողների առջև, հրամայաբար պահանջում է բարձրացնել գրավոր և բանավոր պրոպագանդայի, քաղաքական ագիտացիայի, գաղափարական ներգործման մյուս բոլոր օղակների աշխատանքի մակարդակը։

Այս տարվա մարտի 11-ին ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն ընդարձակ որոշում ընդունեց «Ստալինյան մարզի աշխատավորության մեջ տարվող մասսայական-քաղաքական աշխատանքի վիճակի և բարելավման միջոցառումների մասին»։ Այդ կարևոր փաստաթուղթը մասսաների կոմունիստական դաստիարակության գործում մեր պարտիայի անդուլ հոգատարության նոր օրինակ է հանդիսանում։ Կենտկոմի այդ որոշումը հանդիսանում է մասսաների մեջ կատարվող քաղաքական աշխատանքի բարելավման, նրա մեթոդների ու ձևերի կատարելագործման կոնկրետ ծրագիրը։

Իր այդ որոշմամբ Կենտրոնական Կոմիտեն պրոպագանդիստներից ու ագիտատորներից և, ամենից առաջ, պարտիայի ու պետության ղեկավար կադրերից պահանջում է ավելի մոտիկից զբաղվել մասսաների քաղաքական դաստիարակության հարցերով, ավելի սերտ կապվել նրանց հետ։ Մասսաների հետ գործնական, ամենօրյա կապը,—ընդգծված է Կենտկոմի որոշման մեջ,—պետք է լուրջ չափանիշ լինի յուրաքանչյուր ղեկավար աշխատողի գնահատման համար։ Այդ գործում պարտիայի քաղաքային ու շրջանային կոմիտեների քարտուղարները պարտավոր են անձնական օրինակ ցույց տալ։

Ներկա պայմաններում գաղափարական աշխատանքի հիմնական բովանդակությունը պետք է լինի պարտիայի XXI համագումարի նյութերի խոր պրոպագանդան ու պարզաբանումը, որը պրոպագանդիստների, ագիտատորների, պարտիական բոլոր աշխատողների ու ակտիվիստների պատվավոր և առաջնահերթ խնդիրն է։

ՍՄԿՊ XXI համագումարից հետո անցած ժամանակաշրջանում ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները նշանակալի աշխատանք են կատարել այդ ուղղությամբ։ Բավական է նշել, որ ՍՄԿՊ XXI համագումարի



նյութերի շուրջը անցած չորս ամսում ավելի քան 8000 դասախոսություններ ու զեկուցումներ են կարդացվել պարտիական կոմիտեներին կից եղած դասախոսական խմբերի, Քաղաքական և գիտական գիտելիքների տարածման ռեսպուբլիկական ընկերության անդամների ուժերով։ Պարտիական կազմակերպություններին հաջողվեց համագումարի որոշումների և նյութերի պարզաբանման գործում ապահովել պարտիական, սովետական, արհմիութենական, կոմերիտական ղեկավար աշխատողների մի զգալի մասի, բազմաթիվ գիտնականների ակտիվ մասնակցությունը։ Մամուլի, ռադիոյի և հեռուստատեսության աշխատանքը նույնպես հիմնականում ընթացել է ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների լայն պարզաբանման ու կենսագործման նշանաբանով։

Համագումարի որոշումների և նյութերի ուսումնասիրությամբ էին զբաղված պարտիական լուսավորության ցանցի բոլոր օղակներում ընդգրկված մոտ 85 հազար կոմունիստներ ու անպարտիական ակտիվիստներ։ Այդ հանգամանքը նկատելի չափով բարձրացրեց քաղաքական ուսուցման գաղափարական մակարդակը, ուժեղացրեց կոմունիստների ու անպարտիականների հետաքրքրությունը մարքսիզմ-լենինիզմի տեսության հարցերի նկատմամբ, նպաստեց ուսուցման ու կյանքի կապի ամրապնդմանը։

ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների պրոպագանդայի, պարզաբանման և ուսումնասիրության գործում առանձնապես ուսանելի փորձ է կուտակել Երևանի պարտիական կազմակերպությունը։ Աշխատավորների շրջանում մասսայական-քաղաքական աշխատանքի հարցը քննության է առնվել քաղաքային կոմիտեի և շրջանային կոմիտեների պլենումներում։ Պարտիական կազմակերպությունները լայնորեն կիրառում են մասսայական աշխատանքի այնպիսի ձևեր, ինչպիսիք են՝ հարց ու պատասխանի երեկոները, բանավոր ամսագրերը, հանդիպումները առաջավոր մարդկանց հետ, զրույցները, որոնց ակտիվ մասնակցություն են ցույց տալիս բազմաթիվ պարտիական, սովետական ու տնտեսական ղեկավար աշխատողներ, գիտնականներ։

Քաղաքային կոմիտեն խրախուսելի նախաձեռնություն է հանդես բերել նաև մասսաների գեղարվեստական դաստիարակության ուղղությամբ։ Այդ գործում կարևոր դեր են խաղում կուլտուրայի երեք համալսարանները, որոնք հիմնադրվել են վերջերս։ Այդ համալսարաններում ընդգրկված են հարյուրավոր բանվորներ ու ծառայողներ, որոնց համար սիստեմատիկաբար կազմակերպվում են կարևոր դասախոսություններ, զեկուցումներ և զրույցներ՝ սովետական արվեստի և գրականության ակտուալ հարցերի շուրջը։

Քաղկոմները և շրջկոմները կազմակերպել են մի շարք տեսական կոնֆերանսներ, որտեղ մտքերի փոխանակությամբ հանդես են եկել բազմաթիվ ինժեներներ, գիտնականներ, առաջավոր բանվորներ, որոնք արժեքավոր առաջարկներ են արել յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքի բնագավառում դրական փորձ են ձեռք բերել նաև Լենինական, Կիրովական քաղաքների, Վեդու, Հոկտեմբերյանի, Ալավերդու և այլ շրջանների պարտիական կազմակերպությունները։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտկոմն իր մարտի 11-ի որոշման մեջ հիշեցնում է պարտիական կազմակերպություններին, որ պարտիայի XXI համագումարի պատմական որոշումների պարզաբանումը կարճատև կամպանիա չէ, այլ երկարատև ժամանակաշրջանի հիմնական խըն-

դիր: Այդ խնդրի կենսագործմանը պետք է մասնակցեն բոլոր կոմունիստները և, ամենից առաջ, պարտիական ակտիվը:

Պետք է ասել, որ մինչև այժմ պարտիայի XXI համագումարի որոշումների ու մյուս նյութերի պրոպագանդան գլխավորապես ընթացել է լայնությամբ: Այժմ մեր կուտակած փորձը մեզ հնարավորություն է տալիս դնել պրոպագանդայի և ագիտացիայի բովանդակության վճռական բարելավման, ամբողջ գաղափարական աշխատանքի մակարդակի էլ ավելի բարձրացման հարցը, միջոցներ ձեռք առնել այդ աշխատանքը խորությամբ ծավալելու համար: Ժամանակն է արդեն, որ մենք համագումարի փաստաթղթերում տեղ գտած ընդհանուր դրույթների պարզաբանումից անցնենք դրանց սիստեմատիկ, համակողմանի և խոր ուսումնասիրությանը:

Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի վերջերս ավարտված պլենումը հանրագումարի բերելով աշխատավորների շրջանում կատարված մասսայական-քաղաքական աշխատանքի արդյունքները, բացահայտեց մի շարք թերություններ, որոնք տեղ են գտել պարտիական լուսավորության, դասախոսական պրոպագանդայի, ագիտացիայի, մամուլի աշխատանքներում: Պլենումը նշեց, որ մի շարք տեղերում աշխատավորների հետ կատարվող մասսայական-քաղաքական աշխատանքը իր բովանդակությամբ ու թափով չի համապատասխանում կյանքի առաջադրած բարձր պահանջներին:

Պարտիայի շրջանային կոմիտեների մի մասը, այդ թվում Արտաշատի, Աղինի, Եղեգնաձորի, Նոյեմբերյանի, Ազիզբեկովի շրջկոմները միանգամայն անբավարար են աշխատում ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների ոգով դասախոսական պրոպագանդան վերակառուցելու, նրա բովանդակությունը հարստացնելու ուղղությամբ: Այդ շրջաններում շատ դասախոսներ օգտվելով պարտիական օրգանների թույլ վերահսկողությունից, վատ են կատարում իրենց պարտականությունները, ելույթներ են ունենում մեծ ընդհատումներով: Նրանց կարդացած թեմաները շատ հաճախ ակտուալ բնույթ չեն կրում, մատուցվում են անհետաքրքիր ձևով:

Մեզ մոտ քիչ չեն դեպքերը, երբ դասախոսը խոսում է բոլոր կարևոր հարցերի մասին, նրա մտքերը, ձևակերպումները ճիշտ են, բայց դրանք լսողներին չեն հասնում, նրանց չեն հուզում, որովհետև դասախոսության մեջ շարադրվում են հանրահայտ ճշմարտություններ, ընդհանուր դրույթներ՝ կտրված կյանքից, տվյալ ձեռնարկության, կոլտնտեսության առջև ծառացած կոնկրետ խնդիրներից: Այդպիսին էր, օրինակ, պատմական գիտությունների թեկնածու Հ. Տոնոյանի՝ Քանաքեռի գինեգործարանում վերջերս կարդացած դասախոսությունը, որից իրավացիորեն դժգոհ էին մնացել բոլոր ունկնդիրները:

Ժամացույցի գործարանի կոլեկտիվը իրավամբ դժգոհ է մնացել պատմական գիտությունների թեկնածու Ա. Վարդապետյանի դասախոսությունից՝ նվիրված ժամանակակից ռևիզիոնիզմի դեմ մղվող պայքարին: Դասախոսին չի հաջողվել անհրաժեշտ խորությամբ պարզաբանել թեման: Ցավալին այն է, որ դասախոսը մակերեսային բացատրություն է տվել ունկնդիրների հարցերին:

Պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ բարելավել դասախոսական կադրերի ընտրության և դաստիարակության գործը, ուժեղացնել հսկողությունը նրանց գործունեության նկատմամբ, ամբիոն չտալ էժան վաստակի ձգտող, քիչ գիտելիքներ ունեցող մարդկանց, մշտական, սիստեմատիկ ու մեթոդական օգնություն ցույց տալ հատկապես շրջաններում աշխատող դասախոսներին, հոգատարությամբ աճեցնել դասախոսական նոր կադրեր, խրախուսել լավագույններին:



Դժբախտաբար պարտիայի մի քանի քաղաքային և շրջանային կոմիտեներ պահանջված հետևողականություն հանդես չեն բերում քաղաքական աշխատանքի դրական փորձը ընդհանրացնելու, այդ աշխատանքի ձևերն ու մեթոդները էլ ավելի կատարելագործելու ուղղությամբ: Շատ տեղերում ագիտացիան կրում է դեկլարատիվ, մակերեսային և ձևական բնույթ, չի ծառայում տվյալ ձեռնարկության կամ կոլտնտեսության առաջ ծառացած խնդիրների լուծմանը, այդ պատճառով էլ այն ոչ մի ազդեցություն չի գործում կյանքի վրա, չի հասնում իր նպատակին: Այդ առումով բնորոշ է Աշտարակի պարտիական կազմակերպության օրինակը: Պարտիայի շրջկոմը վերջին վեց ամսում գաղափարական աշխատանքի հարցերի վերաբերյալ ընդունել է բազմաթիվ որոշումներ: Բայց, դժբախտաբար, այդ որոշումները քիչ են օգնել գործին: Աշխատավորների կոմունիստական դաստիարակության դրվածքը այս շրջանում գտնվում է անմխիթար վիճակում: Պարտիայի շրջկոմի ապրիլի 24-ին տեղի ունեցած պլենումում բազմաթիվ փաստեր բերվեցին այն մասին, թե ինչպես շատ տեղերում քաղաքական աշխատանքը մասսաների հետ ուղղակի ձախողված է: Օրինակ, Լուսակերտի այգեպտղաբուծական սովխոզում ագիտկոլեկտիվը բաղկացած է 13 հոգուց, բայց նրանք գրեթե ոչինչ չեն անում: Միակ գործը, որ այդ ագիտկոլեկտիվը կատարել է, եղել է շրջանի գյուղատնտեսության ցուցանիշների ստենդի կազմակերպումը, որտեղ բերված ցուցանիշներից ոչ մեկը վստահություն չի ներշնչում: Օրինակ, մեծ տառերով գրված է, որ «Աշտարակի շրջանը 1958 թվականին յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացել է 54,5 ցենտներ խաղող», մինչդեռ հայտնի է, որ այդ շրջանը ոչ 1958 և ոչ էլ դրան նախորդող մի քանի տարիներին այդքան բերք չի ստացել: Անցյալ տարի նա ստացել էր մոտ 30 ցենտներ:

Որոշ գյուղերում ագիտատորները աշխատելու փոխարեն զբաղվում են աչքակապությամբ: Օրինակ, Եղվարդի գյուղական գրադարանի վարիչ Թ. Ղազարյանը, որը միաժամանակ ագիտատորի պարտականություն է կատարում, իր աշխատանքային մատյանում գրանցումներ է կատարել տեղի չունեցած զրույցների մասին: Ըստ այդ մատյանի, իբր թե ընթացիկ տարվա չորս ամսում անցկացվել է 23 զրույց, մինչդեռ իրականում անցկացված է դրա կեսից էլ պակաս:

Այս բոլորից հետո պատահական չէ, որ շրջանում թույլ պայքար է մղվում հակահասարակական երևույթների, տեղայնության, կրոնական նախապաշարմունքների դրսևորումների դեմ: ՀԿՊ Աշտարակի շրջկոմը պարտավոր է այս փաստերից լուրջ եզրակացություններ հանել:

Վ. Ի. Լենինը գտնում էր, որ մասսաներին վերադաստիարակել կարող է միայն այնպիսի ագիտացիան, որը կարողանում է աշխատավորներին կապել տնտեսական կյանքի շինարարության հետ: «Դա պետք է լինի գլխավորն ու հիմնականը յուրաքանչյուր ագիտատոր-պրոպագանդիստի աշխատանքում և երբ նա այդ կյուրացնի, այն ժամանակ նրա աշխատանքի հաջողությունն ապահովված կլինի»:

Մի շարք տեղերում քաղաքական ագիտացիան մարտական, հարձակողական բնույթ չի կրում, իր սուր ծայրով չի ուղղվում բուրժուական գաղափարախոսության դրսևորումների, հակահասարակական երևույթների, աշխատան-

քային կարգապահության խախտումների, տեղայնության, գոփողականության, գործալքության, հարբեցողության, զրպարտիչ հերյուրանքների դեմ։

Պարտիական կազմակերպությունները հաճախ լուրջ ուշադրություն չեն դարձնում ագիտատորների ընտրության, դասավորման և դաստիարակության գործի վրա, վատ են օգնում նրանց։

ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների պարզաբանման ուղղությամբ դեռևս անբավարար են աշխատում մեր թերթերի ու ամսագրերի մի զգալի մասը, ռադիոն ու հեռուստատեսությունը։ Տպագրվող նյութերը քանակով շատ են, բայց դրանց մեծ մասը բարձր որակ չունեն։ Մեր մամուլը շատ դեպքերում չի կարողանում պահանջված խորությամբ թափանցել կյանքում կատարվող երևույթների մեջ, նա սովորաբար հանդես է գալիս արձանագրողի դերում։ Մինչդեռ բավական չի ասել, որ այս կամ այն գործարանը, կոլտնտեսությունը նախաձեռնություն հանդես բերեց, այս կամ այն բանվորը, կոլտնտեսականը գերակատարեց իր արտադրական առաջադրանքը, դրա հետ մեկտեղ հարկավոր է բացատրել այդ նախաձեռնության էությունը, ցույց տալ, թե ինչպե՞ս, ի՞նչ մեթոդներով են առաջավորները բարձր ցուցանիշների հասնում։

Միանգամայն անմխիթար է շրջանային մի շարք թերթերի վիճակը։ Պարզ պետք է ասել, որ պարտիայի շրջանային կոմիտեների մի մասը լրջորեն չի զբաղվում իր տպագիր օրգանի ղեկավարման գործով։ Օգտվելով այդ թողարկվությունից, խմբագիրներն իրենց թերթերի սուղ էջերը հաճախ զբաղեցնում են երկրորդական, ոչ կարևոր թեմաներով։

Մասսաների մեջ կատարվող քաղաքական աշխատանքում ղեկավար կադրերի անմիջական մասնակցությունը՝ աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործի հաջողության կարևոր պայմանն է։ Մեզ մոտ, դժբախտաբար, կան առանձին ղեկավար աշխատողներ, որոնք ակտիվորեն չեն մասնակցում աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործի կազմակերպմանը, հանդես չեն գալիս մասսաների առաջ։ ՀԿՊ Կենտկոմի վերջին պլենումում քննադատության ենթարկվեցին մի շարք աշխատողներ այն բանի համար, որ ՍՄԿՊ XXI համագումարից հետո ընկած ժամանակաշրջանում ոչ մի ելույթ չեն ունեցել։ Դրանցից են Հայկոոպի վարչության նախագահ ընկ. Վ. Նավոյանը, նրա տեղակալներ՝ ընկ. ընկ. Վ. Մինասյանը և Հ. Զախարյանը, ՀՍՍՌ Մինիստրների Սովետին կից Սովետական վերահսկողության հանձնաժողովի նախագահի տեղակալ ընկ. Ռ. Թումանյանը, շինարարության մինիստրի տեղակալ ընկ. Ս. Շահնազարյանը, կապի մինիստրի տեղակալ ընկ. Խարազյանը և ուրիշներ։ Ղեկավար աշխատողների մի զգալի մասն էլ վերջին չորս ամսում հանդես է եկել մեկից-երկու անգամ, այն էլ ոչ թե բանվորների, կոլտնտեսականների, այլ իրենց ենթակա կազմակերպությունների նեղ ակտիվի առաջ։ Բանը հասնում է այնտեղ, որ որոշ ղեկավար ընկերներ ելույթների համար սպասում են հանձնարարականի։ Դա ցույց է տալիս, որ մասսաների մեջ կատարվող քաղաքական աշխատանքը նման ընկերների համար դեռ օրգանական պահանջ չի դարձել։ Դա աններելի է։ Միաժամանակ չի կարելի մոռանալ նաև այն, որ, իսկապես, պարտիայի քաղաքային և շրջանային կոմիտեները անհրաժեշտ պահանջկոտություն հանդես չեն բերում այդ գործում, ղեկավար ընկերներին լրիվ չափով չեն օգտագործում մասսայական-քաղաքական աշխատանքում։

Ղեկավար աշխատողները պետք է պարբերաբար հանդես գան ոչ միայն



մեծ աուդիտորիաների, այլև փոքրաթիվ կոլեկտիվների առաջ, ցեխերում, բրիգադներում, ֆերմաներում։ Նրանք քաղաքական զեկուցումների հետ մեկտեղ պարտավոր են բնակչությանը պատմել իրենց գլխավորած հիմնարկությունների ու ձեռնարկությունների գործունեության մասին, ուշադրությամբ ունկնդրեն մասսաների ձայնին, միջոցներ ձեռք առնեն աշխատանքում նկատվող թերությունները վերացնելու համար։

Կյանքի, պրակտիկ խնդիրների հետ մասսայական-քաղաքական աշխատանքի ավելի սերտ կապը՝ նրա հաջողության գրավականն է։ Պարզաբանելով XXI համագումարի որոշումները, ասված է ՍՄԿՊ Կենտկոմի մարտի 11-ի որոշման մեջ, ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի խնդիրները, պարտիական կազմակերպությունները պետք է հասնեն այն բանին, որ աշխատավորները գիտենան ոչ միայն ընդհանուր թվերը, այլև այն, թե ի՞նչ պետք է անել տվյալ ձեռնարկությունում, տվյալ կոլտնտեսությունում ու սովխոզում և ի՞նչ ժամկետներում, ներքին ի՞նչ հնարավորություններ ու ռեզերվներ կան և ինչպե՞ս օգտագործել դրանք։ Պարտիական կազմակերպությունների, ագիտատորների կարևորագույն խնդիրն է՝ յուրաքանչյուր ձեռնարկությունում, կոլտնտեսությունում, սովխոզում, հիմնարկում ստեղծել ստեղծագործական աշխատանքի և արտադրական վերելքի մթնոլորտ, ամեն կերպ զարգացնել աշխատավոր լայն մասսաների ակտիվությունն ու ինքնագործունեությունը, ավելի լայնորեն ծավալել քննադատությունն ու ինքնաքննադատությունը, որպես ճիշտ միջոցի՝ աշխատանքում եղած թերությունների հայտաբերման և վերացման գործում։

ՀԿՊ Կենտկոմի պլենումը պարտիական կազմակերպություններին պարտավորեցրեց ընդլայնել ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքի շրջանակները, ընդգրկելով բնակչության բոլոր խավերը, հատուկ ուշադրություն դարձնել բանվորական և ուսանողական հանրակացարաններում, թաղամասերում, տներում, ետ մնացող տեղամասերում կատարվող քաղաքական աշխատանքի վրա։ Հետևաբար, պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ լուրջ ուշադրություն դարձնել կուլտուրայի պալատների, ակումբների, գրադարանների, կուլտուր-լուսավորական այլ հիմնարկների դերի բարձրացմանը՝ մասսաների կոմունիստական դաստիարակության գործում։ Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրությունը և նրա տեղական օրգանները պետք է ավելի լրջորեն զբաղվեն աշխատավորների կուլտուրական սպասարկման հարցերով, ամեն կերպ նպաստեն գեղարվեստական ինքնագործունեության հետագա զարգացմանը, բարելավեն գրքի վաճառքի գործը, ուժեղացնեն պրոֆեսիոնալ թատրոնների, Հայֆիլհարմոնիայի և արվեստի մյուս հիմնարկների շեֆական օգնությունը գեղարվեստական ինքնագործունեության կոլեկտիվներին։

Անհրաժեշտ է լուրջ ուշադրություն դարձնել ցուցադրական ագիտացիային։ Պլակատների, կոչերի, ցուցատախտակների, հատուկ ստենդների, աշխատանքային փառքի թերթիկների և ցուցադրական այլ նյութերի միջոցով պետք է լայնորեն պրոպագանդել ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը, սոցիալիստական մրցության առաջավորների նվաճումները, նորարարների աշխատանքի փորձն ու մեթոդները։ Մինչդեռ պարտիական կազմակերպությունների աշխատանքն այս ուղղությամբ անբավարար է։ Պլենումը Կուլտուրայի մինիստրությանը հանձնարարեց պրոպագանդիստներին ու ագիտատորներին օգնելու նպատակով հրապարակել բրոշյուրների սերիա՝ նվիրված

ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացմանը, ինչպես նաև ՍՄԿՊ XXI համագումարի նյութերը լուսաբանող գունազարդ պլակատներ։

Պատմական օրեր է ապրում մեր Հայրենիքը։ Կոմունիստական հասարակարգի կառուցման պայծառ հեռանկարներով ոգևորված՝ մեր հերոս ժողովուրդը հայրենանվեր աշխատանքի նոր, փայլուն օրինակներ է տալիս՝ ամեն քայլափոխում դրսևորելով իր անսահման հավատարմությունը սովետական Հայրենիքին, Կոմունիստական պարտիային, նրա լենինյան ամենահաղթ դրոշին։ Մեր սերնդի աչքի առաջ, նրա ոսկե ձեռքերով կառուցվում է կոմունիզմի հոյակապ շենքը, իրականության է վերածվում մարդկության դարերով փայփայած իղձը, նրա նվիրական երազանքը։ Գալիք սերունդները կհիանան ու կհպարտանան մեր ժամանակակիցների աշխարհաշեն գործերով ու անօրինակ սխրագործություններով։

Այժմ մեր գլխավոր խնդիրը, մեր զբաղմունքի և մտորումների գլխավոր առարկան՝ Սովետական Միությունում կոմունիստական հետագա շինարարության, էկոնոմիկայի, աշխատավորների կուլտուրայի ու նյութական բարեկեցության նոր վերելքի, իր մեծությամբ պատմության մեջ հավասարը չունեցող ծրագրի իրագործումն է։ Այդ խնդրի կատարմանը պիտի ուղղվեն սովետական բոլոր մարդկանց, պետական ու հասարակական բոլոր կազմակերպությունների ջանքերը։ Դրան և միայն դրան պիտի ծառայեցնել մեր ամբողջ գաղափարական աշխատանքը։

ՀԿՊ Կենտկոմի պլենումը պարտիայի քաղկոմներին, շրջկոմներին, սկզբնական կազմակերպություններին և Քաղաքական ու գիտական գիտելիքների տարածման ընկերությանը հանձնարարեց քաղաքական-մասսայական աշխատանքի ընթացքում հատուկ ուշադրություն դարձնել բուրժուական իդեոլոգիայի մնացուկների, վնասակար հին սովորությունների, կրոնական նախապաշարմունքների ու ծեսերի վերացման վրա, աշխատավորներին դաստիարակել կոմունիստական բարոյականության, հասարակական հանրօգուտ աշխատանքի հանդեպ բարձր գիտակցականության ոգով։ Դասախոսությունների և զեկուցումների թեմատիկայի շրջանակների ընդլայնման միջոցով անհրաժեշտ է լուրջ աշխատանք ծավալել ՍՍՌՄ եղբայրական ռեսպուբլիկաների, ինչպես նաև սոցիալիստական լագերի երկրների խոշոր նվաճումների պրոպագանդման, միջազգային ռևոլյուցիոն շարժման հարցերի լուսաբանման, մեր բոլոր աշխատավորներին պրոլետարական ինտերնացիոնալիզմի ու լենինյան բարեկամության ոգով դաստիարակելու ուղղությամբ։ Պլենումը պրոպագանդայի ու ագիտացիայի բնագավառում բոլոր ընկերների ուշադրությունը հրավիրեց ազգային սահմանափակվածության ու սնապարծության երևույթների դեմ տարվող պայքարի վրա։

Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ վճռաբար բարելավել գաղափարական աշխատանքը և այն բարձրացնել կոմունիզմի ծավալուն կառուցման մեծ խնդիրների մակարդակին։

---

# ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԼԻԱԿԱՏԱՐ ԵՎ ՎԵՐՋՆԱԿԱՆ ՀԱՂԹԱՆԱԿԸ ՍՍՌՄ-ՈՒՄ

*Մ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարի պատմական նշանակությունն ամենից առաջ այն է, որ այն նշանավորեց մեր երկրի բուռն զարգացման նոր էտապ։ Համագումարի բարձր ամբիոնից ի լուր ամբողջ աշխարհի ազդարարվեց, որ Սովետական Միությունը հասել է սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակին և թևակոխել կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը։ Աշխարհի առաջին բանվոր-գյուղացիական պետության այդ վիթխարի հաջողությունները՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հարաճող հզորացման պայմաններում, միաժամանակ բախտորոշող դեր են կատարում ժամանակակից մարդկային հասարակության հետագա առաջխաղացման գործում, կապիտալիզմից կոմունիզմին անցնելու մեծ ճանապարհին։ Այդ հզոր պրոցեսի ուղին լուսավորված է մարքսիզմ-լենինիզմի թեորիայով։

Պարտիայի XXI համագումարի աշխատանքներն ընթացան ստեղծագործական մարքսիզմի նշանաբանով։ Այդ պատմական համագումարի որոշումները նոր ավանդ են մարքսիզմ-լենինիզմի ընդհանուր գանձարանում։ Ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման մեջ նոր պայմաններին համապատասխան առաջ քաշվեցին մարքս-լենինյան տեսության մի քանի հարցեր, որոնք ունեն տեսական ու պրակտիկ մեծ նշանակություն։ Դրանց թվին են պատկանում ՍՍՌՄ-ում սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակի և Սովետական պետության ու սոցիալիստական մյուս երկրների՝ դեպի կոմունիզմ հետագա զարգացման օրինաչափությունների հարցերը։

***

Քննարկվող թեմայի ճիշտ լուսաբանման համար նախ պետք է պատասխան տալ այն ելակետային հարցին, թե ի՞նչ է սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակը։ Դժվար չէ տեսնել, որ այդ հարցն ունի երկու կողմ կամ երկու ասպեկտ, որոնք թեև կապված են իրար հետ, բայց տարբեր հասկացողություններ են։ Սոցիալիզմի լիակատար հաղթանակի մասին խոսելիս ելնում ենք տվյալ երկրի ներքին պայմաններից ու հնարավորություններից, որոնք ի վիճակի են ապահովելու սոցիալիզմի սկզբունքների իրականացումը։ Մինչդեռ սոցիալիզմի վերջնական հաղթանակի հարցը դրվում է միջազգային առումով, այսինքն՝ սոցիալիզմի հաղթանակ առնվազն այնպիսի մասշտաբով, որը բացառի կապիտալիզմի վերականգնման ամեն մի հնարավորություն։

Բնականաբար տարբեր ժամանակաշրջաններում տարբեր ձևով է դրվել այդ խնդիրը։ Պատմությունը պերճախոս կերպով ապացուցեց այդ հարցի կարևորությունը ռևոլյուցիոն շարժման հաղթանակի համար։ Հայտնի է, որ Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը սոցիալիզմը ուտոպիայից դարձրին գիտություն։ Ավելի քան հարյուր տարի առաջ նրանք ոչ միայն բացահայտեցին կապիտալիզմի կործանման պատմական անխուսափելիությունն ու կոմունիզմի հաղթանակի անհրաժեշտությունը, այլև գիտականորեն ուրվագծեցին ապագա կոմունիստական հասարակության ընդհանուր պատկերը։ Այսպես, օրինակ, Կ. Մարքսը «Գոթայի ծրագրի քննադատությունը» հռչակավոր աշխատության մեջ ցույց տվեց, որ այդ ապագա հասարակությունը կունենա զարգացման երկու աստիճան՝ ստորին՝ սոցիալիզմ, որի բաշխման սկզբունքն է «յուրաքանչյուրից ըստ նրա ընդունակության, յուրաքանչյուրին ըստ նրա աշխատանքի», և բարձրագույն՝ կոմունիզմ, որի բաշխման սկզբունքը կլինի «յուրաքանչյուրից ըստ նրա ընդունակության, յուրաքանչյուրին ըստ նրա պահանջմունքի»։

Սոցիալիզմի ու կոմունիզմի լիակատար ու վերջնական հաղթանակի հարցը Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի մոտ փաստորեն չի երկատվել, այլ դրվել է անբաժան միասնության մեջ։ Դա բացատրվում է նրանով, որ մինչմոնոպոլիստական կապիտալիզմի դարաշրջանում Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը արդարացիորեն սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակը հնարավոր էին համարում միաժամանակ բոլոր երկրներում կամ առնվազն բոլոր խոշորագույն երկրներում, որը պետք է բացառեր կապիտալիզմի վերականգնման ամեն մի փորձ։ Հակառակ դեպքում սոցիալիստական ռևոլյուցիան որևէ մեկ երկրում, Մարքսի դիպուկ արտահայտությամբ, կդառնար «փոթորիկ մի բաժակ ջրի մեջ», այսինքն համեմատաբար հեշտ կճնշվեր բուրժուական պետությունների միացյալ ուժերով։ Այդպես, Փարիզի կոմունան, որը պրոլետարական ռևոլյուցիայի առաջին փորձն էր, ճնշվեց ոչ միայն Վերսալի ռեակցիոն ուժերի, այլև պրուսական ինտերվենտների կողմից։

Ուրեմն, եթե սոցիալիստական ռևոլյուցիան այն ժամանակ կարող էր հաղթանակել միայն միջազգային մասշտաբով, ապա Մարքսը և Էնգելսը սոցիալիզմի ու կոմունիզմի հաղթանակի մասին կարող էին և իրոք խոսում էին թե՛ լիակատար և թե՛ վերջնական իմաստով, դրանք վերցնելով անքակտելի միասնության մեջ։

Դրությունը փոխվեց իմպերիալիզմի դարաշրջանում, երբ առաջացավ սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի նոր օրինաչափություն։ Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի անմահ գործի հանճարեղ շարունակող Վ. Ի. Լենինը կապիտալիստական երկրների տնտեսական ու քաղաքական անհամաչափ զարգացման օրենքի հայտնագործման հիման վրա հանգեց մի երկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության եզրակացությանը, որը հարստացրեց մարքսիզմը սոցիալիստական ռևոլյուցիայի նոր թեորիայով և գործողության մարտական ծրագիր տվեց բոլոր երկրների կոմունիստներին ու աշխատավոր մասսաներին։

Կապիտալիզմի անհամաչափ զարգացումը պայմանավորում է սոցիալիզմի հաղթանակի անհամաչափությունը, այսինքն այն, որ տարբեր երկրներում սոցիալիստական ռևոլյուցիայի պայմաններն ու հնարավորությունները հասունանում են տարբեր ժամանակ, և, հետևապես, հաղթանակն էլ վրա է հասնում ոչ միանգամից։ Սոցիալիստական ռևոլյուցիան հաղթանակում է



սկզբում մեկ և ապա մնացած երկրներում։ Ռևոլյուցիան հաղթանակում է այն երկրում, որը հանդիսանում է իմպերիալիզմի շղթայի թույլ օղակ, այսինքն, այնտեղ, որտեղ առկա են ռևոլյուցիոն սիտուացիա և ռևոլյուցիա կատարող ուժեր, որտեղ ընդհանուր առմամբ իմպերիալիզմի ուժերն ավելի թույլ են, իսկ ռևոլյուցիայի ուժերն ավելի կազմակերպված։ Այսպես էր 1917 թվականին Ռուսաստանում, ուստի և այնտեղ հաղթանակեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան։

Մի երկրում սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի մասին լենինյան տեսությունը դեռ նախահոկտեմբերյան ժամանակաշրջանում ըստ էության կանխորոշեց սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակի նոր հարցադրումը։ Վ. Ի. Լենինը լիովին համոզված էր, որ մեկ երկրում սկսված հաղթական պրոլետարական ռևոլյուցիան կապահովի սոցիալիզմի կառուցումը, եթե անգամ այդ ռևոլյուցիայի հաղթանակն ուշանա մնացած երկրներում։ Պատահական չէ, որ դեռ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի փոթորկոտ օրերին Լենինը գրեց. «Այսուհետև նոր շրջան է սկսվում Ռուսաստանի պատմության մեջ, և տվյալ երրորդ ռուսական ռևոլյուցիան վերջին հաշվով պետք է հասցնի սոցիալիզմի հաղթանակին» (Երկեր, հ. 26, էջ 284)։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայից անմիջապես հետո գլխավորելով Սովետական պետության առաջընթացը, Վ. Ի. Լենինը մշակեց մեր երկրում կոմունիստական հասարակության կառուցման իր հոյակապ պլանը։ ՍՍՌՄ-ում սոցիալիզմի կառուցումը նա դիտում էր որպես «մեր օրերի գլխավոր խնդիր», որի լուծումը երկիրը կդարձներ «իրոք հզոր ու լիառատ»։ Նա ամենից առաջ ընդգծում էր, որ մենք ունենք բոլոր պայմանները, ուժերն ու հնարավորությունները «լիակատար սոցիալիստական հասարակություն կառուցելու համար» (Երկեր, հ. 33, էջ 556)։ Սոցիալիզմի հաղթանակի համար Վ. Ի. Լենինը պահանջում էր իրականացնել երկրի ինդուստրացում, գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցում և կուլտուրական ռևոլյուցիա։ Նա հնարավոր էր համարում սոցիալիզմի լիակատար կառուցումը, այսինքն՝ սոցիալիզմի սկզբունքների կենսագործումը մեր երկրի ներքին պայմանների զարգացման տեսակետից։

Բայց այլ էր դրությունը սոցիալիզմի վերջնական հաղթանակի հարցում։ Քանի որ այստեղ խոսքը վերաբերում էր սոցիալիզմի հաղթանակի ապահովմանը արտաքին վտանգից, բնականաբար, այդ հաղթանակը մեկ երկրում՝ կապիտալիստական շրջապատման պայմաններում չէր կարող վերջնական համարվել։

Այդ միտքն էլ ավելի կոնկրետացնելով Լենինը 1923 թվականին՝ «Լավ է քիչ, բայց լավ» հոդվածում գրում էր. «Պայքարի ելքը, վերջին հաշվով, կախված է նրանից, որ Ռուսաստանը, Հնդկաստանը, Չինաստանը և այլն կազմում են բնակչության հսկայական մեծամասնությունը։ Իսկ բնակչության հենց այդ մեծամասնությունն է, որ վերջին տարիների ընթացքում արտասովոր արագությամբ ներգրավվում է իր ազատագրման պայքարի մեջ, այնպես որ այդ իմաստով կասկածի նշույլ անգամ չի կարող լինել, թե ինչպիսի վերջնական լուծում կունենա համաշխարհային պայքարը։ Այդ իմաստով սոցիալիզմի վերջնական հաղթանակն ապահովված է միանգամայն և անպայման» (Երկեր, հ. 33, էջ 597)։

Այստեղ դժվար չէ տեսնել, որ մի քանի երկրների օրինակով Լենինն ըստ

էության նախատեսում էր սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ստեղծումը, որը և սոցիալիզմի հաղթանակը պիտի դարձներ ու իրոք դարձրեց վերջնական։ Կյանքը լիովին հաստատեց լենինյան հանճարեղ կանխատեսումը։

Սոցիալիզմի վերջնական հաղթանակը, որպես նրա միջազգային անվտանգության ապահովում կապիտալիզմի ռեստավրացիայի փորձից, չի կարելի շփոթել այն հաստատ համոզմունքի հետ, որ ունեցել են ընդհանրապես մարքսիստները կապիտալիզմի դեմ սոցիալիզմի վերջնական հաղթանակի պատմական անխուսափելիության նկատմամբ ամբողջ աշխարհում։ Վ. Ի. Լենինը բազմիցս նշել է, որ նույնիսկ մեկ երկրում սոցիալիզմի հաղթանակի պայմաններում, ինչքան էլ իմպերիալիզմը դիմի ագրեսիվ ոտնձգությունների ու գազանությունների, միևնույն է, ապագան պատկանում է կոմունիզմին։ Այդպիսին է պատմության երկաթյա տրամաբանությունը։

Եզրակացությունը պարզ է։ Լենինին է պատկանում ինչպես մեկ երկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության մասին հանճարեղ տեսությունը, այնպես էլ նոր պայմաններում բուն այդ հաղթանակը լիակատար ու վերջնական տեսանկյունով ըմբռնելու ճշգրիտ հասկացության մշակումը։

Կոմունիստական պարտիան գլխավորելով մեր երկրի սոցիալիստական շինարարությունը, հետևողականորեն ընթացել է լենինյան ուղիով և կենսագործել մեծ առաջնորդի պատգամները։

Սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակի հարցը բավական սուր կերպով դրվեց պարտիայի XIV կոնֆերենցիայում, որը գումարվեց 1925 թվականի ապրիլին։ Այդ ժամանակ մեր երկրի ժողովրդական տնտեսության վերականգնումն արագորեն մոտենում էր իր ավարտին և ամբողջ հասակով ծառանում էր ՍՍՌՄ-ի հետագա զարգացման հեռանկարների, այսինքն՝ սոցիալիզմի կառուցման հարցը։ Այդ առթիվ XIV պարտկոնֆերենցիան ընդունեց ՌԿ(բ)Պ Կենտկոմի թեզիսները՝ «Կոմինտերնի և ՌԿ(բ)Պ խնդիրների մասին՝ ԿԻԳԿ ընդլայնված պլենումի կապակցությամբ», որը հանդիսանում է պարտիայի կարևորագույն փաստաթղթերից մեկը։ Այնտեղ վճռականորեն դատապարտվեց «պերմանենտ ռևոլյուցիայի» տրոցկիստական քարոզը, որը ժխտում էր ընդհանրապես մեկ երկրում սոցիալիզմի հաղթանակի լենինյան թեորիան և, մասնավորապես, ՍՍՌՄ-ում սոցիալիստական շինարարության ծավալման հնարավորությունը։ Պարտկոնֆերենցիայի բանաձևը ելնելով Վ. Ի. Լենինի ղեկավար ցուցումներից, ընդգծում էր, որ մեր երկրում կա ամեն ինչ լիակատար սոցիալիզմ կառուցելու համար։ Բայց կոնֆերենցիան նշեց, որ սոցիալիզմի հաղթանակի հարցն ունի նաև միջազգային կողմ. դա այն է, որ կա կապիտալիստական շրջապատում, որն իր հետ բերում է ռազմական ինտերվենցիայի ու կապիտալիզմի վերականգնման փորձերի վտանգ։ Սովետական ժողովուրդը՝ անձնվիրաբար իր երկիրը պաշտպանելով հանդերձ, չի կարող միայնակ ոչնչացնել կապիտալիստական շրջապատումը։ Դրա համար անհրաժեշտ է սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակ առնվազն մի շարք խոշոր երկրներում։

Պարտիայի XIV կոնֆերենցիայի ճիշտ դիրքորոշումն ուներ ծրագրային ու մոբիլիզացնող նշանակություն։ Սովետական ժողովուրդը ձեռնամուխ լինելով սոցիալիզմի կառուցմանը, հավատացած էր իր գործի լիակատար հաղթանակի մեջ, բայց միաժամանակ միշտ զգոն էր և արթուն կանգնած Հոկտեմբերյան ռևոլյուցիայի նվաճումների պաշտպանության դիրքերում։



Երկրի սոցիալիստական ինդուստրացումը, գյուղատնտեսության կոլեկտիվացումը և կուլտուրական ռևոլյուցիայի հաղթանակը իրականում ապահովեցին սոցիալիզմի կառուցումը մեր երկրում։ Դրա հիման վրա 1939 թվականին՝ պարտիայի XVIII համագումարը կանխագծեց ՍՍՌՄ-ի զարգացման նոր շրջանը՝ սոցիալիզմի կառուցումն ավարտելու և աստիճանաբար կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանը։ Հայրենական Մեծ պատերազմը միառժամանակ ընդհատեց մեր խաղաղ ստեղծագործական աշխատանքը, բայց կատաղի թշնամու դեմ մենք տարանք մեծագույն հաղթանակ և հետպատերազմյան ժամանակաշրջանում վերականգնելով ժողովրդական տնտեսությունը, նորից սկսեցինք մեր առաջընթացը դեպի կոմունիզմ։ Այդ ճանապարհի վրա սովետական ժողովուրդը հասավ վիթխարի նվաճումների և ՍՄԿՊ XXI համագումարն ամփոփելով մեր նվաճումները, կատարեց քաղաքական և գիտական նոր ընդհանրացումներ։ Համագումարը նշեց և ազդարարեց, որ մեր երկրում ապահովված է սոցիալիզմի լիակատար հաղթանակը։ Այդ նշանակում է, որ մեզ մոտ արդեն վաղուց չկան շահագործողներ ու շահագործում ծնող պատճառներ, հաստատվել է սոցիալիստական տնտեսության անբաժան տիրապետություն, մարքսիզմ-լենինիզմը դարձել է համաժողովրդական գաղափարախոսություն և սովետական մարդը ձեռք է բերել սոցիալիստական մտածելակերպ, ամրապնդվել է սովետական հասարակական ու պետական կարգը, բանվորա-գյուղացիական դաշինքն ու ժողովուրդների բարեկամությունը, ստեղծվել է սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնություն, լայն կիրառում է գտել սոցիալիստական դեմոկրատիան, անընդհատ աճում է սովետական մարդկանց նյութական ու կուլտուրական մակարդակը։

Բայց ՍՄԿՊ XXI համագումարն արդարացիորեն ընդգծեց, որ ՍՍՌՄ-ում սոցիալիզմի հաղթանակը ոչ միայն լիակատար է, այլև վերջնական։ Դա բացատրվում է երկրորդ համաշխարհային պատերազմից հետո միջազգային ասպարեզում տեղի ունեցած արմատական փոփոխություններով, որոնք լուրջ հարված հասցրին իմպերիալիզմին և մեկընդմիշտ բացառեցին մեր երկրում կապիտալիզմի վերականգնման վտանգը։ Վերացվեց կապիտալիստական շրջապատումը և ստեղծվեց սոցիալիզմի համաշխարհային սիստեմ՝ Սովետական Միության գլխավորությամբ, որը գնալով անշեղորեն ամրապնդվում ու հզորանում է։ Ընդհանուր առմամբ ամբողջ աշխարհում աճում են սոցիալիզմի ու դեմոկրատիայի ուժերը։ Միաժամանակ կապիտալիստական աշխարհը գալարվում է ներքին հակասությունների մեջ, լիովին փլուզվում է իմպերիալիզմի գաղութային սիստեմը։ Ճիշտ է, քանի դեռ կա կապիտալիզմ, այնքան ժամանակ մնում է պատերազմի վտանգը, բայց ուժերի հարաբերակցության ներկա փոփոխությունը հօգուտ սոցիալիզմի ոչ միայն կարող է լիովին ձախողել ամեն մի ագրեսիա ՍՍՌՄ-ի կամ սոցիալիստական որևէ երկրի դեմ, այլև ընդհանրապես հասարակական կյանքից բացառել համաշխարհային պատերազմը։

Ուրեմն, սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակը մեր երկրում ապահովված է մարդկային հասարակության համաշխարհային զարգացման ողջ ընթացքով, ուստի և այն անառիկ է ու անպարտելի։ Ահա թե ինչու ընկեր Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿՊ XXI համագումարում արդարացիորեն ասաց. «Այժմ աշխարհում չկան այնպիսի ուժեր, որոնք կարողանային մեր երկրում վերա-

կանգնել կապիտալիզմը, խորտակել սոցիալիստական լագերը։ Սովետական Միությունում կապիտալիզմի վերականգնման վտանգը բացառված է։ Դա նշանակում է, որ սոցիալիզմը հաղթանակել է ոչ միայն լիովին, այլև վերջնականապես»։

Սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակի շնորհիվ մեր երկիրը վերածվել է աշխարհի հզորագույն սոցիալիստական տերության՝ առաջնակարգ տնտեսությամբ ու կուլտուրայով։ Այժմ Սովետական Միությունն արդյունաբերական արտադրանքի ծավալով գրավում է առաջին տեղը Եվրոպայում և երկրորդ տեղը՝ աշխարհում։ Անընդհատ աճում է մեր երկրի հանրային հարստությունը և բարձրանում մասսաների նյութական բարեկեցությունը։

Զարմանալի նվաճումներ ունենք կուլտուրայի, գիտության, տեխնիկայի ու արվեստի բնագավառում։ Դրա առավել ցայտուն արտահայտություններն են երկրի սովետական արհեստական արբանյակները և տիեզերական հրթիռն ու արհեստական մոլորակը, որոնց արձակումը դրսևորում է մեր երկրի ողջ էկոնոմիկայի ու գիտության բարձր մակարդակը, իրենց գործին տիրապետած սովետական կադրերի, անձնվեր հայրենասերների ստեղծագործ աշխատանքն ու խանդավառությունը։ ՍՍՌՄ-ն ամենայն իրավամբ դարձել է մարդկային քաղաքակրթության ջահակիրը։ Մեզ մոտ սովորողների թիվը հասնում է 50 միլիոնի, իսկ ժողովրդական տնտեսության մեջ աշխատում են մասնագիտական կրթություն ունեցող $7^1/_2$ միլիոն մարդ։ Սովետական Միության բուհերը 3 անգամ ավելի շատ ինժեներներ են տալիս, քան ԱՄՆ-ի համալսարանները։

ՍՍՌՄ-ում սոցիալիզմի մեծագույն նվաճումներից մեկը լենինյան ազգային քաղաքականության հաղթանակն է, որի շնորհիվ մեր երկրի ժողովուրդները ոչ միայն ձեռք բերեցին քաղաքական, իրավական հավասարություն, այլև հասան իսկական ազգային վերածննդի, տնտեսական ու կուլտուրական զարգացման բարձր աստիճանի։

Լենինյան այդ քաղաքականությունը վառ կերպով դրսևորվեց նաև հայ ժողովրդի նկատմամբ։ Ցարական Ռուսաստանի երբեմնի հետամնաց ու բզկտված Հայաստանն այսօր դարձել է մեր մեծ երկրի ծաղկուն ռեսպուբլիկաներից մեկը, որի արդյունաբերության համախառն արտադրանքը 1913 թվականի համեմատությամբ աճել է 55 անգամ, իսկ գյուղատնտեսությանը՝ 3,5 անգամ։ Լենինի շքանշանակիր Սովետական Հայաստանն իր արժանի ավանդն է մուծում համաշխարհային կուլտուրայի գանձարանը։

Այդպիսին են սոցիալիզմի կառուցման հիմնական արդյունքները ՍՍՌՄ-ում։ Սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակը սովետական ժողովրդի, ինչպես նաև սոցիալիստական բոլոր երկրների համաշխարհային պատմական նվաճումն է, նրանց ինտերնացիոնալ սխրագործությունը, որը հնարավորություն տվեց մեր երկրին թևակոխելու զարգացման նոր շրջան, կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը։

***

Կոմունիզմի ծավալուն շինարարության ներկա ժամանակաշրջանը նախապատրաստվել է մեր երկրի զարգացման ողջ ընթացքով, սոցիալիզմի կառուցմամբ։ Այդ պրոցեսն ավելի արագացվեց Կոմունիստական պարտիայի և



Սովետական կառավարության վերջին տարիների ռևոլյուցիոն միջոցառումներով, որոնք նոր թափ հաղորդեցին արդյունաբերության, գյուղատնտեսության և կուլտուրայի զարգացմանը։

Պարտիայի XXI համագումարն ամենայն կոնկրետությամբ մշակելով սովետական ժողովրդի անելիքները մոտ ապագայում, կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման գլխավոր խնդիրները համարեց կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումը, ՍՍՌՄ-ի տնտեսական ու պաշտպանական հետագա ամրապնդումը և ժողովրդի նյութական ու հոգևոր աճող պահանջմունքների ավելի լրիվ բավարարումը, այն հաշվով, որ լուծվի ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդիրը և մեկ շնչին ընկնող արտադրանքի չափով հասնենք ու անցնենք առավել զարգացած կապիտալիստական երկրներին։

Պարտիայի XXI համագումարն ընդգծեց, որ անցումը սոցիալիզմից կոմունիզմին պատմական օրինաչափ պրոցես է և դա ամենից առաջ այն պատճառով. որ սոցիալիզմն ու կոմունիզմը միևնույն հասարակական-տնտեսական ֆորմացիայի երկու՝ իրար հաջորդող փուլեր են։ Մեր հիմնական նպատակը կոմունիզմի կառուցումն է։ Ուստի հավատարիմ վերընթաց զարգացման դիալեկտիկական օրենքին, չի կարելի կանգ առնել այդ հասարակարգի «ստորին» աստիճանի՝ սոցիալիզմի կառուցման վրա, այլ պետք է առաջ գնալ դեպի նրա բարձրագույն փուլը, դեպի կոմունիզմը։ Այդպիսի առաջխաղացման միակ ուղին սոցիալիզմի խաղաղ վերաճումն է կոմունիզմի։ Դա, իհարկե, տարերային պրոցես չէ, այլ ժողովրդական լայն մասսաների գիտակցական շարժում, որը պահանջում է ամեն կերպ նպաստել կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծմանը, ապահովել յոթնամյա պլանի ժամկետից շուտ կատարումը։

Չպետք է մոռանալ, որ թեև սոցիալիզմն ու կոմունիզմը վերջին հաշվով ունեն միևնույն տնտեսական հիմքը՝ արտադրության միջոցների հասարակական սեփականությունը, բայց և այնպես սոցիալիզմը կառուցվում է կապիտալիզմի կործանումից անմիջապես հետո և որոշ բնագավառներում, Լենինի արտահայտությամբ, չի կարող «լիովին ազատ լինել կապիտալիզմի տրադիցիաներից ու հետքերից»։ Մինչդեռ կոմունիզմն աճում ու զարգանում է սեփական՝ սոցիալիստական բազայի վրա, ուստի և դառնում է լիովին կոմունիստական՝ առանց կապիտալիզմի որևէ մնացուկի։

Կոմունիզմ կառուցելու համար հարկավոր է այնպիսի բարձր աստիճան, որն ապահովում է նյութական ու հոգևոր բարիքների կատարյալ առատություն։ Դրա նախապայմանը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի մեքենայացումն ու ավտոմատացումն է։ Պատահական չէ, որ այդ հարցում բացառիկ կարևոր նշանակություն տալով էլեկտրիֆիկացմանը, Վ. Ի. Լենինն ասում էր, որ «Կոմունիզմը՝ դա Սովետական իշխանություննե է պլյուս ամբողջ երկրի էլեկտրիֆիկացիան»։

Ներկայումս կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում հիմնական պրակտիկ խնդիրը կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումն է, արտադրողական ուժերի հզոր վերելքի կազմակերպումը։ Ահա թե ինչու ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության. զարգացման յոթնամյա պլանով հատուկ ուշադրություն է դարձվում տեխնիկական պրոգրեսի մաքսիմալ կազմակերպմանը, երկրի էլեկտրիֆիկացմանն ու մեքենա-

յացմանը։ Անցումը սոցիալիզմից կոմունիզմին թեև բնա-պատմական պրոցես է, բայց ոչ դանդաղ, այլ արագ տեմպերով։ Դա իսկական տեխնիկական թռիչքի, գիտական նոր խիզախումների շրջանն է։

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում արտադրողական ուժերի զարգացման հետ միասին պետք է անընդհատ կատարելագործվեն արտադրական հարաբերությունները։ Ի տարբերություն սոցիալիզմի, կոմունիզմի ժամանակ պետք է կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության և պետական սեփականության ձևերի միաձուլումից ստեղծվի մեկ միասնական՝ համաժողովրդական սեփականություն, պետք է վերացվեն քաղաքի և գյուղի, մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունները։

Այս տեսակետից հատուկ նշանակություն է ստանում նյութական բարիքների բաշխման կատարելագործման հարցը։ Պարտիայի XXI համագումարը հակահարված տվեց այսպես կոչված «ձախ հավասարեցման» վարկաբեկիչ լոզունգին և ընդգծեց, որ ներկա ժամանակաշրջանում պետք է իրականացնել «հավասար վարձատրություն հավասար աշխատանքի համար» սկզբունքը։ Դա նյութական շահագրգռվածության բարձրացման կարևորագույն նախապայմանն է։ Սակայն միաժամանակ չի կարելի մոռանալ, որ արդեն այժմ մեր երկրում նյութական ու կուլտուրական բարիքների զգալի մասի բաշխումը կատարվում է ձրիաբար, անկախ մարդկանց աշխատանքի քանակից ու որակից։ Այդպես է, օրինակ, ուսուցումը, բուժումը, կենսաթոշակների, նպաստների ապահովումը և այլն։ Չպետք է մոռանալ, որ մեր երկրի ավելի քան 208 միլիոն բնակչությունից, արտադրության մեջ զբաղված են միայն մոտ 100 միլիոն մարդ, մինչդեռ պետությունը ապահովում է 20 միլիոն կենսաթոշակառուների, սպասարկում է 5 միլիոն երեխաների մանկապարտեզներում, մանկամսուրներում և մանկատներում, 7 միլիոն բազմազավակ և միայնակ մայրեր ստանում են նպաստներ, բազմամիլիոն մասսաներ ամեն տարի բուժվում են սանատորիաներում և այլն։ Նման ծախսերը 1958 թվականին կազմեցին 215 միլիարդ ռուբլի, իսկ յոթնամյա պլանով նախատեսվում է 1965 թ. 360 միլիարդ ռուբլի, այսինքն յուրաքանչյուր աշխատողի միջին հաշվով տարեկան կընկնի 3800 ռուբլի։

ՍՍՌՄ-ի և սոցիալիստական երկրների վերելքն ավելի ցայտուն է դառնում կապիտալիստական աշխարհի մռայլ պատկերի համեմատությամբ։ Բավական է հիշատակել, որ բուրժուական գրչակների կողմից թմբկահարվող ԱՄՆ-ում գործազուրկների թիվը հասնում է 5 միլիոնի, 15 միլիոն մարդ ապրում է հետնախորշերում, բազմահազար աշխատավորներ պարզապես սովամահ են լինում։ Ավելի անմխիթար է դրությունը կապիտալի մնացած երկրներում։

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում կարևոր նշանակություն ունի հասարակության քաղաքական, պետական կառավարման հարցը։ Պրոլետարիատի դիկտատուրան դեմոկրատիայի բարձրագույն ձևն է և սոցիալիստական պետության ամենաբնորոշ կողմը դեմոկրատիայի լայն ծավալումն է։ Կոմունիստական շինարարությանը համընթաց էլ ավելի կմեծանա ժողովրդական մասսաների ակտիվությունը երկրի կառավարման գործում և կաճի հանրային ինքնավարությունը։ Որքան մարդկանց կենցաղում լայն ու խոր արմատավորվեն սոցիալիստական-կոմունիստական ապրելակեր-



պըն ու մտածելակերպը, այնքան պետական օրգանների բազմաթիվ ֆունկցիաներ բնականաբար կանցնեն հասարակական կազմակերպություններին։ Այդ մասին են վկայում վերջերս մեր երկրում կատարված մի շարք ձեռնարկումները։

Սակայն այդ բոլորն ամենևին էլ չի նշանակում, թե կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում պետք է թուլացնել սոցիալիստական պետությունը։ Ընդհակառակը, այն պետք է էլ ավելի ուժեղացնել, ամրապնդել նրա զինված ուժերն ու անվտանգության օրգանները և կանխել ու ձախողել սոցիալիզմի թշնամիների բոլոր հնարավոր ոտնձգություններն ու պրովոկացիաները։ Ահա թե ինչու, ՍՄԿՊ XXI համագումարը նոր ուժով դատապարտեց հարավսլավական ռևիզիոնիստներին, որոնք ջուր լցնելով իմպերիալիզմի ջրաղացին, պահանջում են պետության մահացում դեռ սոցիալիզմի ժամանակ։

Կոմունիզմի կառուցումը պահանջում է ոչ միայն արտադրողական ուժերի բարձր մակարդակ, այլև մարդկանց հոգևոր կուլտուրայի մեծագույն հարստություն։ Կոմունիզմը կարող են կառուցել սոցիալիստաբար, կոմունիստաբար մտածող մարդիկ, այսինքն՝ ժողովրդական գիտակից զանգվածները։ Այստեղից էլ այն բացառիկ ուշադրությունը, որ հատկացվում է աշխատավորության կոմունիստական դաստիարակությանը։ Մեր պարտիայի ողջ գաղափարական աշխատանքը, որն աչքի է ընկնում կոնկրետությամբ ու նպատակասլացությամբ, ներծծված է սովետական մարդկանց մեջ ամենաբարձր հատկանիշների զարգացմամբ. Նրանք դաստիարակվում են մարքսիզմ-լենինիզմի ոգով, կոլեկտիվիզմի և աշխատասիրության, սոցիալիստական հայրենասիրության ու ինտերնացիոնալիզմի, հումանիզմի, խաղաղասիրության ու մարտնչող պարտիականության ոգով։

Դրա մի նոր պերճախոս վկայությունն է կոմունիստական աշխատանքի բրիգադների կազմակերպումը, որը նշանավորում է սոցիալիստական մրցության ծավալման ավելի բարձր աստիճան։ Ինչ խոսք, որ կոմունիզմն ամենից առաջ ծնվում է աշխատանքում, հանրօգուտ ու անձնազոհ աշխատանքում։ Պատահական չէ, որ Լենինը կոմունիստական առաջին շաբաթօրյակներն անվանեց «կոմունիզմի ծիլեր», որոնք պետք է աճեն ու դառնան «լիակատար կոմունիզմ»։ Այժմ ավելի քան ակնառու է աշխատանքի այդ կոմունիստական մեթոդի ուժն ու կենսունակությունը։

Սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակը ՍՍՌՄ-ում իր վճռական ազդեցությունն է գործում միջազգային կոմունիստական շարժման հետագա զարգացման վրա։ Բոլոր երկրների աշխատավոր մասսաների մեջ ավելի և ավել է ամրապնդվում հավատն ու վստահությունը սոցիալիզմի գործի հաղթանակի նկատմամբ։ Ամբողջ աշխարհում օրեցօր աճում են սոցիալիզմի, դեմոկրատիայի և խաղաղության ուժերը, հզորանում է սոցիալիզմի համաշխարհային սիստեմը և խարխլվում իմպերիալիզմի լագերը։

Աշխարհում սոցիալիզմի ու կապիտալիզմի ուժերի այդպիսի հարաբերակցության պայմաններում նոր ձևով են դրվում մարդկության և տվյալ դեպքում հատկապես սոցիալիզմի լագերի դեպի կոմունիզմ շարժվելու հրատապ հարցերը։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորումն ու վերելքը ցույց է տալիս աշխարհի ողջ առաջադեմ մարդկության զարգացման ճանապարհը։ Այդ սիստեմն ամենուրեք հենվում է բանվորա-գյուղացիական իշխանության վրա և հանդիսանում է աշխատավոր մասսաների շահերի,

*մարմնացումը։ Ուստի և, սոցիալիզմի լագերը խորապես ինտերնացիոնալ է, նրա մեջ մտնող բոլոր երկրները գտնվում են կատարյալ իրավահավասարության և եղբայրական համագործակցության պայմաններում։ Նման համերաշխությունից բխում է միայն մեկ «անհավասարություն». դա այն է, որ այս կամ այն երկիրը, հատկապես ՍՍՌՄ-ը, ելնելով իր զարգացման համեմատաբար բարձր աստիճանից, նյութա-տեխնիկական և գիտական կուլտուրական առավել կարողությունից, ավելի մեծ օգնություն է ցույց տալիս մյուսին։ Զարգացման այդ տենդենցը, որը միջազգային հարաբերությունների նոր տիպ է և բոլորովին խորթ կապիտալիզմին, տանում է դեպի սոցիալիստական երկրների տնտեսական ու կուլտուրական մակարդակների համահարթում։*

*Ելնելով հասարակական կյանքի այդ զարգացման ռեալ հաշվառումից, ՍՄԿՊ XXI համագումարը մարքսիզմ-լենինիզմը հարստացրեց նաև այն նոր դրույթով, որ սոցիալիստական երկրները փոխադարձաբար օգնելով միմյանց, արագությամբ կկառուցեն սոցիալիզմ և ընդհանուր ճակատով, այսինքն՝ մոտավորապես միաժամանակ կանցնեն կոմունիզմին։*

*Սոցիալիստական երկրների արագ առաջընթացի մեծագույն երաշխիքը՝ կոմունիստական ու բանվորական պարտիաների ղեկավարությունն է։ Վ. Ի. Լենինը հատուկ ուշադրություն դարձնելով ժամանակի ֆակտորին և ընդգծելով նրա ռացիոնալ օգտագործման անհրաժեշտությունը մարքսիստական պարտիայի կողմից, գրել է. «Մենք սովորել ենք հասկանալ, թե ի՛նչ է նշանակում ժամկետ։ Եվ հարկավոր է, որ մենք այս բանը սովորենք այսուհետև էլ։ Մեզանում ոչ ոք չի հավատա որևէ փոփոխության ֆանտաստիկ արագությանը, բայց դրա փոխարեն իրական արագությանը, պատմական զարգացման ամեն մի ժամանակաշրջանի համեմատությամբ առած արագությանը, վերցրած այդ ժամանակաշրջանը, ինչպես նա եղել է,— այդպիսի արագությանը; եթե շարժումը ղեկավարում է իրոք ռևոլյուցիոն պարտիան, այդպիսի արագությանը մենք հավատում ենք և այդպիսի արագությանը մենք, ինչ էլ որ լինի կհասնենք» (Երկեր, հ. 33, էջ 465)։*

*Սոցիալիստական երկրների կոմունիստական պարտիաները զինված մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ թեորիայով, աշխատավոր մասսաներին առաջնորդում են դեպի նորանոր նվաճումներ, դեպի սոցիալիզմի հաղթանակը, որն այնուհետև կվերաճի կոմունիզմի։ Դա է ամբողջ աշխարհի մարդկության զարգացման միակ ճիշտ ու կենսունակ ուղին։*

---

# ՍՍՌՄ-Ը ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐՈՒՄ

## Ջ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

(Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎԻ «Կապիտալիզմի հետ խաղաղ մրցության մեջ հաղթանակի շուրջը» գրքի հրատարակման առթիվ)

*Սովետական Միության արտաքին քաղաքականության գլխավոր խնդիրը խաղաղության պահպանումն է ամբողջ աշխարհում։ Այդ քաղաքականության խարիսխը ժողովուրդների խաղաղ գոյակցության, բարեկամության և համագործակցության լենինյան անմահ գաղափարներն են։ ՍՍՌՄ-ը և սոցիալիզմի ամբողջ լագերը այժմ հանդես են գալիս որպես արդիականության ամենամարդասիրական գաղափարների դրոշակակիրը։ Կոմունիզմն ու խաղաղությունն անբաժանելի են։ Մեր երկրում պայքարը կոմունիզմի համար, դա պայքար է խաղաղության համար։ Կոմունիզմը մարդկանց բնաջնջման բարբարոսական գաղափարախոսությանը հակադրում է ժողովուրդների խաղաղության և բարեկամության գաղափարախոսությունը։*

*Այդ վեհ գաղափարախոսությունն է վերջերս ռուսերեն լեզվով լույս տեսած ընկեր Խրուշչովի գրքի հիմքը, որտեղ ամփոփված են 1958 թվականին ՍՍՌՄ-ի արտաքին քաղաքականության և միջազգային դրության հարցերի շուրջը նրա ճառերն ու հայտարարությունները, օտարերկրյա գործիչների հետ զրույցներն ու ինտերվյուները*[1]*։*

*Այդ նյութերը վառ վկայություն են այն բանի, թե Սովետական կառավարությունը ընկեր Խրուշչովի գլխավորությամբ ինչպիսի հետևողականությամբ, իրոք լենինյան թափով ու նպատակասլացությամբ պայքար է մղում ժողովուրդների միջև խաղաղություն ու բարեկամություն հաստատելու համար։ Գրքի էջերը վկայում են այն մասին, թե ինչպիսի անմիջական և ղեկավար մասնակցություն ունի ընկ. Ն. Ս. Խրուշչովը Սովետական Միության խաղաղասիրական արտաքին քաղաքականության հարցերի մշակման գործում։ Համաշխարհային խաղաղությունն ապահովելու, «սառը պատերազմին» վերջ տալու, սպառազինությունների մրցավազքը դադարեցնելու, ատոմային և ջրածնային զենքն արգելելու, Եվրոպայում և Ասիայում խաղաղության գոտիներ ստեղծելու՝ արդիականության ամենաարմատական, ամենահուզիչ խնդիրների շուրջը գրքում պարունակվող հարցադրումները և մտքերը Սովետական Միու-*

---

[1] Н. С. Хрущев, „К победе в мирном соревновании с капитализмом", Госполитиздат, 1959 г., Москва, 600 стр.

*թյան կառավարության խաղաղասիրական քաղաքականության կվինտ-էսենցիան են։*

*Գրքի լեյտմոտիվը մեր ժամանակի ամենահրատապ և ամենակենսական պրոբլեմն է՝ խաղաղությունը։ Վերջին տարիներին միջազգային հարաբերություններում առանձնապես ակնառու է երկու հակադիր տենդենցների պայքարը։ Մի տենդենցը՝ դա «խաղաղության գոտու», այսինքն Սովետական Միության գլխավորած սոցիալիստական լագերի, ինչպես նաև, Ասիայի ու Աֆրիկայի գաղութային լուծը թոթափած մի շարք երկրների համառ պայքարն է խաղաղության համար, պետությունների միջև լարվածությունը մեղմացնելու, «սառը պատերազմը» վերացնելու և միջազգային չկարգավորված հարցերը բանակցությունների միջոցով լուծելու համար։ Մյուս տենդենցը՝ Արևմուտքի կառավարող շրջանների՝ «սառը պատերազմից» չհրաժարվելու քաղաքականությունն է, նրանց ձգտումը միջազգային պրոբլեմները լուծել «ուժի դիրքերից», որը ոչ միայն չի նպաստում միջազգային դրության բարելավմանը, այլև խոչընդոտում է դրան։ Այդ քաղաքականությունը նշանակում է սպառազինությունների մրցավազք, ամերիկյան ռազմական բազաների ստեղծում ՍՍՌՄ-ի և ժողովրդական դեմոկրատիայի երկրների սահմանների երկայնքով և նոր պատերազմի նախապատրաստություն։*

*Սակայն միջազգային գործերում այժմ նախաձեռնությունն ամբողջապես գտնվում է խաղաղության լագերի և, առաջին հերթին, ՍՍՌՄ-ի, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի և սոցիալիստական մյուս երկրների ձեռքում, որոնք հարաճուն ազդեցություն են գործում համաշխարհային իրադարձությունների ընթացքի վրա։ Հսկայական չափով աճել են խաղաղության համար, միջազգային լարվածության մեղմացման համար պայքարող ուժերը։ Հենց դրա շնորհիվ էր, որ վերջ տրվեց արյունահեղ պատերազմին Կորեայում և Վիետնամում, խաղաղության պայմանագիր կնքվեց Ավստրիայի հետ, անցկացվեց չորս տերությունների կառավարությունների ղեկավարների խորհրդակցություն 1955 թվականին Ժնևում, տապալվեցին իմպերիալիստների ագրեսիվ դավերը Մերձավոր և Միջին ու Հեռավոր Արևելքում։*

*Սովետական Միության և սոցիալիստական լագերի մյուս երկրների ջանքերը միջազգային լարվածությունը մեղմացնելու, զինաթափմանը սկիզբ դնելու, ատոմային և ջրածնային զենքի փորձարկումները դադարեցնելու և զինված ուժերը կրճատելու համար՝ գտնում են բոլոր ազնիվ մարդկանց, բոլոր աշխատավորների հավանությունը։ «Եվ մենք իրավամբ կարող ենք ասել,— մատնանշում է Ն. Ս. Խրուշչովը,— որ աշխարհում չկան ուրիշ այլ պետություններ, որոնց կառավարություններն այդքան համառորեն և անսասան կերպով իրականացնեին նոր պատերազմի սանձազերծումը խոչընդոտող քաղաքականություն, ինչպես այդ անում են սոցիալիստական լագերի պետությունների կառավարությունները, արտահայտելով իրենց ժողովուրդների նվիրական ձգտումներն ու կենսական շահերը» (էջ 315)։*

*Սովետական Միությունը բազմաթիվ կոնստրուկտիվ քայլեր է արել միջազգային լարվածությունը մեղմացնելու ուղղությամբ։ 1955—1958 թվականներին նա միակողմանիորեն կրճատեց իր զինված ուժերի թիվը 2 միլիոն 140 հազար մարդով, դադարեցրեց միջուկային զենքի փորձարկումները։ Վարշավայի պակտի մասնակից մյուս պետություններն իրենց զինված ուժերը կրճատեցին 337 հազար մարդով։ Սովետական կառավարությունը բազմիցս հայ-*



*տարարել է, որ պատրաստ է քննարկել ՆԱՏՕ-ի և Վարշավայի պայմանագրի մասնակից տերությունների տերիտորիաներից օտարերկրյա զինված ուժերը դուրս հանելու և ռազմական բազաները վերացնելու հարցերը։*

*Գրքի էջերից ընթերցողը տեսնում է այն հսկայական նշանակությունը, որ Սովետական կառավարությունը նվիրում է արդիականության առավել անհետաձգելի պրոբլեմի՝ միջուկային զենքի բոլոր տեսակների փորձարկումների դադարեցմանը, որը նպաստավոր հետևանքներ կունենար խաղաղության գործի ամրապնդման և սպառազինությունների հետագա մրցավազքի դադարեցման համար։ Բերտրան Ռասսելին ուղղած իր նամակում ընկ. Խրուշչովն ընդգծում է, որ Սովետական Միությունը պատրաստ է, որքան հնարավոր է արագ կերպով, խաղաղության և ժողովրդի անվտանգության շահերից ելնելով լուծել զինաթափման պրոբլեմը։ Մենք եղել ենք և մնում ենք զինաթափման հարցերի ռադիկալ լուծման կողմնակիցներ, մենք հանդես ենք եկել և հանդես ենք գալիս ատոմային և ջրածնային զենքի անվերապահ արգելման, նրա բոլոր պաշարների ոչնչացման, զինված ուժերի, սպառազինությունների և ռազմական ծախսերի կրճատման կողմնակից։*

*Սակայն Արևմտյան տերությունների ղեկավար շրջանները շարունակում են ուժեղացնել սպառազինությունների մրցավազքը, որը հարստացնում է մի բուռ մոնոպոլիստներին՝ ի հաշիվ հասարակ աշխատավորների, դիմադրում են միջազգային լարվածության մեղմացմանը, շարունակում են կառչել «սառը պատերազմի» քաղաքականությունից։ Առանձնապես դա ակնառու է մեծ տերությունների ղեկավարների բարձր մակարդակի խորհրդակցություն հրավիրելու հարցում ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի կառավարությունների բռնած դիրքից, որոնք ամեն կերպ աշխատում են խոչընդոտել նման հանդիպմանը։*

*Ագրեսիվ ուժերը, որոնք ձգտում են սրել միջազգային լարվածությունը, գործ են դնում սպառնալիքներ, շանտաժ, ճգնում են խաղաղասեր ժողովուրդներին ահաբեկել ատոմային և ջրածնային զենքով։ Ջրածնային ռումբերի բեռով ամերիկյան ինքնաթիռների թռիչքները դեպի Սովետական Միության սահմանները, միջազգային սպառազինությունների մրցավազքի քաղաքականությունը, արևմտագերմանական բունդեսվերը ատոմային զենքով զինելը, ատոմային ու ջրածնային ռումբերի փորձարկման դադարեցման գործում ՍՍՌՄ-ի օրինակին հետևելուց համառորեն հրաժարվելը, սոցիալիստական երկրների դեմ ուղղված ատոմային ու հրթիռային բազաների ստեղծումը խոչընդոտում են միջազգային լարվածության մեղմացմանը, նպաստում են «սառը պատերազմը» շարունակելուն և «տաք պատերազմի» հնարավորությունների ստեղծմանը։*

*Ելնելով խաղաղության ամրապնդման շահերից, Սովետական Միությունն իր քաղաքականությամբ ճանապարհ է ցույց տալիս բոլոր առաջադեմ մարդկանց միավորելու իրենց ջանքերը և համագործակցելու միասնական նպատակին հասնելու համար՝ վերջ տալ ոչ միայն «սառը պատերազմին», այլև բոլոր պատերազմներին, որպեսզի մարդկությունը, օգտագործելով գիտության հիանալի նվաճումները, կարողանա թևակոխել բարգավաճման ու երջանկության դարը, ապրել առանց ահ ու սարսափի և ատելության։*

*Պատերազմները միշտ էլ մեծ աղետներ են պատճառել ժողովուրդներին։ ՄԱԿ-ի տվյալներով անցյալ պատերազմում սպանվել է 32 միլիոն զինվոր, 15-ից 25 միլիոն քաղաքացիական բնակիչ, համակենտրոնացման ճամբար-*

ներում տանջամահ են արվել 26 միլիոն մարդ, հաշմանդամ և անդամալույծ են դարձել մոտ 30 միլիոն մարդ։ Դժվար է ճշտորեն հաշվել այն նյութական վնասները, որ պատերազմը պատճառեց մարդկությանը։ Սովետական Միության վրա ֆաշիստական Գերմանիայի հարձակման հետևանքով մեր երկրի ժողովրդական տնտեսությունը կրեց 2 տրիլիոն 569 միլիարդ ռուբլու վնաս։

Իսկ ապագա պատերազմը, եթե ագրեսորներին հաջողվի այն սանձազերծել, կլինի ամենակործանարարը մարդկության պատմության մեջ։ Նրա կրակներում կզոհվեին միլիոնավոր մարդիկ, երկրի երեսից կջնջվեին մեծ քաղաքներ և արդյունաբերական կենտրոններ, անվերադարձ կերպով կկործանվեին կուլտուրայի անկրկնելի հուշարձաններ, որ մարդկության ջանքերով ստեղծվել են դարերի ընթացքում։ Մասնագետները գտնում են, որ եթե պայթեցվեն միջուկային զենքի բոլոր կուտակված պաշարները, ապա դա կարող է թունավորել ամբողջ երկրագնդի մթնոլորտը, վտանգի տակ դնելով մեր մոլորակի վրա եղած ամեն կենդանի բան։ «Դրա համար,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,—չկա և չի կարող լինել ավելի կարևոր և ավելի ազնիվ խնդիր, քան նոր պատերազմի առաջն առնելու խնդիրը, մեր մոլորակի ժողովուրդներին ազատել նրանց վրա կախված լուրջ սպառնալիքից։ Հենց այդ են պահանջում մարդկության ամենաբարձր շահերը» (էջ 301)։

Զարգացնելով ՍՄԿՊ XX համագումարի այն արմատական միտքը, որ ժամանակակից պայմաններում պատերազմների ճակատագրական անխուսափելիություն չկա, որ խաղաղասիրական ուժերն ի վիճակի են խորտակիչ հակահարված տալ ագրեսորներին և վիժեցնել նրանց ավանտյուրիստական պլանները, ընկեր Խրուշչովն իր բոլոր ելույթներում, հայտարարություններում և նամակներում ելնում է այն համոզմունքից, որ հնարավոր է կանխել պատերազմները և նշում է այդ նպատակին հասնելու ուղիները։

Գրքի բազմաթիվ էջեր տոգորված են այն վսեմ ձգտումով, որպեսզի պետությունների ղեկավարները որոշումներ գտնեն ապավինելով ոչ թե ռազմական կրքերի հրահրմանը, այլ բանականությանն ու ողջախոհությանը, որպեսզի բացառվի պատերազմը և ապահովվի խաղաղությունն ամբողջ աշխարհում։

«Պատերազմը,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— դա հուսահատված մարդկանց վերջին միջոցն է։ Ինչպես այն մարդը, որի օրգանիզմը խոցված է անբուժելի հիվանդությամբ, պատրաստ է դիմելու ամեն ինչի, համաձայն է ամեն մի վիրահատման, հույս ունենալով, որ դա կփրկի նրա կյանքը, այնպես էլ իմպերիալիստները պատրաստ են դիմելու պատերազմի, որպես վերջին միջոցի։ Բայց այդ միջոցը և այդ վիրահատությունը չեն փրկի կապիտալիստական կարգը» (էջ 463)։ Նոր համաշխարհային պատերազմ սանձազերծելու դեպքում առաջին հերթին կկործանվի ինքը՝ պատերազմ ծնող սիստեմը՝ կապիտալիզմը։

Այն պայքարում, որ մղվում է իմպերիալիստական նոր պատերազմի նախապատրաստման դեմ, ընկեր Ն. Ս. Խրուշչովը խոշոր նշանակություն է տալիս խաղաղության համար ծավալված ժողովրդական շարժմանը, գտնելով, որ խաղաղասեր բոլոր ուժերի ակտիվ ու կազմակերպված գործողություններն ընդունակ են սանձահարելու իմպերիալզմի ռազմաշունչ շրջաններին և ապահովելու խաղաղ կյանք բոլոր ժողովուրդների համար։



Վկայակոչելով մոտ անցյալի փորձը, երբ ֆաշիզմի դեմ մղված պայքարում ծնունդ առավ հակահիտլերյան հզոր կոալիցիան, ընկ. Ն. Ս. Խրուշչովը մատնանշում է, որ պետությունների սոցիալ-տնտեսական սիստեմների տարբերությունները խոչընդոտ չեն խաղաղությունը պահպանելու համար։ Այն համագործակցությունը, որն անհրաժեշտ էր արդարացի պատերազմում հաղթանակ տանելու համար, ոչ պակաս անհրաժեշտ է նաև այսօր։

Գրքի էջերից ընթերցողը տեսնում է թե ինչպիսի առավելագույն ջանքեր է գործադրել Սովետական Միությունը Գերմանիայի հետ խաղաղ կարգավորումն իրականացնելու համար։ Բազմաթիվ էջերի միջով կարմիր թելի նման անցնում է այն արմատական միտքը, որ գերմանական երկու պետություններ հետ հաշտության պայմանագրի կնքման դեպքում, վերջ կտրվի Եվրոպայի կենտրոնում այն աննորմալ վիճակին, որն արդեն ավելի քան 14 տարի է ինչ շարունակվում է, պատճառ դառնալով պետությունների միջև բախումների և տարաձայնությունների։ Եվրոպայում խաղաղության պահպանման խնդիրը պահանջում է, որպեսզի վերջնականապես վերացվեն անցյալ պատերազմի հետևանքները։

Բեռլինի հարցի վերաբերյալ ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի, ԳԴՌ-ի և ԳՖՌ-ի կառավարություններին Սովետական կառավարության նոտաներում և հայտարարություններում, ընկ. Ն. Ս. Խրուշչովի մի շարք ելույթներում հիմնավորված են այն կարևորագույն առաջարկները, որոնք համապատասխանում են ոչ միայն գերմանական ժողովրդի, այլև կայուն խաղաղության հաստատման ձգտող բոլոր ժողովուրդների ազգային շահերին։ Սովետական առաջարկները լայն արձագանք են գտել բոլոր երկրներում։

Արևմտյան տերությունները Ֆեդերալ Գերմանիայում ոչ միայն ստեղծել են այնպիսի պետություն, որը ժառանգել է հիտլերյան Գերմանիայի շատ գծեր, որոնք չափազանց վտանգավոր են խաղաղության գործի համար, այլև ԳՖՌ-ն ներգրավել են Հյուսիս-ատլանտյան ագրեսիվ բլոկի մեջ, սկսել են արևմտագերմանական բունդեսվերի զինումը ամերիկյան հրթիռային և ատոմային զենքով։ ԳՖՌ-ի բանակը գերմանական միլիտարիստների հաշվով պետք է ավելի ուժեղ լինի, քան Անգլիայի և Ֆրանսիայի բանակները։ Նա արդեն այժմ ուժեղ է ֆրանսիական բանակից, եթե նկատի ունենանք, որ ֆրանսիական բանակի զգալի մասը գտնվում է իր երկրի սահմաններից դուրս, գաղութներում, որտեղ եռում է ֆրանսիական գաղութարարների դեմ ուղղված ազատագրական շարժումը։

ԳՖՌ-ում արդեն կան ամերիկյան հրթիռներ, որոնք կարող են հագեցվել միջուկային լիցքերով։ Գրքում փաստերի հիման վրա ցույց է տրվում, որ Արևմտյան Գերմանիան տնտեսական տեսակետից նույնպես առաջ է անցել իր հարևան կապիտալիստական երկրներից։ Նա պողպատի արտադրությամբ և արդյունաբերական արտադրանքի մի շարք կարևոր ցուցանիշներով գերազանցել է Անգլիային և Ֆրանսիային։ Նրա ֆինանսական դրությունը նույնպես շատ ավելի ամուր է, քան վերոհիշյալ երկրներինը (էջ 559)։ Գերմանական միլիտարիստները՝ երկու համաշխարհային պատերազմների անմիջական մեղավորները բացահայտորեն հավակնում են այն բանին, որպեսզի դառնան ՆԱՏՕ-ի գծով ԱՄՆ-ի եվրոպական գլխավոր պարտնյորը և ձգտում են որոշիչ դեր խաղալ Եվրոպայում արևմտյան տերությունների քաղաքականության մեջ։

Հետևաբար, արևմտյան տերություններն ամենակոպիտ կերպով խախտել

են հակահիտլերյան կոալիցիայի մասնակիցների Պոտսդամի և մյուս քառակողմ համաձայնագրերը, որոնց նպատակն է ընդմիշտ վերջ տալ գերմանական միլիտարիզմին և ապահովել Գերմանիայի խաղաղ, դեմոկրատական զարգացում: «Միլիտարիզմն Արևմտյան Գերմանիայում ոչ միայն արմատախիլ չի արված,—ասում է ընկ. Խրուշչովը,—այլև, ընդհակառակը, ավելի է բարձրացնում գլուխը» (նույն տեղը):

Մյուս կողմից, ո՛չ իրավաբանական, ո՛չ բարոյական հիմքեր չունեցող այսպիսի աննորմալության պահպանումը, ինչպիսին է օկուպացիոն ռեժիմն Արևմտյան Բեռլինում, խոսում է այն մասին, որ արևմտյան տերությունները ձգտում են այն օգտագործել որպես պլացդարմ սոցիալիստական երկրների դեմ թշնամական գործունեության համար: «Արևմտյան տերությունների համար,—ասում է Ն. Ս. Խրուշչովը,—Արևմտյան Բեռլինը հարմար վայր է Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի, Սովետական Միության և սոցիալիստական լագերի մյուս երկրների դեմ ագրեսիվ քաղաքականություն վարելու համար: Արևմտյան տերությունների որոշակի քաղաքականության հետևանքով, որոնք Արևմտյան Գերմանիայում բորբոքում են ռևանշիստական տրամադրություններ, նպաստում են այնտեղ ֆաշիստական, ռեակցիոն կազմակերպությունների և ուժերի վերածնմանը, Արևմտյան Բեռլինը դարձել է մի յուրատեսակ քաղցկեղի ուռուցք: Եվ եթե այն չվերացվի, ապա դա սպառնում է այնպիսի վտանգ, որը կարող է բավականին անցանկալի հետևանքների հասցնել» (էջ 578): «Պահպանել Արևմտյան Բեռլինի օկուպացումը,—ասում է Ն. Ս. Խրուշչովը,—դա նշանակում է նպաստել «սառը պատերազմի» պահպանմանը և նույնիսկ հրահրմանը» (էջ 592):

1958 թվականի նոյեմբերի 27-ի պրես-կոնֆերանսում ընկ. Ն. Ս. Խրուշչովի պատասխաններից պարզ երևում է ՍՍՌՄ կառավարության մեծ շահագրգռվածությունը միջազգային լարվածության ներկայիս ամենավտանգավոր օջախը վերացնելու և Եվրոպայում նոր պատերազմի հրդեհի բռնկման վտանգը արգելելու գործում: Նա ապացուցում է, որ ապառազմականացված Արևմտյան Բեռլին ազատ քաղաքը կարող էր դառնալ գերմանական երկու պետությունների հարաբերությունների նորմալացմանը նպաստող գործոն, նրանց միջև խաղաղ բեղմնավոր կոնտակտների մի յուրօրինակ կենտրոն, որը կնպաստեր երկրի երկու մասերի աստիճանական մերձեցմանը՝ որպես առաջին փուլ նրա միավորման ճանապարհին, հանուն ինչի ակտիվորեն պայքարում է ԳԴՌ-ն՝ գերմանական ժողովրդի բոլոր առաջադեմ ուժերի պատվարը:

Գերմանիայի Սոցիալիստական Միասնական պարտիայի V համագումարում ընկ. Խրուշչովը հայտարարեց, որ սովետական ժողովուրդը խորապես հարգում և պաշտպանում է գերմանական ժողովրդի ձգտումները միասնական, խաղաղասեր, դեմոկրատական գերմանական պետություն ստեղծելու ուղղությամբ: Գերմանիայի վերամիավորումը բուն գերմանացիների գործն է: Այն իրականացնելու հեռանկար բացող միակ ուղին գերմանական երկու պետությունների՝ ԳԴՌ-ի և ԳՖՌ-ի բանակցությունները, համաձայնությունը և մերձեցումն են: Այդ ուղին գերմանական կոնֆեդերացիայի ստեղծումն է: Միայն իրենք գերմանացիները, գերմանական երկու պետությունները կարող են լուծել Գերմանիայի ազգային վերամիավորման հարցը, ասում է Ն. Ս. Խրուշչովը:

Սովետական Միությունը գտնում է, որ Գերմանիայի հետ հաշտության



պայմանագրի կնքումը կլինի գերմանական հարցի հիմնավոր լուծումը: Գերմանական երկու պետությունների անունից հաշտության պայմանագրի ստորագրումով կլուծվեն դեռևս չկարգավորված շատ պրոբլեմներ: Առաջին հերթին Եվրոպան կազատվեր տասնյակ տարիների ընթացքում պատերազմական կոնֆլիկտների գլխավոր աղբյուրից՝ գերմանական միլիտարիզմից: Հաշտության պայմանագրի սովետական նախագծում ընդծված է, որ գերմանական միլիտարիզմին վերջ դրվելու շնորհիվ մթնոլորտը կպարզվի թե՛ Գերմանիայում, թե՛ ամբողջ աշխարհում, կանհետանար նոր կոնֆլիկտների և նոր պատերազմի ամենալուրջ պոտենցիալ օջախը: Դրանից կշահեին Եվրոպայի բոլոր ժողովուրդները, բոլոր գերմանացիները, խաղաղության գործը Եվրոպայում և ամբողջ աշխարհում:

Սակայն Արևմուտքի իմպերիալիստները չեն ուզում լուծել գերմանական հարցը: Գերմանիան մասնատված պահելով, Արևմտյան Բեռլինի օկուպացումը շարունակելով նրանք ուզում են ձգձգել խաղաղ կարգավորման հարցերը Եվրոպայում, ժամանակն օգտագործել գերմանական ռազմական մեքենան վերածնելու և «դեպի Արևելք» արշավանքի համար նրա ռևանշիստական ձգտումները ջերմացնելու համար:

«Մենք ուզում ենք զգուշացնել ԳՖՌ-ի ղեկավարներին. այն ուղին, որով այժմ ընթանում է Արևմտյան Գերմանիան՝ դա Եվրոպայում խաղաղության գործի համար վտանգավոր և հենց իր՝ Արևմտյան Գերմանիայի համար կործանարար ուղի է,—կարդում ենք գրքում:— ...Կանցլեր Ադենաուերի և նրա մինիստր Շտրաուսի ոչ մի ճառ ի վիճակի չէ փոխելու ուժերի փոխհարաբերությունը հօգուտ իմպերիալիզմի: Արևմտյան Գերմանիայի շարժումը դեպի Արևելք, կլիներ նրա համար շարժում դեպի մահ» (էջ 557):

ՍՍՌՄ կառավարությունը շարունակում է հետևողականորեն հանդես գալ գերմանական հարցի կարգավորման, Եվրոպայի անվտանգության պրոբլեմի լուծման իր հաստատուն քաղաքականությամբ: Սովետական Միության, սոցիալիստական մյուս պետությունների ջանքերը, որոնք ուղղված են միջազգային մթնոլորտը պատերազմի սպառնալիքից մաքրելու, լարվածության մեղմացման հասնելու նպատակին, տալիս են իրենց առաջին, բայց արդեն հուսադրող արդյունքները: Միջազգային մթնոլորտում սկսվել է տաք քամի խաղալ: Թեև դեռ աննշան, բայց կարծես շարժվում են «սառը պատերազմի» սառույցները: Դրա արտահայտությունը պետք է համարել այն իրողությունը, որ Սովետական Միության ջանքերի շնորհիվ, ամբողջ աշխարհի խաղաղասեր հասարակայնության ճնշման տակ ԱՄՆ-ի, Մեծ Բրիտանիայի և Ֆրանսիայի կառավարությունների ներկայացուցիչները ստիպված եղան նստելու բանակցությունների սեղանի շուրջը և քննարկելու այնպիսի հրատապ և հասունացած միջազգային պրոբլեմներ, ինչպիսին Գերմանիայի հետ հաշտության պայմանագրի և Բեռլինի դրության նորմալացման պրոբլեմներն են:

Գրքում քննարկվող պրոբլեմների շարքում հատկապես կարևոր տեղ են գրավում սոցիալիստական երկրների միասնության և եղբայրական համագործակցության հարցերը: Ամբողջ ուժով ընդգծված է, որ մեր պարտիայի գլխավոր գիծն ուղղված է դեպի մեծ սոցիալիստական լագերի միասնության պաշտպանությանն ու հետագա ամրապնդմանը: Ղեկավարվելով պրոլետարական ինտերնացիոնալիզմով, հավատարիմ նրա սկզբունքներին, ասում է ընկ. Խրուշչովը, ՍՄԿՊ-ն միշտ պատրաստ է կատարելու իր ինտերնացիոնալիս-

տական պարտքը մյուս երկրների աշխատավորության հանդեպ։ Իր տարբեր ելույթներում ընկ. Խրուշչովը ցույց է տալիս, որ մեր պարտիայի քաղաքականությունը խարսխվում է մարքսիզմ-լենինիզմի գրանիտե հիմքի վրա և ենթադրում է հետևողական սկզբունքային պայքար նրա անաղարտության համար, ընդդեմ ռեվիզիոնիզմի և ամեն տեսակի օպորտունիզմի։ Ժողովածուում ամփոփված նյութերում զգալի տեղ է բռնում ժամանակակից պայմաններում առանձնապես վնասակար դեր կատարող ռեվիզիոնիզմի հարավսլավական տարատեսակության քննադատությունը։

ՍՍՌՄ խաղաղասեր արտաքին քաղաքականությունը, որ ընկ. Ն. Ս. Խրուշչովի գլխավորությամբ իրագործում է Սովետական կառավարությունը, իր վառ արտահայտությունն է գտնում գաղութատիրության դեմ մղվող ազատագրական շարժման ակտիվ պաշտպանության մեջ, ազատագրված ժողովուրդներին իմպերիալիզմի դավերից պաշտպանելու և թույլ զարգացած երկրներին անշահախնդիր օգնություն ցույց տալու մեջ։ Շնորհիվ Սովետական Միության և սոցիալիզմի ամբողջ լագերի քաղաքականության, համաշխարհային իմպերիալիստական ուժերի և, առաջին հերթին, ԱՄՆ-ի փորձերը՝ խեղդելու Արևելքի ժողովուրդների անկախության պայքարը՝ պարտություն պարտության հետևից են կրում։ Սովետական Միությունը իր հեղինակությամբ բազմիցս հարկադրել է իմպերիալիստներին հրաժարվելու Արևելքի երկրների դեմ ոտնձգություններ կատարելուց։

Ընթերցողի աչքերի առջև վերականգնվում են անցյալ՝ 1958 թվականի իրադարձությունները Մերձավոր և Միջին Արևելքում, երբ մարդկությունը ծանր տագնապ էր ապրում արևմտյան պետությունների բացահայտ ագրեսիայի հետևանքով։ Ահա այդ օրերին, երբ լուծվում էր «պատերա՞զմ, թե խաղաղություն հարցը», երբ այլևս չէր կարելի ոչ մի րոպե հապաղել, Սովետական Միությունն իր ղեկավար Ն. Ս. Խրուշչովի միջոցով վճռականորեն պահանջեց մարել պատերազմի օջախը Մերձավոր և Միջին Արևելքում, դուրս բերել ամերիկյան զորքերը Լիբանանից, դադարեցնել մեքենայությունները Իրաքի նորաստեղծ ռեսպուբլիկայի դեմ, պահպանել և ամրապնդել խաղաղությունը։

Պատասխանելով հնդիկ ժուռնալիստների այն հարցին, թե ինչ ձևեր կարող էին ընդունել ամբողջ աշխարհի խաղաղության պահպանման նպատակով ՍՍՌՄ-ի, Հնդկաստանի և Արևելքի այլ երկրների համատեղ գործողությունները, Ն. Ս. Խրուշչովն ասում է. «Գլխավորն այժմ այն է, որպեսզի հասարակական կարծիքը, բոլոր երկրների ժողովուրդները թույլ չտան, որ իրենց հրապուրեն գաղութարարների այս և այն մանևրներով, և էլ ավելի վճռականորեն դատապարտեն Արևմուտքի մի քանի պետությունների ագրեսիվ գործողությունները Մերձավոր ու Միջին Արևելքի երկրների դեմ» (էջ 476)։

Շնորհիվ Սովետական Միության, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի և խաղաղասեր բոլոր երկրների աննահանջ դիրքի, իմպերիալիստների ագրեսիան անփառունակ ձախողումով ավարտվեց։ Անզոր գտնվեցին բոլոր իմպերիալիստական դավերն ու դավադիրները, որոնք ձգտում են շղթայել պատմության առաջընթացը։

Ժողովածուի նյութերում մեծ տեղ են գրավում կապիտալիզմի հետ սոցիալիզմի խաղաղ մրցության հարցերը։ Հատկապես ընդգծվում է այն գլխավոր միտքը, որ «մենք առանց պատերազմի էլ կհաղթենք կապիտալիզմին, կհաղթենք նրան խաղաղ մրցության մեջ, մեր աշխատանքով։ Սոցիալիզմն իր



դիրքերը կնվաճի ոչ պատերազմի ճանապարհով» (էջ 396—397)։ «Մենք անկեղծորեն կապիտալիստական երկրներին ասում ենք, եկեք մրցենք ոչ թե այն բանում, թե ով ավելի շատ ջրածնային ռումբ և հրթիռ ունի—այսպիսի «մրցությունը» ժողովուրդներին ոչ մի լավ բանի չի հասցնի,— այլ այն բանում, ով ավելի շատ բնակարան, դպրոց և հիվանդանոց կկառուցի, ավելի շատ հաց, կաթ, միս, հագուստ և սպառողական ապրանքներ կարտադրի. հենց այսպիսի մրցության մեջ են շահագրգռված ժողովուրդները։ Ի հակադրություն «եկեք զինվենք» լոզունգին, մենք առաջ ենք քաշում «եկեք առևտուր անենք» լոզունգը» (էջ 80)։

Ընկեր Խրուշչովը բազմաթիվ թվական տվյալներ է վկայակոչում, որոնք վկայում են կապիտալիստականի համեմատ սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման գերազանց տեմպերի մասին, այն մասին, որ կապիտալիզմի գլխավոր երկրի՝ ԱՄՆ-ի հետ ՍՍՌՄ-ի խաղաղ մրցությունում մենք արդեն հիանալի արդյունքներ ունենք։ Ներկայումս մեր երկիրն ԱՄՆ-ից առաջ է անցել արդյունաբերական և գյուղատնտեսական մի շարք ապրանքների և մթերքների արտադրությամբ։ Մեր արդյունաբերությունն այժմ մեկ տարում այնքան արտադրանք է տալիս, որքան անցյալում նա կարող էր թողարկել 15—20 տարում։

Սակայն Ն. Ս. Խրուշչովն ընդգծում է, որ թեև «կապիտալիզմի հետ ծավալված խաղաղ մրցության մեջ մեր հաղթանակներն անվիճելի են, բայց դա մեզ հիմքեր չի տալիս, որ անձնատուր լինենք ինքնագոհության, բարեհոգության, ինքնահանգստացման տրամադրությունների։ Մենք ոչ մի րոպե չպետք է մոռանանք, որ արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության մի շարք ճյուղերում մենք դեռ ետ ենք մնում կապիտալիստական երկրներից, որ մենք դեռ ոչ լրիվ չափով ենք բավարարում մեր երկրների բնակչության հարաճուն պահանջմունքները» (էջ 416)։

Մեր երկրի յուրաքանչյուր առաջընթաց քայլը կապիտալիզմի հետ տնտեսական խաղաղ մրցության մեջ, տնտեսության զարգացման, կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման ուղղությամբ դա մի հաղթանակ է նոր պատերազմի վտանգը հեռացնելու և խաղաղությունը պահպանելու՝ մեր ժամանակի ամենավսեմ գործում։ Այս տեսակետից վճռական դեր կկատարի յոթնամյակի իրագործումը։ Այդքան մեծ մասշտաբի խաղաղ շինարարությունը, ժողովրդի կենսամակարդակը բարձրացնելու ուղղությամբ պլանում ծրագրված հսկայական խնդիրները վկայում են, որ ՍՍՌՄ-ը միայն խաղաղության է ձգտում։ Սովետական ժողովրդի համար չկա ավելի կենսական բան, քան խաղաղությունը։ Դրա համար ՍԿՄՊ XXI պատմական համագումարը Սովետական կառավարության առջև խնդիր դրեց հետևողականորեն վարել խաղաղության և ժողովուրդների անվտանգության ապահովման արտաքին քաղաքականություն՝ սոցիալական տարբեր սիստեմներ ունեցող երկրների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքի հիման վրա իրագործել միջազգային լարվածությունը մեղմացնելու կուրս։

Սովետական մարդիկ միասնական են խաղաղության գործը պաշտպանելու իրենց ձգտման մեջ։ Կառուցելով արդյունաբերական կենտրոններ, մշակելով խամ ու խոպան հողերի միլիոնավոր նոր հեկտարներ, ստեղծելով արհեստական արբանյակներ, մեր ժողովուրդն աշխատում է հանուն խաղաղության։

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ԱՃԸ ՅՈԹՆԱՄՅԱԿՈՒՄ

Վ. ՇԱՀՆԱԶԱՐՅԱՆ

ՍՄԿԿ XXI համագումարը, որը նոր փառապանծ էջ բացեց մեր Հայրենիքի պատմության մեջ, սովետական ժողովուրդը իրավամբ անվանեց կոմունիզմ կառուցողների համագումար։

Կոմունիզմը մարդկային հասարակության այն բարձր աստիճանն է, որտեղ արտադրության զարգացման նպատակը ամբողջ հասարակության և նրա յուրաքանչյուր անդամի նյութական բարեկեցության և կուլտուրայի սիստեմատիկ բարձրացումն է։ Դարերի ընթացքում մարդկության առաջավոր մտածողները երազել են այն մասին, թե ե՛րբ վերջապես հնարավոր կդառնա բոլոր մարդկանց կյանքը դարձնել ապահով ու երջանիկ։ Նրանց այդ երազանքը իրականություն դարձավ միայն արտադրության սոցիալիստական եղանակի պայմաններում։

Գիտական կոմունիզմի հիմնադիրներ Մարքսը և Էնգելսը, իսկ հետագայում նրանց մեծ գործի հանճարեղ շարունակող Վ. Ի. Լենինը, մշակելով սոցիալիստական հասարակարգի հիմնական գծերը, ցույց են տվել, որ երբ ապագա հասարակարգում ոչնչացվեն արտադրության միջոցների մասնավոր-կապիտալիստական սեփականությունը և վարձու աշխատանքի շահագործման սիստեմը, արմատապես կփոխվի հասարակական արտադրության նպատակը և արտադրության զարգացումը կենթարկվի ամբողջ հասարակության նյութական բարեկեցության և կուլտուրայի բարձրացման նպատակին։

Վ. Ի. Լենինը Ժողովրդական տնտեսության խորհուրդների I համագումարում արտասանած ճառում նշել է. «Միայն սոցիալիզմը հնարավորություն կտա պրոդուկտների հասարակական արտադրությունն ու բաշխումը լայնորեն տարածել և գիտական նկատառումներով իսկապես ենթարկել այն նպատակին, թե ինչպես բոլոր աշխատավորների կյանքը դարձնել առավել հեշտ, և այնպես, որ նա բարեկեցության հնարավորություն ընձեռի աշխատավորներին։ Միայն սոցիալիզմը կարող է իրականացնել այս։ Եվ մենք գիտենք, որ նա պիտի իրականացնի այս, և այսպիսի ճշմարտության ըմբռնումը կազմում է մարքսիզմի ամբողջ դժվարությունը և նրա ամբողջ ուժը» (Երկեր, հ. 27, էջ 511)։ Նշանակում է՝ սոցիալիստական հասարակարգում արտադրության նպատակը մարդն է իր ամենօրյա պահանջմունքներով. մեզ մոտ ոչնչացված է կապիտալիզմին հատուկ արտադրության և սպառման միջև եղած հակամարտ հակասությունը։ Եթե կապիտալիզմի ժամանակ սպառումը (աշխատավորների գնողունակությունը) ետ է մնում արտադրությունից և արգելակում վերջինիս զարգացումը, ապա սոցիալիզմի օրոք, ընդհակառակը՝ սպառումը միշտ առաջ է անցնում արտադրությունից և լայն ասպարեզ է բացում վերջինիս զարգացման համար։ Սոցիալիզմի ժամանակ արտադրության և սպառման միջև գոյություն ունեցող հակասությունը հակամարտ չէ։ Դա պայմանավորված է նրանով, որ աշխատավոր մասսաների պահանջմունքներն ավելի արագ են աճում, քան արտադրությունը։ Սոցիալիզմի պայմաններում մարդու յուրաքանչյուր բավարարված պահանջմունք իր հերթին նոր պահանջ է հարուցում արտադրության, դրանով իսկ խթան է հանդիսանում սոցիալիստական արտադրության արագ և ընդլայնված մասշտաբներով զարգացման համար։

Արտադրության և սպառման մինչև եղած ոչ-հակամարտ հակասությունն իր ուժը կպահպանի նաև կոմունիզմի ժամանակ և հանդես կգա իբրև հասարակական արտադրության շարժիչ ուժերից մեկը։ Իհարկե, կոմունիստական հասարակարգում կստեղծվի մթերքների առատություն, մարդկանց պահանջմունքները բազմակողմանիորեն կբավարարվեն, սակայն դա չի նշանակում, թե մարդիկ այլևս նոր պահանջներ չեն ներկայացնի արտադրությանը, և վերջինիս զարգացման տեմպերը աստիճանաբար կդանդաղեն։ Ընդհակառակը, որքան պահանջմունքներն առավելագույն չափով բավարարվեն, այնքան կբարձրանա մարդկանց ճաշակը, կաճեն նրանց հոգևոր պահանջմունքները. ուստի նրանք նոր, ավելի մեծ ու բազմատեսակ պահանջներ կներկայացնեն արտադրությանը, որը, սակայն, ի վիճակի կլինի բավարարելու դրանք համեմատաբար կարճ ժամանակից հետո։

Սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացման հարցը միշտ էլ գտնվել է Կոմունիստական պարտիայի ուշադրության կենտրոնում։ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը հենվելով սոցիալիստական արտադրության զարգացման բազայի վրա և հաշվի առնելով մեր նյութական հնարավորություններն ու երկրի առջև դրված տնտեսական ու քաղաքական գլխավոր խնդիրները, միշտ էլ մշակել և իրականացրել են արդյունավետ միջոցառումներ սովետական ժողովրդի կենսամակարդակի բարձրացման ուղղությամբ։ Այդ տեսակետից խոշոր քայլեր կատարվեցին վերջին հինգ տարիների ընթացքում, հատկապես ՍՄԿԿ XX համագումարից հետո։

1953 թվականից հետո ընկած ժամանակաշրջանում բուռն վերելք է ապրել սոցիալիստական էկոնոմիկան։ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը հենվելով սոցիալիստական արդյունաբերության և գյուղատնտեսության բնագավառում երկրի ձեռք բերած հաջողությունների վրա, վերջին տարիների ընթացքում ձեռնարկեցին միջոցառումների մի ամբողջ սիստեմ, որն ամբողջովին ուղղված է սովետական ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրայի հետագա աճին։ Այդ միջոցառումներից են՝ ուսման վարձի վերացումը դպրոցներում և ԲՈՒՀ-երում, հղի կանանց նախածննդյան և հետծննդյան արձակուրդի երկարացումը, կենսաթոշակների և ցածր վարձատրվող աշխատողների աշխատավարձի բարձրացումը, նախատոնական և շաբաթ օրերի աշխատօրվա կրճատումը 2 ժամով՝ առանց աշխատավարձի նվազեցման, կոլտնտեսականների անձնական տնտեսություններից մթերումների վերացումը և այլն։

Վերջին հինգ տարում սովետական պետությունը մեծ հատկացումներ է կատարել թոշակների, նպաստների, կենսաթոշակների վճարման, ձրի ուսուցման, բուժսպասարկման, արձակուրդների վճարման գծով և այլն։ Եթե 1953 թվականին այդպիսի հատկացումները կազմում էին 134,5 միլիարդ ռուբլի,

ապա 1958 թվականին կազմեցին 215 միլիարդ ռուբլի, ըստ որում 1954—1958 թթ. ընթացքում կատարված վճարումները ավելացել են 60 տոկոսով, այն դեպքում, երբ դրան նախորդած հինգ տարիներում աճել էին միայն 27 տոկոսով։ Կենսաթոշակների գործի բարելավման շնորհիվ միայն 1958 թվականին բնակչությունը պետությունից ստացավ 64 միլիարդ ռուբլի, որը մոտ 2,5 անգամով ավելի է 1953 թվականին ստացածից։

Ժողովրդի բարեկեցության աճը արտահայտված է նաև ապրանքաշրջանառության աճի մեջ։ ՍՄԿԿ XX համագումարից հետո ընկած ժամանակաշրջանում այն աճել է 31 տոկոսով, կամ տարեկան միջին հաշվով՝ 9,4 տոկոսով։

Միայն վերջին հինգ տարիների ընթացքում քաղաքներում ու բանվորական ավաններում կառուցվել են 233 միլիոն քառ. մետր ընդհանուր տարածությամբ նոր բնակարաններ, որը հավասար է ցարական Ռուսաստանի 1913 թվականի ամբողջ քաղաքային բնակարանային ֆոնդին։ Բացի դրանից, վերջին հինգ տարում գյուղական վայրերում կառուցվել է ավելի քան 3 միլիոն տուն։

Գյուղատնտեսության շեշտակի վերելքի շնորհիվ զգալի չափով բարձրացան կոլտնտեսականների եկամուտները. այսպես՝ աշխօրերի բնամթերային և դրամական վարձատրության ընդհանուր գումարը (համադրելի գներով) 1952 թվականի 47,5 միլիարդ ռուբլուց 1957 թվականին հասավ 83,8 միլիարդ ռուբլու։ Կոլտնտեսականների անձնական տնտեսություններից գյուղատնտեսական մթերքների մթերումները վերացնելու շնորհիվ նրանք տարեկան լրացուցիչ կստանան մոտ 3 միլիարդ ռուբլու եկամուտ։ Ամբողջությամբ վերցրած մեկ աշխօրի հաշվով կոլտնտեսականների ռեալ եկամուտները 1958 թվականին, 1952 թվականի համեմատությամբ, ավելացել են 1,6 անգամ։

Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ձեռնարկած միջոցների, ինչպես և բնակչության առողջության բարելավման շնորհիվ վերջին տարիների ընթացքում ՍՍՌՄ-ում մահացությունը խիստ կերպով կրճատվել է, և մահացության տոկոսը մեզ մոտ աշխարհում ամենացածրն է. իսկ բնակչության բնական աճը շատ ավելի բարձր է, քան աշխարհի երկրների մեծ մասում։ Նախառևոլյուցիոն Ռուսաստանի համեմատությամբ ներկայումս մեզ մոտ բնակչության ընդհանուր մահացությունը կրճատվել է 4 անգամ, իսկ երեխաների մահացությունը՝ 7 անգամ, ըստ որում բնակչության տարեկան զուտ աճը կազմում է 3,5 միլիոն մարդ։ ՍՍՌՄ-ում 1000 բնակչին ընկնում է տարեկան 25 ծնունդ, իսկ մահանում է 7,5 մարդ։ Դրա շնորհիվ է, որ չնայած անցյալ պատերազմում մեր ժողովրդի կրած անհամեմատ մեծ մարդկային կորուստներին, 1939 թվականի համեմատությամբ, բնակչության թիվն աճել է 18,1 միլիոն մարդով։

Կոմունիստական պարտիան և Սովետական պետությունը նորանոր միջոցառումներ են իրականացնում այս յոթնամյակում մեր էկոնոմիկայի բոլոր ճյուղերի հետագա զարգացման և ժողովրդի բարեկեցության բարձրացման համար։

Յոթնամյակում մեծ չափով կավելանան գյուղատնտեսական ապրանքները. նախատեսվում է 1965 թվականին հացահատիկի տարեկան արտադրանքը հասցնել 10—11 միլիարդ փթի։ Յոթնամյակում պետք է ավելացվի մսի, կաթի, յուղի, ձեթի արտադրանքը, ըստ որում խնդիր է դրվում մոտակա տարիներում կաթի և յուղի գծով մեկ շնչին ընկնող արտադրանքի քանակով գե



րազանցել ԱՄՆ-ին։ Նախատեսվում է գյուղատնտեսության հետագա մեքենայացման և աշխատանքի պրոցեսների կազմակերպման կատարելագործման միջոցով է՛լ ավելի բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը և իջեցնել գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքը։ Ծանր արդյունաբերության և գյուղատնտեսության հետագա զարգացման բազայի վրա զգալի չափով կաճի ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը և կբարձրանա արտադրանքի որակը, ըստ որում նախատեսվում է յոթնամյակում թեթև արդյունաբերության արտադրանքն ավելացնել 1,5 անգամ, իսկ սննդի արդյունաբերությունը՝ 1,7 անգամ։

Սովետական ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման գլխավոր և ընդհանրացնող ցուցանիշը մեր երկրի ազգային եկամուտն է։ Սոցիալիզմի ժամանակ ազգային եկամուտն իսկապես ժողովրդական բնույթ ունի, այն ստեղծվում է շահագործումից ազատ աշխատավորների կոլեկտիվ աշխատանքով։ Եթե կապիտալիստական աշխարհում աշխատավորների քրտինքով ստեղծված ազգային եկամտի կեսից ավելին յուրացնում են հասարակության չնչին տոկոսը կազմող պորտաբույծները, ապա սոցիալիզմի ժամանակ ազգային եկամուտն ամբողջությամբ պատկանում է սովետական ժողովրդին, որի ավելի քան 75 տոկոսը հատկացվում է աշխատավորների անձնական նյութական և կուլտուրական պահանջմունքների բավարարմանը, իսկ մնացած մոտ 25 տոկոսը գնում է սոցիալիստական արտադրության զարգացման և համապետական այլ կարիքների բավարարման համար։

Յոթնամյակում նախատեսվում է ազգային եկամուտը, 1958 թվականի համեմատությամբ, ավելացնել 62—65 տոկոսով, որը նախապատերազմյան՝ 1940 թվականի մակարդակը կգերազանցի մոտ 6 անգամ։ Ազգային եկամտի այսպիսի խոշոր աճ հնարավոր է միայն սոցիալիզմի ժամանակ, որտեղ մարդիկ աշխատում են իրենց և հասարակության համար, ուր վերացված են շահագործող դասակարգերը։

Ազգային եկամտի աճման բազայի վրա կմեծանան նաև աշխատավորների եկամուտները և նրանց գնողունակությունը յոթնամյակում կավելանա 60—63 տոկոսով։ Աշխատավորների կենսամակարդակի բարձրացման գործում կարևոր նշանակություն ունի նրանց աշխատավարձի հետագա բարձրացումը։ Բուրժուական հասարակարգում բանվոր դասակարգը երկար տարիների պայքարի հետևանքով երբեմն կարողանում է ստիպել բուրժուազիային որոշ չափով բարձրացնել անվանական աշխատավարձը, սակայն դրան զուգընթաց աճում են աշխատանքի լարունակությունը, սպառման ապրանքների գները, որոնք հանգեցնում են բանվոր դասակարգի իրական աշխատավարձի հետագա անկման։

Սոցիալիզմի ժամանակ, ընդհակառակը, անվանական աշխատավարձի բարձրացումը զուգորդվում է սպառողական ապրանքների գների իջեցմամբ, որը ապահովում է իրական աշխատավարձի բարձրացմանը։ Սոցիալիզմի ժամանակ աշխատավարձը կազմում է յուրաքանչյուր աշխատողի անհատական բաժինը հասարակական արդյունքի մեջ, որի մեծությունը որոշվում է ըստ աշխատանքի բաշխման տնտեսական օրենքի պահանջների։ Սակայն դեռևս գոյություն ունի խզում ցածր ու բարձր աշխատավարձերի միջև, ուստի նախատեսվում է կարգավորել այդ հարցը այն հաշվով, որպեսզի ցածր և միջին մակարդակի աշխատավարձի աստիճանական բարձրացման միջոցով մեղմ-

մումի հասցվի աշխատանքի վարձատրման միջև եղած խզումը։ Այդ միջոցառումը պետք է կատարվի երկու էտապով, այն հաշվով, որ ներկայիս 270—350 ռուբլի կազմող մինիմում աշխատավարձը բարձրացվի և 1965 թվականին հասցվի 500—600 ռուբլու։

Պարտիայի և պետության կողմից ձեռնարկվող այդ միջոցառումը չի նշանակում, թե սոցիալիզմի ժամանակ ընդհանրապես պետք է վերացվի տարբեր խավերի ու մասնագիտությունների տեր աշխատողների աշխատավարձերի տարբերությունը, և բոլորը պետք է վարձատրվեն հավասար չափով։ Աշխատողի վարձատրումը ըստ իր կատարած աշխատանքի քանակի և որակի դեռևս երկար ժամանակ կպահպանվի. այն բարձրացնում է մարդկանց նյութական շահագրգռվածությունը արտադրության արդյունքների նկատմամբ, խթանում աշխատանքի արտադրողականության աճին, նպաստում է աշխատավորների որակավորման բարձրացմանը և արտադրության տեխնիկայի կատարելագործմանը, մարդկանց վարժեցնում է սոցիալիստական կարգապահության և աշխատանքը դարձնում է ընդհանուր ու պարտադիր։ Զարգացման ներկա էտապում արդյունքների հավասարարական բաշխումը կհանգեցներ կուտակված միջոցների սպառման, կթուլացներ նյութական շահագրգռվածությունը, որի հետևանքով ո՛չ միայն բարձր տեմպերով չէր զարգանա հասարակական արտադրությունը ու մթերքների առատություն չէր լինի բաշխման կոմունիստական սկզբունքին անցնելու համար, այլև մեծ վնաս կհասցվեր կոմունիզմի կառուցման գործին։ Քանի դեռ մեզ մոտ չի ստեղծված մթերքների առատություն և, որ ամենագլխավորն է, քանի դեռ մարդկանց մեջ աշխատանքը չի դարձել կենսական անհրաժեշտություն, ապա մենք չենք կարող նաև իրականացնել արդյունքների բաշխման կոմունիստական սկզբունքը։ Կոմունիստական հասարակարգի կառուցման պրոցեսում աստիճանաբար կկատարելագործվեն սոցիալիստական արտադրական հարաբերությունները, ընդ որում և բաշխման հարաբերությունները, որոնք պայմաններ կստեղծեն հետագայում բաշխման սոցիալիստական սկզբունքից բաշխման կոմունիստական սկզբունքին անցնելու համար. կոմունիզմի ժամանակ այլևս չի զգացվի մարդկանց միջև արդյունքների բաշխման կարգավորման անհրաժեշտություն, քանի որ արտադրողական ուժերի բուռն վերելքի հետևանքով կստեղծվի մթերքների առատություն, մարդիկ կամավոր կերպով կաշխատեն իրենց ամբողջ ունակությունների չափով, անկախ ստացած նյութական բարիքների չափից, գիտակցելով, որ այդ աշխատանքը անհրաժեշտ է ողջ հասարակությանը, որի իրավահավասար անդամներից մեկն էլ ինքն է։

Սովետական ժողովրդի կենսամակարդակի բարձրացման և, ընդհանրապես, նրա կյանքի համար խոշոր նշանակություն ունի աշխատանքային օրվա տևողության կրճատումը։

Յոթնամյակում նախատեսվում է շարունակել աշխատանքային օրվա հետագա կրճատումը այն հաշվով, որպեսզի 1960 թվականին ավարտվի անցումը 7-ժամյա աշխատանքային օրվա, իսկ ստորերկրյա աշխատանքով զբաղված առաջատար մասնագիտությունների տեր բանվորների անցումը 6-ժամյա աշխատանքային օրվա։ Այնուհետև, 1962 թվականին 7-ժամյա աշխատանքային օր ունեցող բանվոր-ծառայողները պետք է փոխադրվեն 40-ժամյա աշխատանքային շաբաթի։ 1964 թվականից սկսած պետք է իրականացվի անցումը 35—30 ժամյա աշխատանքային շաբաթի, 6—5-ժամյա աշխատանքա-



յին օրվա տևողությամբ. այլ կերպ ասած՝ կսահմանվի 7—6-ժամյա աշխատանքային օր՝ շաբաթական երկու հանգստյան օրով։ Ըստ որում պետք է նշել, որ աշխատանքային օրվա կրճատման հետ միասին ո՛չ միայն չի իջեցվի բանվոր-ծառայողների աշխատավարձը, այլև կբարձրացվի այն։

Այս կարևորագույն միջոցառման շնորհիվ ՍՍՌՄ-ում կլինի աշխարհում ամենակարճ աշխատանքային օրը և ամենակարճ աշխատանքային շաբաթը։ Այս հարցում ևս դրսևորվում է տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունն իր դարն ապրած կապիտալիզմի նկատմամբ։

Ներկայումս մեր ժողովրդական տնտեսության և կուլտուրայի զարգացումը իրականացվում է գլխավորապես սոցիալիստական ձեռնարկությունների ու կազմակերպությունների կուտակումների հաշվին, ըստ որում պետական բյուջեի եկամուտների մեջ բնակչությունից գանձվող հարկերը կազմում են 7,8 տոկոսը։ Եթե մի ժամանակ մեր երկրում դեռևս գոյություն ունեին շահագործող դասակարգեր, որոնց տնտեսական գործունեությունը պետությունը սահմանափակում էր դիֆերենցված հարկային քաղաքականության միջոցով և երկրի ինդուստրացումն ու ժողովրդական տնտեսության հետագա զարգացումը պահանջում էին բնակչության միջոցների մի մասն էլ հարկերի ձևով օգտագործել այդ նպատակի համար, ապա այժմ, երբ վաղուց արդեն լիկվիդացված են շահագործող դասակարգերը և նրանց մնացորդները, երբ սոցիալիստական պետությունը բավականին հարուստ է և ունի հսկայական նյութական ու ֆինանսական միջոցներ մեր երկրի ժողովրդական տնտեսության և բնակչության բարեկեցության հետագա զարգացման համար, բնակչությունից գանձվող հարկերն այլևս էական անհրաժեշտություն չեն։ Այդ իսկ պատճառով առաջիկայում կվերացվեն բնակչությունից գանձվող բոլոր տեսակի հարկերը։

Յոթնամյակում նախատեսվում է բանվոր-ծառայողների ռեալ եկամուտները մեկ աշխատողի հաշվով ավելացնել 40 տոկոսով, որը կկատարվի դրամական աշխատավարձի մասնակի բարձրացման, կենսաթոշակների ու նպաստների աճի միջոցով, ինչպես և հասարակական սննդի ձեռնարկությունների արտադրանքի գների հետագա իջեցման հաշվին։ Միաժամանակ մոտ 40 տոկոսով կաճեն կոլտնտեսականների ռեալ եկամուտները՝ հանրային տնտեսության հետագա զարգացման, գյուղատնտեսական մթերքների աճի և աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման հաշվին։

Յոթնամյակի վերջում, 1958 թվականի համեմատությամբ, մեր ռեսպուբլիկայի բնակչության դրամական եկամուտները կաճեն 47,3 տոկոսով, այդ թվում՝ բանվոր-ծառայողների աշխատավարձը՝ 44,7 տոկոսով, կոլտնտեսականների եկամուտները՝ 42,3 տոկոսով և կենսաթոշակներից ու նպաստներից բնակչության ստացած եկամուտները՝ 71,1 տոկոսով։

Վերը նշած միջոցառումների շնորհիվ յոթնամյակում է՛լ ավելի կբարձրանա աշխատավորների գնողունակությունը, նրանք հնարավորություն կունենան ավելի մեծ թվով ու բազմատեսակ արդյունաբերական ու գյուղատնտեսական ապրանքներ գնելու։ Յոթնամյակում համապատասխանաբար է՛լ ավելի կծավալվի մանրածախ ապրանքաշրջանառությունը, կավելանան շուկայական ֆոնդերը, կընդլայնվի առևտրական ցանցը և կբարելավվի առևտրի կուլտուրան։

Յոթնամյակում նախատեսվում է պետական և կոոպերատիվ առևտրի

մանրածախ ապրանքաշրջանառության ծավալը ավելացնել 62 տոկոսով (համադրելի գներով), անասնաբուծական մթերքների վաճառքը՝ 2,2 անգամ, ձեթինը՝ 1,9 անգամ, մրգերինը և ցիտրուսներինը՝ 3 անգամ։ Յոթնամյակում զգալի չափով կավելացվի բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկման համար անհրաժեշտ ապրանքների վաճառքը։ Անցյալ յոթնամյակի համեմատությամբ կարի մեքենաների վաճառքը կավելանա 2,1 անգամ, հեռուստացույցներինը՝ 4,6 անգամ, սառնարաններինը՝ 5,8 անգամ, լվացքի մեքենաներինը և սարքերինը՝ 9,1 անգամ։ Հայկական ՍՍՌ-ում մանրածախ ապրանքաշրջանառության ծավալը 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, կավելանա 72,8 տոկոսով, իսկ բնակչության մեկ շնչի հաշվով՝ 38,2 տոկոսով։ Ռեսպուբլիկայում այսուհետև էլ ավելի կընդարձակվի առևտրական, մասնավորապես հասարակական սննդի ցանցը, կաճեն պարենային և արդյունաբերական ապրանքների շուկայական ֆոնդերը։ Հասարակության նյութական և աշխատանքային ռեսուրսների խնայողության, ինչպես նաև ընտանիքի կենցաղի վերափոխման՝ կանանց տնային տնտեսության ծանր հոգսերից ազատելու գործում կարևոր նշանակություն ունի հասարակական սնունդը։ ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի այս տարվա «Հասարակական սննդի հետագա զարգացման ու բարելավման մասին» որոշմամբ խնդիր է դրվում հասարակական սնունդը մոտ տարիներս դարձնել իրոք մասսայական, աշխատավորների լայն մասսաների համար հարմար և շահավետ։ Այդ նկատառումով նախատեսվում է 1959—1965 թթ. կառուցել հասարակական սննդի 64,3 հազար ձեռնարկություններ, 3,1 միլիոն տեղով և այդ ընթացքում հասարակական սննդի ձեռնարկությունների արտադրանքը ավելացնել ավելի քան երկու անգամ։ Միաժամանակ նախատեսվում է սկսած 1961 թվականից իրականացնել հասարակական սննդի ձեռնարկությունների արտադրանքի գների սիստեմատիկ իջեցում, որպեսզի նրանից կարողանան օգտվել բնակչության ավելի լայն խավերը։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը նախատեսել են այսուհետև էլ հետևողականորեն իրականացնել աշխատավարձի բարձրացման և մանրածախ գների իջեցման քաղաքականությունը։ Սակայն, ինչպես նշված է ՍՄԿՊ XXI համագումարի որոշումներում, աշխատավարձի բարձրացումը և գների իջեցումը աշխատավորների բարեկեցության բարձրացման ուղիներից մեկն է միայն և ոչ միակը։ Դրա կողքին գոյություն ունի նաև ժողովրդի բարեկեցության բարձրացման հասարակական, կոմունիստական ուղին։

Մարքսիզմ-լենինիզմը գտնում է, որ միշտ և ամենուրեք արտադրությունը հասարակական բնույթ ունի, միմյանցից մեկուսացած ռոբինզոններն ի վիճակի չեն արտադրել։ Մարդը հասարակական էակ է և նրա գոյությունն առանց կոլեկտիվի, առանց հասարակության անհնար է ու անիմաստ։ Յուրաքանչյուր անհատ բազմազան ձևերով կապված է կոլեկտիվի, հասարակության հետ։ Այդ կապերից ամենակարևորը աշխատանքը և աշխատանքի արդյունքների բաշխումն են։

Կապիտալիստական հասարակարգում արտադրամիջոցների մասնավոր սեփականությունը մարդկանց անջատում է միմյանցից, ամեն մեկն ունի իր անհատական շահը և պատրաստ է կործանել իր դեմ կանգնած հակառակորդին։ Այսպիսի պայմաններում ամեն մի անհատ պետք է ինքը ամեն ինչ անի



իր բոլոր կարիքները բավարարելու համար, իսկ հասարակական հոգատարությունն անհատի նկատմամբ, որ շատ աննշան ու չնչին է, մղվում է հետին պլանի վրա։

Սոցիալիզմի ժամանակ արտադրամիջոցների հասարակական սեփականությունը մարդկանց համախմբում է, բոլորը հանդես են գալիս մեկի և մեկը բոլորի համար, նրանց մեջ ամրապնդվում է կոլեկտիվիզմի գաղափարը և առաջ են գալիս նոր տիպի ընկերական, փոխադարձ օգնության արտադրական հարաբերություններ։

Սոցիալիստական հասարակության անդամներն անմիջականորեն հոգ են տանում իրենց առաջին անհրաժեշտության պահանջմունքների՝ սննդի, հագուստի, կոշիկի և այլնի նկատմամբ, մինչդեռ նրանց կրթության, առողջապահության, կուլտուրայի, երեխաների դաստիարակության, հանգստի կազմակերպման և այլ հարցերի հոգսն իր վրա է վերցնում հասարակությունը՝ հանձին պետության։

ՍՄԿՊ XXI համագումարում ընկեր Ն. Ս. Խրուշչովը խոսելով աշխատավորների բարեկեցության բարձրացման կոմունիստական ուղու մասին, նշել է, որ «Այստեղ պետք է դասել մարդկանց բարեկարգ բնակարանով ապահովելը, հասարակական սննդի կազմակերպումը, մարդկանց կենցաղային սպասարկման բարելավումը, մանկական հիմնարկների ցանցի ընդլայնումը, ժողովրդական կրթության կատարելագործումը, բնակչության հանգստի կազմակերպումը և նրա բուժսպասարկման բարելավումը, կուլտուրայի հիմնարկների կառուցումը և այլն»։ Աշխատավորների պահանջմունքների բավարարման այդ ուղին համարվում է կոմունիստական, որովհետև այն առաջ է եկել միայն սոցիալիստական հասարակարգում, երբ նյութական ու հոգևոր բարիքների զգալի մասը աշխատավորների միջև բաշխվում է ձրիաբար, անկախ հասարակական արտադրության մեջ նրանց ծախսած աշխատանքի քանակից և որակից։

Սոցիալիզմի կառուցման և սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու շրջանում պետության հաշվին աշխատավորների հասարակական սպասարկման ֆոնդերը աճել են և ավելի կաճեն, ըստ որում նրանց աճման տեմպերը գերազանցում են աշխատավարձի աճը։

Յոթնամյակում նախատեսվում է բնակչության հասարակական սպասարկմանը 1965 թվականին հատկացնել 360 միլիարդ ռուբլի, 1958 թվականի 215 միլիարդ ռուբլու փոխարեն։ 1965 թվականին բնակչության մեկ շնչին ընկնող տարեկան ծախսերը այդ գծով կկազմեն 3800 ռուբլի։ Բացի դրանից, բնակարանների, դպրոցների, կուլտուր-կենցաղային ու բուժհիմնարկների կառուցման նպատակով մեկ շնչին ընկնող ծախսերը կկազմեն 800 ռուբլի։ Նշանակում է, ամբողջությամբ վերցրած, հասարակական ֆոնդերի հաշվին բնակչության մեկ շնչին ընկնող ծախսերը կհավասարվեն 4600 ռուբլու, այսինքն՝ կգերազանցեն ներկայիս մինիմում աշխատավարձի տարեկան ընդհանուր գումարը։

Հասարակական ֆոնդերի հաշվին աշխատավորների բարեկեցության բարձրացման կարևոր գործոններից է նրանց բարեկարգ բնակարաններով ապահովելը։ Խնդիր է դրված մոտակա 10—12 տարիների ընթացքում լուծել բնակարանային պրոբլեմը։ Այդ ուղղությամբ վճռական քայլ կկատարվի յոթնամյակում։ Նախատեսվում է 1959—65 թթ. ընթացքում միայն քաղաքներում կառուցել մոտ 15 միլիոն բնակարան՝ 650—660 միլիոն քառակուսի մետր

ընդհանուր տարածությամբ. դա 2,3 անգամ ավելի է նախորդ յոթնամյակում կառուցված բնակարանային տարածությունից և գերազանցում է Սովետական իշխանության 41 տարիների ընթացքում ստեղծված քաղաքային բնակարանային ֆոնդը։ Բացի դրանից, նախատեսվում է գյուղական վայրերում կոլտնտեսականների և գյուղական ինտելիգենցիայի միջոցներով կառուցել մոտ 7 միլիոն բնակարան։ Յոթնամյակում լայն թափ է ստանալու բնակարանային շինարարությունը նաև մեր ռեսպուբլիկայում. 1959—1965 թվականների ընթացքում կկառուցվեն 3.930 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, որից 1.470 հազար քառակուսի մետրը՝ անհատական շինարարության գծով, պետական վարկի և բնակչության խնայողությունների հաշվին։ Եթե նախորդ յոթնամյակում (1952—58 թթ.) ռեսպուբլիկայի բնակարանային շինարարության գծով կապիտալ ներդրումները կազմել են 1.005 միլիոն ռուբլի, ապա 1959—65 թվականներին կհասնի 3.026 միլիոն ռուբլու, այսինքն կաճի 301 տոկոսով։ Կապիտալիստական երկրներում բնակարանային վարձը կլանում է աշխատավորների ընտանիքի բյուջեի 25—30 տոկոսը, այն դեպքում, երբ ՍՍՌՄ-ում բնակարանային վարձը, այդ թվում և կոմունալ ծառայությունները, միջին հաշվով կազմում են ընտանիքի բյուջեի 4—5 տոկոսը։

Յոթնամյակում էլ ավելի կբարելավվի բնակչության առողջապահության գործը։ Նախորդ յոթնամյակի համեմատությամբ հիվանդանոցներում մահճակալների թիվը կավելանա 2 անգամ, մանկամսուրներում՝ 2 անգամ, իսկ մանկապարտեզներում՝ 2,5 անգամ։ Մեր ռեսպուբլիկայում յոթնամյակի վերջում հիվանդանոցային մահճակալների թիվը կհասցվի 18.900-ի, միաժամանակ կկրկնապատկվի տեղերի թիվը մանկամսուրներում։

Սովետական պետությունը հասարակական ֆոնդերի հաշվին հսկայական գումարներ է ծախսում թոշակների, նպաստների վճարման, ձրի ուսուցման, գիշերօթիկ դպրոցների, մանկապարտեզների, մանկամսուրների պահպանման և այլնի վրա։ Այդ քաղաքականությունն ավելի մեծ թափ կստանա յոթնամյակի տարիներին։

Մեր պարտիան և կառավարությունը չունեն այլ նպատակ, բացի ժողովրդի բարեկեցության մասին հոգալուց, նրա կենսամակարդակը բարձրացնելուց։ Զինված հասարակության զարգացման տնտեսական օրենքների իմացությամբ՝ նրանք մեր ժողովրդին առաջնորդում են դեպի երջանիկ կյանքի՝ կոմունիզմի լուսաշող բարձունքները։

---

# ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻ ՄԱՅՐԱՄՈՒՏԸ

## Կ. ՌՈՒԴՈՒՄՅԱՆ

Հազարամյակների պատմություն ունի մարդկությունը։ Սակայն շատ տարիներ և նույնիսկ տասնյակ տարիներ անհայտ կորել են պատմության քառուղիներում, հագեցված չլինելով որևէ նշանակալից իրադարձությամբ։ Պատմությունը երբեք այնքան սրընթաց չի զարգացել, երբեք այնքան խոր ու լայն բովանդակություն չի ունեցել, որքան XX դարում։ Չկա հասարակության կյանքի մի բնագավառ՝ քաղաքական, սոցիալական, տնտեսական, կուլտուրական, գիտա-տեխնիկական, որ XX դարն ասած չլինի իր նոր ու մեծ խոսքը։ Հիրավի բազում գործերով է նշանավոր մեր հարյուրամյակը։ Այն հաճախ են անվանում ատոմի դար։ Եվ դա ճիշտ է։ Երկրի և արեգակնային համակարգության սովետական արհեստական արբանյակների և մոլորակի արձակումն ազդարարեց տիեզերքի նվաճման ու միջմոլորակային ճանապարհորդությունների դարաշրջանի սկիզբը։

Սակայն գլխավորը, ամենահիմնականը, բնորոշը, ինչով ամենից առաջ նշանավոր է XX դարը՝ դա մարդկային հասարակության անցումն է իր կյանքըն ապրած ու սմքած կապիտալիզմից նոր, կենսունակ հասարակարգին՝ կոմունիզմին։ Հենց այդ է հանդիսանում մեր էպոխայի հիմնական բովանդակությունը։ «Կապիտալիզմի և նրա հետքերի ոչնչացումը, կոմունիստական հասարակարգի հիմքերի հաստատումը,— ասում է Վ. Ի. Լենինը,— կազմում է համաշխարհային պատմության այժմ սկսած նոր դարաշրջանի բովանդակությունը» (Երկեր, հ. 31, էջ 491)։

Ընդամենը ավելի քան չորս տասնամյակ առաջ կապիտալիզմն անբաժան կերպով իշխում էր աշխարհում։ Պատմության համար քառասուն տարին փոքր, նույնիսկ աննկատ ժամանակաշրջան է։ Բայց պատմականորեն այդ կարճ ժամանակամիջոցում գիտական կոմունիզմի գաղափարների հիման վրա մարդկության ճակատագրում հեղաշրջում կատարվեց։

Հասարակության զարգացման օբյեկտիվ օրինաչափությունների մոգական գավազանի ուժով աշխարհը փոխեց իր քաղաքական դեմքը, անվերադարձ բռնեց մարդկության վերածննդի ճանապարհը։ Այդ համաշխարհային-պատմական պրոցեսը սկսվեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակով, հաղթանակ, որն ազդարարեց սոցիալական ու ազգային ճնշման, աղքատության ու իրավազրկության աշխարհի՝ կապիտալիզմի մայրամուտի սկիզբը։

Ռուսաստանի արիական պրոլետարիատը, կոմունիստների լենինյան պարտիայի ղեկավարությամբ առաջինն ի կատար ածեց պատմության մահավճիռը կապիտալիզմի նկատմամբ և ստեղծեց մի հասարակարգ, որի քվինտ-

էսենցիան հանդիսանում է մարդը, նրա բոլոր նյութական ու հոգևոր պահանջմունքների բավարարումը և համակողմանի զարգացումը։ Հոկտեմբերյան ռևոլյուցիան անհագնագուժ, մահացու հարված հասցրեց իմպերիալիզմին, որը դադարեց համապարփակ համաշխարհային սիստեմ լինելուց։

Միաժամանակ սովետական ժողովուրդը միայնակ էր կառուցում սոցիալիզմը։ Ելնելով դրանից, իմպերիալիզմի հոգևոր սպասարկուները փորձում էին ապացուցել, թե սոցիալիզմը զուտ ազգային, ռուսական երևույթ է, «անցողիկ էպիզոդ» մարդկության ճանապարհին։ Բայց պատմության հետագա ընթացքը շուտով նրանց դառնորեն հուսախաբեց։ Ջանցավ և երեք տասնամյակ, երբ կապիտալիստական հասարակարգին «հրաժեշտ» տվին Եվրոպայի և Ասիայի 12 երկրներ։ Դա հիմքից հերքեց մյուս ժողովուրդների համար սոցիալիստական ուղու անընդունելիության վերաբերյալ բուրժուական կեղծ առասպելը։

Մարդկության առաջընթացի ու բախտի համար խոշոր նշանակություն ունեցավ չին մեծ ժողովրդի պատմական հաղթանակը։ Դա Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո երկրորդ, ամենածանր հարվածն էր իմպերիալիզմին։ Սոցիալիզմը դուրս գալով մեկ երկրի շրջանակներից, դարձավ համաշխարհային սիստեմ։ Իմպերիալիզմը, չնայած նրա օրհասական ճիգերին, անզոր եղավ խանգարելու այդ համաշխարհային-պատմական պրոցեսը։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորումը հանդիսանում է մեր դարաշրջանի գլխավոր, բնորոշ գիծը։ Այդ սիստեմի զարգացումը տեղի է ունենում այնպիսի բուռն տեմպերով, որպիսիք առաջ հայտնի չէին պատմությանը՝ հասարակական մի ֆորմացիայից մյուսին անցնելու ժամանակ։ Որպես սոցիալիզմի գաղափարների իրականացման հաղթական քայլերգ վեհորեն են հնչում հետևյալ փաստերն ու թվերը։

1920 թվականին սոցիալիզմի միակ երկրին ընկնում էր երկրագնդի տերիտորիայի 15,9 տոկոսը, բնակչության 7,4 տոկոսը, համաշխարհային արդյունաբերական արտադրանքի 0,5 տոկոսից էլ պակաս բաժինը։ Ներկայումս սոցիալիզմի համաշխարհային սիստեմի երկրները բռնում են մեր հողագնդի տերիտորիայի 26,6 տոկոսը, որտեղ ապրում են երկրագնդի բնակչության մոտ 35 տոկոսը, տալիս համաշխարհային արդյունաբերական արտադրանքի մոտ մեկ երրորդը։ Բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքի արտադրությամբ համաշխարհային սոցիալիստական սիստեմը, ամբողջությամբ վերցրած, արդեն հասել է համաշխարհային կապիտալիստական սիստեմին։

Քաղաքական տեսակետից սոցիալիզմը շատ վաղուց է առաջ անցել կապիտալիզմից։ Սոցիալիստական դեմոկրատիան իրենով նշանավորեց իսկական հեղաշրջում մարդկության քաղաքական պատմության մեջ։ Սոցիալիզմն առաջին անգամ և արմատապես վերացրեց սոցիալական ու ազգային ճնշման բոլոր ձևերը, մարդկանց փոխհարաբերությունները խարսխեց նոր, սոցիալիստական արտադրական հարաբերությունների վրա։

Կուլտուրայի ասպարեզում սոցիալիզմը կատարեց իսկական ռևոլյուցիա, այն դարձնելով ժողովրդական ամենալայն զանգվածների սեփականությունը և ապահովեց նրանց անմիջական մասնակցությունը կուլտուրական նոր արժեքների ստեղծմանը։ Գիտության ու տեխնիկայի մի շարք կարևորագույն բնագավառներում սոցիալիզմը հասավ համաշխարհային առաջնության, աշ-



խարհը ցնցեց էպոխային հայտնագործություններով։ Մնում է միայն շահել մի վճռական ճակատամարտ և ապահովել սոցիալիզմի համաշխարհային-պատմական հաղթանակը հասարակական կյանքի անխտիր բոլոր բնագավառներում։

Դա էկոնոմիկան է, այն գլխավոր դաշտը, որտեղ այսօր տեղի է ունենում կապիտալիզմի հետ սոցիալիզմի խաղաղ տնտեսական մրցությունը, որի ընթացքը և արդյունքները որոշում են համաշխարհային զարգացման ուղղությունը։ Ժամանակակից կապիտալիզմը շարունակում է գոյություն ունենալ շնորհիվ համաշխարհային արտադրության մեջ իր ունեցած գերակշռության և ԱՄՆ-ի ինդուստրիալ հզորության, տնտեսապես առավել զարգացած կապիտալիստական երկրներում հանրային աշխատանքի արտադրողականության և բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի համեմատաբար բարձր մակարդակի։ ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարի հաստատած ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի միջազգային վիթխարի նշանակությունն այն է, որ նա հիմք դրեց կապիտալիզմի հետ սոցիալիզմի տնտեսական մրցության նոր, վճռական էտապի։

«Ներկայումս մեր խնդիրն է,— ասում է ընկ. Ն. Ս. Խրուշչովը,— հասնել համաշխարհային արտադրության մեջ կապիտալիստական սիստեմի հանդեպ սոցիալիստական սիստեմի գերակշռության՝ հանրային աշխատանքի արտադրողականությամբ, բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ գերազանցել առավել զարգացած կապիտալիստական երկրներին և ապահովել աշխարհում ամենաբարձր կենսամակարդակը»։

Բոլոր անհրաժեշտ նախադրյալները կան ասելու, որ յոթնամյակի վերջին տարում ՍՍՌՄ-ն արտադրանքի մի քանի ամենագլխավոր տեսակների արտադրությամբ կգերազանցի, իսկ մյուսների արտադրությամբ կմոտենա ԱՄՆ-ի արդյունաբերական արտադրության ներկա մակարդակին։ Մինչ այդ ամբողջությամբ վերցրած և բնակչության մեկ շնչի հաշվով ՍՍՌՄ-ը կգերազանցի գյուղատնտեսական հիմնական մթերքների արտադրության ԱՄՆ-ի ժամանակակից մակարդակը։ Յոթնամյա պլանի կատարումից հետո կպահանջվի ոչ ավելի, քան հինգ տարի, որպեսզի ՍՍՌՄ-ը ետ թողնի ԱՄՆ-ին և աշխարհում առաջին տեղը գրավի ինչպես արդյունաբերական արտադրանքի բացարձակ չափերով, այնպես էլ բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ։

Յոթնամյա պլանի, ինչպես նաև ժողովրդական դեմոկրատիայի երկրների տնտեսական հեռանկարային պլանների կատարման շնորհիվ սոցիալիստական սիստեմի երկրները կարտադրեն ամբողջ համաշխարհային արտադրանքի ավելի քան կեսը։ Դրանով իսկ կապահովվի կապիտալիզմի համաշխարհային սիստեմի հանդեպ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի գերազանցությունը նյութական արտադրության մեջ՝ մարդկային գործունեության վճռական ոլորտում։ Այդ նշանակում է, որ աշխարհի տնտեսական քարտեզի վրա կապիտալիզմն ստիպված կլինի կծկվել ավելի շատ, քան աշխարհագրական քարտեզի վրա։ Իմպերիալիզմը կզրկվի այն տնտեսական զսպանակներից, որոնց օգնությամբ բռնության պետական մեքենան աշխարհի շատ երկրներում դեռևս պահպանում է կապիտալիստական արտադրական հարաբերությունները։

Երբ ՍՍՌՄ-ում լինի աշխարհում ամենաբարձր կենսամակարդակը, ամենակարճ աշխատանքային օրը և ամենակարճ աշխատանքային շաբաթը, վերջնականապես կհերքվի ամերիկյան ապրելակերպի մասին նրա պրոպագանդիստների ստեղծած առասպելը։ Իսկ հասարակության բոլոր անդամների շարունակ աճող նյութական և հոգևոր պահանջմունքները լրիվ բավարարող կոմունիստական ապրելակերպը կդառնա միլիոնավոր մարդկանց խոհերի տիրակալը, նրանց պայքարի դրոշը, կմեծացնի սոցիալիզմի գաղափարների ձգողական ուժը, հսկայական ռևոլյուցիոն ազդեցություն կթողնի աշխարհի բոլոր երկրների ժողովուրդների վրա, որոնք իրենց առաջադիմության և բարեկեցության միակ ելքը կտեսնեն զարգացման սոցիալիստական ուղու մեջ։

Ահա թե ինչից են ամենից շատ վախենում իմպերիալիզմը և նրա հոգևոր սպասարկուները։ Կապիտալիստական մամուլը տագնապով և անհանգստությամբ է գրում, որ «յոթնամյա պլանի իրականացումը կավելացնի կոմունիստական սիստեմի հրապուրիչ ուժը» ժողովուրդների համար, որոնք «կապիտալիզմի պայմաններում ելք չեն գտնում աղքատությունից»։ Այժմ կապիտալիզմի էպիգոնները տենդագին կերպով դեղատոմսեր են որոնում «կապիտալիզմն առողջացնելու» համար։ Բայց առաջարկվող դեղատոմսերն իրենց բաղադրությամբ չեն կարող բուժել մահվան դատապարտված հիվանդին՝ կապիտալիզմին։

Վախենալով սոցիալիզմի հետ խաղաղ տնտեսական մրցությունից, կապիտալիզմը փորձում է իր օրգանիզմը լափող հակասություններից ելք գտնել նոր, երրորդ համաշխարհային պատերազմի նախապատրաստման մեջ։ Սակայն, եթե պատերազմ լինելու կամ չլինելու հարցի լուծումը կախված լիներ միայն իմպերիալիզմից, ապա մարդկությունն արդեն վաղուց նետված կլիներ նոր, խելահեղ, իր սարսափներով աննկարագրելի պատերազմի հորձանուտը։ Եվ եթե իմպերիալիզմը չի համարձակվում դիմել այդ խելագարությանը, ապա այդ ոչ թե այն պատճառով, որ նա փոխել է իր բնույթը, այլ այն զսպող հզորության շնորհիվ, որ ունեն սոցիալիզմի լագերն ու խաղաղասեր բոլոր ուժերը։ Դեռ երբեք խաղաղության համար պայքարն այնքան կազմակերպված, խոր ու լայն բնույթ չի կրել, որքան մեր օրերում։ Այն դարձել է մեր ժամանակաշրջանի մեծագույն շարժումը։ Բայց սերտ կապ կա խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի համար մղվող ժողովուրդների պայքարի մեջ։ Սոցիալիզմի և դեմոկրատիայի համար պայքարը հակակապիտալիստական բնույթ ունի։ Պայքարը սոցիալիզմի համար միաժամանակ նշանակում է պայքար կայուն խաղաղության համար, որովհետև միայն խաղաղության պայմաններում է հնարավոր կառուցել սոցիալիզմ—կոմունիզմ։

Ինչպես նշեց ՍՄԿԿ XXI համագումարը, սոցիալիզմի ռազմա-տնտեսական պոտենցիալի հետագա մեծացումը կհասցնի նրան, որ դեռ մինչև ամբողջ աշխարհում սոցիալիզմի լիակատար հաղթանակը, երկրագնդի մի զգալի մասում կապիտալիզմի առկայության պայմաններում, ռեալ հնարավորություն կստեղծվի պատերազմը մարդկության կյանքից բացառելու համար։ Բայց, այնուամենայնիվ, եթե իմպերիալիզմի առավել ռազմատենչ ուժերը, հակառակ բանականության, դիմեն անհուսալի պատերազմի, ապա դրանով նրանք միայն կարագացնեն կապիտալիստական սիստեմի լիակատար ու անվերադարձ կործանումը։ Վեճն այն մասին, թե որ սիստեմն է լավ՝ սոցիալիստակա՞նը, թե՞ կապիտալիստականը, պետք է լուծվի ոչ թե ջրածնային ու ատոմային ռումբերով, այլ խաղաղ տնտեսական մրցության միջոցով։



Սոցիալիզմի տարած մեծագույն հաղթանակների և նրա զարգացման նոր հոյակապ պլանների ֆոնի վրա առավել ցայտուն են դառնում իմպերիալիզմի մայրամուտը, նրա անբուժելի խոցերն ու արատները։ Իմպերիալիզմի դարաշրջանում կապիտալիզմի տնտեսական ու քաղաքական անհամաչափ և թռիչքային զարգացման մասին Վ. Ի. Լենինի հայտնագործած օրենքը ոչ միայն չի կորցրել իր ուժը, այլև ընդհակառակը։ Սոցիալիստական համաշխարհային սիստեմի կազմավորումը, իմպերիալիզմի գաղութային սիստեմի քայքայումն ավելի ներգործուն են դարձնում այդ օրենքը, որը տանում է դեպի իմպերիալիստական երկրների միջև հումքի աղբյուրների, էժան բանվորական ձեռքի, կապիտալի ներդրման ոլորտների ու վաճառահանման շուկաների համար մղվող պայքարի սրում։

Ուժեղանում է ֆինանսական օլիգարխիայի տիրապետությունը։ Տեղի է ունենում մոնոպոլիստական կապիտալի և պետության ներաճում, որի հետևանքով ֆինանսական օլիգարխիան իր ձեռքն է վերցնում երկրի ոչ միայն տնտեսական, այլև քաղաքական իշխանության զսպանակները և դրանք օգտագործում նոր շահույթներ կորզելու համար։ Միաժամանակ աճում է պետության ազդեցությունը էկոնոմիկայի վրա, որը փորձում է այն ի սպաս դնել մոնոպոլիաների շահերին։ Այդ պրոցեսը պայմանավորված է կապիտալիզմի բոլոր հակասությունների սրմամբ, արտադրության հետագա համակենտրոնացմամբ և մոնոպոլիաների ամենազորության աճով։

ԱՄՆ-ի ֆինանսական օլիգարխիայի վերնախավը, որի մեջ մտնում են մոնոպոլիստական շնագայլերի ութ խումբ (ռոկֆելլերները, մորգանները, դյուպոնները, մելոնները և մյուսները) իր հսկողության տակ 1955 թվականին ուներ 218,5 միլիարդ դոլարի կապիտալ։ Դա ավելին է, քան ԱՄՆ-ի ամբողջ արդյունաբերական արտադրանքի արժեքը, որը նույն 1955 թվականին կազմեց 214 միլիարդ դոլար։

Մարքսիզմի բացահայտ ու քողարկված թշնամիները փորձում են պետական մոնոպոլիստական կապիտալիզմը ներկայացնել որպես կապիտալիզմի «տրանսֆորմացիա» (փոխակերպում), կապիտալիզմի ու սոցիալիզմի խաղաղ ներաճում, քաղաքական իշխանության «դիֆուզիա», երբ իբր թե իմպերիալիստական պետությունն արդեն հանդես է գալիս որպես «համընդհանուր բարեկեցության պետություն», վեր կանգնելով դասակարգերից և սահմանափակելով ու իրեն ենթարկելով մոնոպոլիստական կապիտալի ամենազորությունը։

Իրականությունն այն է, որ պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը ոչ միայն չի լուծում իմպերիալիզմի հակասությունները, այլ ավելի է սրում ու խորացնում դրանք։ Ամբողջ տնտեսական-քաղաքական իշխանության կենտրոնացումը մի բուռ ֆինանսական մագնատների ձեռքին ժողովրդական լայն զանգվածների համար օրեցօր դառնում է ավելի ու ավելի անտանելի։ Մյուս կողմից, նյութական նախադրյալներ են ստեղծվում ռևոլյուցիոն ճանապարհով կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու համար։

Իմպերիալիզմի՝ որպես պարազիտային կապիտալիզմի էությունն առավել ռելյեֆ կերպով արտահայտվում է նրա գերարտադրության ճգնաժամերի, տնտեսական զարգացման ցածր տեմպերի, արտադրական կարողությունների

խրոնիկական թերբեռնվածության, տնտեսության ռազմականացման մեջ։

Ընդամենը միայն տասներկու տարում ԱՄՆ-ը արտադրության ճգնաժամային երեք անկում ապրեցին՝ 1948—1949, 1953—1954 և 1957—1958 թվականներին։ 1957 թվականի աշնանը ճգնաժամն սկսվելով ԱՄՆ-ում, ընդգրկեց համաշխարհային կապիտալիստական տնտեսությունը։ ԱՄՆ-ի արդյունաբերական արտադրությունը 1958 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, կրճատվեց 7 տոկոսով և հետ շպրտվեց 1953 թվականի մակարդակին։ Կապիտալիստական արդյունաբերական արտադրությունն ամբողջությամբ վերցրած կրճատվեց 4 տոկոսով։ Մեծ չափերի հասավ արտադրողական կարողությունների թերբեռնվածությունը։ 1958 թվականի ապրիլին արտադրական կարողությունների օգտագործումը ԱՄՆ-ում իջավ մինչև 70 տոկոսի, ընդ որում մետալուրգիական արդյունաբերության մեջ այն կազմում էր 60 տոկոս, ավտոմոբիլային արդյունաբերության մեջ՝ 32 տոկոս և դազգահաշինական արդյունաբերության մեջ՝ 25 տոկոս։

Ժամանակակից կապիտալիզմի փթումն ու նեխումը առավել ցայտուն կերպով դրսևորվում է էկոնոմիկայի ռազմականացման և սպառազինությունների մրցավազքի մեջ։ Հյուսիս-ատլանտյան բլոկի մասնակից պետությունները 10 տարվա ընթացքում ռազմական ծախսերի համար հատկացրել են ավելի քան 500 միլիարդ դոլար։ Վերջին քսան տարում ԱՄՆ-ի ռազմական ծախսումներն ավելացել են ավելի քան 20 անգամ։ Ըստ որում որքան մահաբեր է զենքը, այնքան շահութաբեր է նրա արտադրությունը։ «Ռմբակոծիչների որոշ տեսակների համար,— հայտարարել է ԱՄՆ-ի պրեզիդենտ Էյզենհաուերը,— մենք վճարում ենք այնքան, ինչքան կվճարեինք դրանց, եթե նրանք ամբողջությամբ լինեին ոսկուց»։ Մոնոպոլիստական կապիտալի սպասարկուները փորձում են էկոնոմիկայի ռազմականացումը և սպառազինությունների մրցավազքը ներկայացնել որպես մշտական «բարգավաճման ու վերելքի» և տնտեսական ճգնաժամերից խուսափելու միջոց։ Դա պարզապես անմտություն է։ Ոչնչացման միջոցների արտադրությունը երբեք չի կարող ապահովել արտադրության ընդհանուր և երկարատև վերելքը։

Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը և նրա հետագա խորացումը դրսևորվում է և քաղաքականության բնագավառում։ Աճող տնտեսական ու քաղաքական, սոցիալական ու ազգային հակասություններից իմպերիալիզմը ելք է փնտրում բուրժուական դեմոկրատիայից դեպի բացահայտ ռեակցիան ու ռազմական դիկտատուրան կատարվող շրջադարձի մեջ, որին նա շատ վաղուց է դիմում։ Այլևս ընդունակ չլինելով իր իշխանությունը պահպանել պառլամենտական հին, տրադիցիոն, ձևական դեմոկրատական մեթոդներով, կապիտալիզմը դիմում է «ուժեղ ձեռքի» կառավարության, ռազմական դիկտատուրայի, տեռորիստական և բացահայտ ոստիկանական միջոցների։ Դրա լավագույն օրինակը կարող է ծառայել դեմոկրատական տրադիցիաներով հայտնի Ֆրանսիան, որտեղ մոնոպոլիստական կապիտալը հարություն տվեց գեներալ դը Գոլի ռազմական դիկտատուրային։ Արևմտյան Գերմանիայում արգելված է կոմունիստական պարտիան։ ԱՄՆ-ում, որտեղ վերջին ժամանակաշրջանում ընդունվել են բազմաթիվ հակադեմոկրատական ու հակաբանվորական օրենքներ, կոմունիստական պարտիան ապրում և պայքարում է մշտական հալածանքների ու ոստիկանական տեռորի պայմաններում։

Հարցը վերաբերում է ոչ թե առանձին փաստերին, այլ ակնառու կերպով



արտահայտված տենդենցին, որն այսօր բնորոշ է կապիտալիստական մի շարք երկրների համար։ Սակայն դեպի մոնոպոլիստական կապիտալի բացահայտ դիկտատուրան ձգտող այդ տենդենցը երբեք և ոչ մի պարագայում չի եղել կապիտալիզմի ուժի արտահայտությունը, հետևապես, չի կարող ապագա ունենալ և շուռ կգա հենց իր դեմ։ Ներքին քաղաքականության բնագավառում ռեակցիայի ուժեղացումն իմպերիալիստական երկրներում զուգակցվում է ագրեսիվ արտաքին քաղաքականությամբ։ Իր ներքին ու արտաքին քաղաքականությամբ իմպերիալիզմը փորձում է խեղդել մոնոպոլիստների ամենազորության, գաղութակալության, պատերազմի դեմ պայքարող ժողովուրդների շարժումը։ Բայց այդ արդեն նրա ուժերից վեր է։

***

Իմպերիալիզմի մայրամուտը երբեք չի նշանակում նրա ավտոմատիկ կրախ, այն տեղի է ունենում միայն աշխատանքի մարդկանց ռևոլյուցիոն հարվածների տակ։ Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամն ուղեկցվում է պրոլետարիատի դասակարգային պայքարի բուռն վերելքով։

Ներկայումս կապիտալիստական մոնոպոլիաները կատաղի հարձակում են սկսել բանվոր դասակարգի կենսամակարդակի, նրա երկարատև պայքարի գնով ձեռք բերած նվաճումների ու դեմոկրատական իրավունքների վրա, նպատակ ունենալով աշխատավոր զանգվածների ուսերին դնելու ճգնաժամի ամբողջ ծանրությունը։ Կապիտալի երկրներում ապրող միլիոնավոր աշխատավորների համար իսկական չարիք է գործազրկությունը։ ԱՄՆ-ում, Իտալիայում, Ճապոնիայում, Կանադայում և կապիտալիստական մի շարք երկըրներում այն կրում է ազգային աղետի բնույթ։ Լրիվ գործազուրկների թիվը, պաշտոնական վիճակագրության տվյալներով, միայն ԱՄՆ-ում հասնում է հինգ միլիոնի։ Յուրաքանչյուր գործազուրկ մի կենդանի մեղադրանք է կապիտալիզմի նկատմամբ։ «Ներկայումս կան տղամարդիկ, կանայք և երեխաներ,— հայտարարել է սենատոր Դուգլասը գործազրկության վերաբերյալ այս տարվա ապրիլի 8-ին Վաշինգտոնում տեղի ունեցած կոնֆերանսում, —որոնք դանդաղ մեռնում են սովից... Ինչպիսի բարբարոսություն է թույլ տալ, որ ժողովուրդը սովի մատնվի, երբ մեր պահեստները լիքն են պարենամթերքներով»։ Այո, դա բարբարոսություն է։ Բայց դա էլ հենց կազմում է կապիտալիզմի ամբողջ էությունը։

Սրվում է կապիտալի և աշխատանքի հակադրությունը, որն իր մարմնացումն է գտնում կապիտալիստական երկրներն ընդգրկված պրոլետարիատի դասակարգային ուժեղացող մարտերի մեջ։ Չնայած կապիտալիստական երկրներում ընդունված դաժան հակաբանվորական, հակարհմիութենական օրենսդրությանը, գործադուլային շարժումն ավելի ուժեղ է, քան պատերազմից առաջ։ Միայն վերջին երեք տարում ԱՄՆ-ում, Անգլիայում, Ֆրանսիայում և Ճապոնիայում տեղի են ունեցել 30 հազար գործադուլ, որոնց մասնակցել են 15 միլիոն մարդ։ Բանը ոչ միայն գործադուլների և գործադուլավորների քանակի աճի մեջ է, այլ այն կազմակերպվածության, համերաշխության, մարտական թափի և նպատակասլացության մեջ, որով աչքի է ընկնում պրոլետարիատի դասակարգային պայքարը մեր օրերում։ Բանվոր դասակարգի

գործադուլային շարժումն ընդունում է բազմազան ձևեր։ Ավելի և ավելի հաճախ զուտ տնտեսական նպատակներով սկսված գործադուլները վեր են ածվում քաղաքական ելույթների ընդդեմ նոր պատերազմի նախապատրաստման, սպառազինությունների մրցավազքի և ատոմային ու ջրածնային զենքի փորձարկումների, բանվոր դասակարգի դեմոկրատական իրավունքների սահմանափակման։

*1959 թվականի փետրվարին Դորտմունդի (Արևմտյան Գերմանիա) 630 հազար բնակիչներ բողոքի գործադուլ հայտարարեցին մերձակա օդանավակայանում ատոմային և հրթիռային զենք տեղադրելու դեմ։ Ոչ հեռու անցյալում ԱՄՆ-ի պրեզիդենտ Էյզենհաուերն ինքնագոհությամբ հայտարարեց, թե իբր բանվորական շարժումն ԱՄՆ-ում «կենդանի ապացույց է այն բանի, որ Մարքսը ճիշտ չէր», որովհետև ամերիկյան բանվորները «ընդգրկված չեն դասակարգերի կռվի մեջ»։ Որ պրեզիդենտ Էյզենհաուերը պարզապես իր համար ցանկալին ընդունում է իրականության տեղ, ակնառու ցույց են տալիս հետևյալ թվերը։ Եթե նախապատերազմյան 10 տարում (1931—1940 թթ.) ԱՄՆ-ում տեղի է ունեցել 22021 գործադուլ՝ 9 միլիոն 500 հազար գործադուլավորներով, ապա հետպատերազմյան 10 տարում տեղի է ունեցել 43159 գործադուլ՝ 26 միլիոն գործադուլավորներով։ Միայն 1958 թվականին ԱՄՆ-ում տեղի է ունեցել 3500 գործադուլ, որոնց մասնակցել է մոտ երկու ու կես միլիոն բանվոր և ծառայող, որը զգալիորեն շատ է, քան 1957 թվականին։ Աշխատանքի պայմանները բարելավելու և աշխատավարձը բարձրացնելու պահանջներով 1957 թվականի մարտի 16-ից մինչև ապրիլի 4-ը գործադուլ արեցին Անգլիայի 200 հազար նավաշինարարներ և մեկ ու կես միլիոն մեքենաշինարարներ։ Իր կազմակերպվածությամբ և թափով այդ գործադուլն ամենախոշորն էր 1926 թվականի համազգային գործադուլներից հետո։ Դասակարգային կազմակերպված պայքարի հիանալի օրինակներ է տալիս Ֆրանսիայի պրոլետարիատը։ 1958 թվականի ապրիլի 1-ին տեղի ունեցած ազգային ընդհանուր գործադուլին մասնակցեցին ավելի քան մեկ միլիոն մետաղագործներ, ածխահատներ, երկաթուղայիններ և արդյունաբերական այլ ճյուղերի բանվորներ։*

*Իտալիայի բանվոր դասակարգի սոցիալական մարտերը չեն դադարում և ոչ մի օր։ Միայն 1958 թվականին գործադուլներին մասնակցել են 7 միլիոն մարդ։ Այս տարվա մարտին գործադուլ արեցին երեք միլիոն բատրակներ և կիսրար աշխատողներ։ Մայիսի 4-ին երկրորդ անգամ ընդհանուր գործադուլ հայտարարեցին մեկ միլիոն մետաղագործներ։*

*Վերելք է ապրում գործադուլային շարժումը Ճապոնիայում։ 1958 թվականի հոկտեմբերի 28-ին 4 միլիոն աշխատավորներ կոմունիստական և սոցիալիստական պարտիաների կոչով մասնակցեցին Ճապոնիան նորից ոստիկանական պետություն դարձնելու Կիշիի կառավարության ռեակցիոն օրինագծի դեմ «համատեղ պայքարի օրվան»։ 1959 թվականի տրադիցիոն «գարնանային արշավներին», որոնք կազմակերպում են աշխատավորների կենսամակարդակի վրա մոնոպոլիաների կողմից կատարվող հարձակումների դեմ, մասնակցեցին մոտ 4 միլիոն մարդ։ Վերջին տարիները Միջին և Հարավային Ամերիկայի պատմության մեջ կմտնեն որպես բանվորական շարժման աննախընթաց վերելքի ժամանակաշրջան։ Դեռ երբեք Լատինական Ա-*



*մերիկայի երկրները չեն տեսել այնպիսի հուժկու և լայն գործադուլային մարտեր, ինչպիսիք եղան 1957—1958 թվականներին։ Այդ երկրների պրոլետարիատն անցավ դասակարգային ճակատամարտերի մեծ դպրոց, հմտորեն զուգակցելով տնտեսական ու քաղաքական պայքարը։ Աշխատանքի, հացի, դեմոկրատիայի համար Լատինական Ամերիկայի երկրների պրոլետարիատի դասակարգային պայքարը սերտորեն միահյուսվում է այդ երկրների ազգային—ազատագրական շարժման հետ, որի սուր ծայրն ուղղված է ամերիկյան իմպերիալիզմի դեմ։ Լատինական Ամերիկայում ազգային-ազատագրական պայքարի ներկա էտապի բնորոշ առանձնահատկությունը բանվոր դասակարգի դերի ուժեղացումն է այդ պայքարում։*

*Հյուսիս-ամերիկյան իմպերիալիզմի անխռով տիրապետության ժամանակաշրջանն անցել է։ Ներկայումս Լատինական Ամերիկան իրենից ներկայացնում է մի եռացող հրաբուխ, որի լավան մեկը մյուսի ետևից քշում-տանում է ԱՄՆ-ի մոնոպոլիստների դրածո, ժողովուրդներին ատելի ռեժիմները։*

*Իմպերիալիզմի մայրամուտն ուղեկցվում է հարյուրամյակների ընթացքում նրա իսկ կողմից հրի ու սրի միջոցով կառուցված գաղութակալական բուրգի կործանմամբ։ Հասել է համաշխարհային պատմության Վ. Ի. Լենինի կանխագուշակած նոր ժամանակաշրջանը, երբ Արևելքի ժողովուրդները դադարել են կապիտալիստական քաղաքակրթության պասսիվ կցորդներ լինելուց, դարձել են «համաշխարհային քաղաքականության և իմպերիալիզմի ռևոլյուցիոն կործանման ակտիվ գործոն»։ Բավական է մի հայացք ձգել աշխարհի քաղաքական քարտեզի վրա և պարզ կդառնա, թե նա ինչպիսի վճռական փոփոխություններ է կրել։ 1939 թվականին, աշխարհի բնակչության մեծամասնությունը՝ 1,5 միլիարդ մարդ, ապրում էր գաղութային և կախյալ երկրներում։ Ներկայումս աշխարհի բնակչության միայն 6 տոկոսը դեռ չի թոթափել գաղութակալության լուծը։ Նրանցից 140 միլիոնը (90 տոկոսը) այժմ բնակվում է Աֆրիկայում, որի տերիտորիայի 70 և բնակչության 60 տոկոսը դեռևս գտնվում են իմպերիալիստների տիրապետության տակ։ Ամենայն ուժով բորբոքվում է այն ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի բոցը, որոնք դեռ չեն ջարդել գաղութակալության շղթաները։*

*Իմպերիալիզմի գաղութային սիստեմի քայքայումը մեծ չափերով կրճատեց կապիտալիստական հարաբերությունների և շահագործման ոլորտը, նոր հուժկու հարված հասցրեց անբուժելի հիվանդություններից տառապող նրա օրգանիզմին։ Միայն չին մեծ ժողովրդի պատմական հաղթանակի շնորհիվ գաղութային շահագործման դաշտը միանգամից կրճատվեց գրեթե մեկ երրորդով։ Մարդկային հսկայական զանգվածներ, վիթխարի տերիտորիաներ՝ բնական մեծ հարստություններով դադարել են կամ դադարում են իմպերիալիզմի ռեզերվները լինելուց։ Գարնանային հզոր, անդիմադրելի և ժամ առ ժամ հորդացող հեղեղի նման ազգային-ազատագրական շարժումը քշում, տանում է գաղութակալության վերջին բեկորները։ Ազգային-ազատագրական շարժումների նկատմամբ միջազգային ժանդարմի դեր ստանձնած ԱՄՆ-ը փորձում են եվրոպական գաղութակալական հին, իրեն լրիվ վարկաբեկված խամուտը փոխել նոր, կատարելագործված, բայց ավելի վտանգավոր ամերիկյան խամուտով։ Իզուր ջանքեր. գաղութակալության վերջին մնացորդների խորտակումը օրվա հարց է և այն անհնարին է կասեցնել։*

***

Խաղաղության, դեմոկրատիայի, սոցիալական առաջադիմության և ազգային ազատագրման համար աշխատավորական զանգվածների պայքարի ավանգարդում ընթանում են կոմունիստական ու բանվորական պարտիաները։

Այսօր միջազգային կոմունիստական շարժումն իրենից ներկայացնում է մեր դարի ամենահզոր հասարակական առաջադիմական ուժը։ Երբ 1847 թվականին պրոլետարիատի մեծ ուսուցիչներ Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը հիմնադրեցին կոմունիստական առաջին կազմակերպությունը՝ «Արդարների միությունը», նրա շարքերում հաշվվում էին ընդամենը 300 անդամ։ Քայլելով ժամանակին համընթաց և արտահայտելով հասարակության վերընթաց շարժման իմաստը, կոմունիստական շարժումը համաշխարհային-պատմական հաղթանակների հասավ։ Կոմունիստական ինտերնացիոնալի առաջին կոնգրեսում (1919 թ.) ներկայացված էին 20 կոմունիստական պարտիաներ և կազմակերպություններ՝ մի քանի հարյուր հազար անդամներով։ Ներկայումս աշխարհում կան 83 կոմունիստական և բանվորական պարտիաներ՝ ավելի քան 33 միլիոն անդամներով։ Կոմունիստական պարտիաների թիվը 1939 թվականի համեմատությամբ ավելացել է 2,5 անգամ, իսկ նրանց անդամների թիվը՝ 8 անգամ։ Միայն 1956 թվականից հետո ստեղծվել են կոմունիստական և բանվորական 8 պարտիաներ։ Ետ շպրտելով իմպերիալիզմի և ռևիզիոնիստների հարձակումները, հաղթահարելով մեծ դժվարություններ, հաջողությամբ անցնելով փորձությունների բովով, կոմունիստներն ավելի ու ավելի են նվաճում բանվորների և աշխատանքի մարդկանց համակրանքը, ձեռք բերում հսկայական ազդեցություն։

Ժամանակակից բանվորական շարժման համար որպես կարևոր նշանակություն և հեռանկարներ ունեցող երևույթ պետք է նշել մի շարք սոցիալիստական պարտիաների և, հատկապես, շատ ու շատ սոցիալիստների շրջադարձը հակակոմունիզմից դեպի կոմունիստական պարտիաների հետ համագործակցության տակտիկան։ Պատմության մեջ առաջին անգամ Ճապոնիայի Սոցիալիստական պարտիան որոշում է ընդունել խաղաղության և ռեակցիայի դեմ մղվող պայքարի մի քանի կենսական հարցերի շուրջը համագործակցել Կոմունիստական պարտիայի հետ։ 1958 թվականի գարնանը Չիլիում կայացած լատինա-ամերիկյան երկրների սոցիալիստական պարտիաների կոնֆերանսը առաջին անգամ բացահայտ հակաիմպերիալիստական որոշում ընդունեց։ Իմպերիալիզմի դեմ ուղղված ժողովրդական զանգվածների ռևոլյուցիոն շարժումները ծավալվում են ամենայն ուժով, լայնությամբ և խորությամբ։

Իմպերիալիզմի գաղափարախոսները ջանում են սոցիալիզմի հաղթանակները վերագրել՝ «կոմունիստական դավադրություններին», «ռևոլյուցիայի արտահանմանը», որն իբրև գալիս է Սովետական Միությունից։ Դա անհեթեթություն է։ Դեռևս ավելի քան մեկ հարյուրամյակ առաջ գրած իր նշանավոր «Կոմունիզմի սկզբունքները» աշխատության մեջ Ֆ. Էնգելսը նշել է, որ «ռևոլյուցիաները չի կարելի կամայականորեն և պատվերով անել»։ «Անհնարին կլիներ վերջ տալ կապիտալիզմի տիրապետությանը,— գրել է Վ. Ի. Լենինը,— եթե դեպի այդ չտաներ կապիտալիստական երկրների ողջ տնտեսական զարգացումը... Ոչ մի ուժ չէր խորտակի կապիտալիզմը, եթե նրան հիմքից չքլատեր ու չքայքայեր պատմությունը» (Երկեր, հ. 24, էջ 527)։ Բայց այն պատճառով, որ տնտեսական զարգացման օբյեկտիվ օրենքները, պատմությունը հիմքից ջլատում ու քայքայում են կապիտալիզմը, աշխարհում չկան այնպիսի ուժեր, որոնք կարողանային արգելակել կապիտալիզմը սոցիալիզմով փոխարինելու օրինաչափ պրոցեսը։ Այդ պրոցեսն անհաղթահարելի է, որովհետև սոցիալիզմից դուրս, նշել է Վ. Ի. Լենինը, մարդկության համար փրկություն չկա աղքատությունից, հոգեմաշ ու թշվառ կյանքից, արյունալի պատերազմներից։



Իմպերիալիզմի դատապարտվածությունը դրսևորվում է այն բանում, որ նա այլևս ի վիճակի չէ առաջադրելու այնպիսի նպատակներ, գաղափարներ, որոնք գրավեին, դեպի իրենց ձգեին ժողովուրդներին։ Այդ ստիպված են խոստովանել և կապիտալիզմի պաշտպանները։ Կապիտալիզմը մնացել է պատմության գումակում, առանց հեռանկարի, առանց ապագայի։

Իմպերիալիզմը դեռևս ի վիճակի է մարդկությանը պատճառել նոր տանջանքներ, բերել նոր թշվառություններ, նույնիսկ ունենալ մասնակի հաջողություններ, միաժամանակ դանդաղեցնել հասարակության առաջադիմական զարգացումը այս կամ այն երկրում և այլն։ Բայց դա ժամանակավոր և անցողիկ բնույթ է կրում։ Ինչպես Վ. Ի. Լենինն է նշել, «ինչքան էլ ծանր լինեն այն փորձությունները, որ դեռ կարող են մեր վրա թափվել, ինչքան էլ մեծ լինեն այն աղետները, որ դեռ կարող է բերել մեզ միջազգային իմպերիալիզմի շունչը փչող գազանը,— այդ գազանը կկործանվի, և սոցիալիզմը կհաղթանակի ամբողջ աշխարհում» (Երկեր, հատ. 29, էջ 268)։ Իմպերիալիզմն անզոր է կանգնեցնելու պատմության հաղթական առաջընթացը, որի հզոր անիվների տակ նա կգտնի իր վերջնական կործանումը։

---

# ԿՈԼԵԿՏԻՎՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՐՏԻԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱԳՈՒՅՆ ՍԿԶԲՈՒՆՔՆ Է

*Կոմունիստական պարտիան՝ սովետական հասարակարգի ղեկավար և ուղղություն տվող ուժը, իր հսկայական ստեղծագործական աշխատանքի ընթացքում մշակել է պարտիական ու պետական ղեկավարության հիմնական սկզբունքները։ Սերտորեն կապված լինելով աշխատավորների ամենալայն մասսաների հետ, նա մեր երկիրը հաստատ ու վստահորեն առաջ է տանում կոմունիզմի կառուցման ուղիով։ Նրա քաղաքականության հիմքում ընկած են հանճարեղ Լենինի մշակած պարտիական ղեկավարության սկզբունքները։ Այդ սկզբունքները նախատեսում են պարտիայի կանոնադրության պահանջների խստիվ պահպանում, դեմոկրատական ցենտրալիզմի հետևողական կիրառում, պարտիայի շարքային անդամների ակտիվության մշտական բարձրացում, պարտիական կյանքի կարևորագույն հարցերի կոլեկտիվ քննարկում և լուծում։*

*Իր XX համագումարից հետո Սովետական Միության Կոմունիստական պարտիան, նրա Կենտրոնական Կոմիտեն հսկայական աշխատանք են կատարել պարտիական կյանքի լենինյան նորմերի և պարտիական ղեկավարության սկզբունքների վերականգնման ու զարգացման ուղղությամբ։ «Կենսագործելով պարտիայի XX համագումարի որոշումները,— պարտիայի XXI համագումարին տված զեկուցման մեջ ասաց ընկեր Խրուշչովը,— պարտիան շարունակում է պարտիական կյանքի լենինյան նորմերի և պարտիական ղեկավարության կոլեկտիվության սկզբունքների վերականգնման ու զարգացման, պարտիական մասսաների, ամբողջ սովետական ժողովրդի ստեղծագործական ակտիվության ըստ ամենայնի բարձրացման աշխատանքը»։*

*Պարտիական կոմիտեները քաղաքական ղեկավարության օրգաններ են, որոնք չեն կարող իրենց աշխատանքում կիրառել վարչական մեթոդներ։ Պարտիական աշխատանքի հիմնական սկզբունքը կոլեկտիվ ղեկավարությունն է։ Դա նշանակում է, որ բոլոր հարցերը պարտիական կոմիտեների կողմից պետք է քննարկվեն և լուծվեն կոլեկտիվ կերպով։*

*Որքան էլ փորձված լինեն ղեկավարները, ինչպիսի գիտելիքներով և ընդունակություններով էլ նրանք օժտված լինեն, չեն կարող փոխարինել ամբողջ կոլեկտիվի կարողությանն ու փորձին։ Աշխատանքի բոլոր բնագավառներում ամեն մի կոլեկտիվում կան մեծ փորձ ունեցող մարդիկ, որոնց օգնությամբ ղեկավարները կկարողանան ճիշտ կիրառել պարտիայի քաղաքականությունը։*

*Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները վերջին տարիներին խոշոր աշխատանք են կատարել կոլեկտիվ ղեկավարության սկզբունքների պահպանման, ներպարտիական դեմոկրատիայի և քննադատության ծավալման ուղղությամբ։*

*Սակայն մեզ մոտ դեռևս լինում են դեպքեր, երբ պարտիական առանձին աշխատողներ երբեմն խախտում են պարտիական կոլեկտիվ ղեկավարության սկզբունքը։ Այդպիսիներից էին, օրինակ, պարտիայի Նոյեմբերյանի, Սպիտակի, Ախտայի շրջանային կոմիտեների նախկին ղեկավարները, որոնք հաճախ կարևոր հարցերը լուծում էին միանձնյա կերպով, առանց նկատի ունենալու բյուրոյի անդամների կարծիքը։ Այսպես, օրինակ, ՀԿՊ Ախտայի շրջանային պարտիական կազմակերպության վերջին կոնֆերանսին ներկայացված շրջկոմի հաշվետվությանը իրազեկ չէին բյուրոյի անդամները։ Հաշվետվությունը տառապում էր ինքնագովությամբ և չէր արտահայտում պլենումի անդամների կոլեկտիվ կարծիքը։ Պարտիայի շրջանային կոմիտեի պլենումի անդամները իրավացիորեն սուր քննադատության ենթարկեցին ներկայացված հաշվետվությունը, որը խիստ մակերեսային էր, նրանում չէին վեր հանվել շրջկոմի և սկզբնական պարտիական կազմակերպությունների աշխատանքներում տեղ գտած սխալներն ու թերությունները, նշված չէին այն կոլտնտեսությունների և պարտիական կազմակերպությունների ղեկավարների անունները, որոնք ձախողել էին աշխատանքը և չէին ապահովել պետական առաջադրանքների կատարումը։*

*Շրջկոմի պլենումի անդամները արեցին մի շարք արժեքավոր և տեղին առաջարկություններ ու դիտողություններ։ Պարտիայի շրջանային կոմիտեի պլենումը միաձայն որոշեց՝ հանձնարարել շրջանային կոմիտեի բյուրոյին և շրջկոմի առաջին քարտուղարին՝ վերամշակել կոնֆերանսին ներկայացվող հաշվետու զեկուցումը, հիմք ընդունելով պլենումի անդամների առաջարկություններն ու դիտողությունները։*

*Շրջկոմի նախկին քարտուղար ընկ. Գ. Սեդրակյանը պարտավոր էր հաշվի առնել կոմիտեի անդամների միանգամայն իրավացի պահանջը։ Սակայն նա այդպես չվարվեց և առանց որևէ փոփոխության այդ զեկուցումով հանդես եկավ կոնֆերանսում։*

*Կոլեկտիվ ղեկավարությունը մեծ նշանակություն ունի կադրերի ընտրության, տեղադրման և դաստիարակման համար։ Միայն աշխատողներին պարտիական կյանքին հաղորդակից դարձնելով, նրանց կոլեկտիվ ղեկավարության ոգով դաստիարակելով կարելի է կոփել պարտիական և պետական լավագույն աշխատողներ։ Մինչդեռ պարտիայի Սևանի, Նոյեմբերյանի, Ախտայի շրջկոմներում խախտվում էր կոլեկտիվ ղեկավարության սկզբունքը, որը բացասաբար էր անդրադառնում ղեկավար կադրերի ընտրության, տեղադրման և դաստիարակման վրա։ Պարտիայի հիշյալ շրջկոմներում բյուրոյի նոմենկլատուրայի մեջ մտնող բոլոր կադրերը չեն, որ աշխատանքի են նշանակվել, հեռացվել կամ ազատվել շրջանային կոմիտեի բյուրոյի կողմից։ Այդ շատ դեպքերում կատարվել է միայն շրջկոմի քարտուղարների կարգադրությամբ։*

*Մեկ տարուց ավելի է, ինչ Սևանի շրջանի Ցամաքաբերդի կոլտնտեսության ոչխարաբուծական ֆերմայի վարիչ է աշխատում Գ. Կարապետյանը, առանց շրջկոմի բյուրոյի հաստատման։ Նույն շրջանի Վարսերի կոլտնտեսության ոչխարաբուծական ֆերմայի վարիչ, ՍՄԿՊ անդամ Գ. Հակոբյանը ազատվել է աշխատանքից և կես տարուց ավելի է ինչ նրա փոխարեն ֆերմայի վարիչ է աշխատում ՍՄԿՊ անդամ Ս. Նավասարդյանը. թե մեկի և թե մյուսի ազատումն ու նշանակումը կատարվել են միայն շրջկոմի քարտուղարների կարգադրությամբ*

*Ղեկավարության կոլեկտիվ սկզբունքի թերագնահատումն առաջին հերթին*

նկատվում է այնտեղ, որտեղ մոռացության են տրվել ներպարտիական դեմոկրատիայի սկզբունքները, որտեղ շրջանային կոմիտեի քարտուղարները թույլ են տալիս վարչարարություն, մոռանալով, որ այդ հանգեցնում է կոպիտ սխալների և ղեկավարությունը կտրում է պարտիական ակտիվից։

Որտեղ խախտվում է կոլեկտիվ ղեկավարության սկզբունքը, այնտեղ բացակայում են անհրաժեշտ պայմանները քննադատության և ինքնաքննադատության համար, բթանում է պատասխանատվության զգացումը, որոշ աշխատողներ դառնում են մեծամիտ ու պարծենկոտ և առանձին ղեկավարներ մտածում են, թե միայն իրենք ամեն ինչ գիտեն և կարող են ասել որևէ կարգին ու խելացի բան, իսկ մյուսները պետք է միայն պաշտպանեն նրանց կարծիքը։ Այդպիսի պայմաններում բարենպաստ հող է ստեղծվում անսկզբունքայնության, հաճոյակատարության, ստորաքարշության և քծնության համար, պարտիական կոմիտեի անդամները հաշտվում են այդպիսի ղեկավարի հետ և հարաբերությունները չփչացնելու համար թույլ են տալիս անսկզբունքայնություն։ Պարտիական ոչ կոլեկտիվ ղեկավարության հետևանքով Ախտայում որոշ ակտիվ աշխատողների շրջանում նկատվում էին քծնանքի և հաճոյակատարության արատավոր երևույթներ։ Սկզբունքային քննադատության ծավալմանը լուրջ խոչընդոտ էր հանդիսանում այն վարքագիծը, որ ունեին Սևանի շրջկոմի նախկին քարտուղար Կ. Մանուկյանը, Նոյեմբերյանի շրջկոմի նախկին քարտուղար Ռ. Պետրոսյանը, որոնք իրենց գործունեությամբ չէին նպաստում քննադատության ծավալմանը և աշխատանքում տեղ գտած թերությունների վերացմանը։

Կոլեկտիվ ղեկավարությունը պետք է դաստիարակի աշխատողներին, նրանց մեջ մշակի մեր պարտիայի քաղաքականության խոր ըմբռնում, պետական մոտեցում ամեն մի գործի նկատմամբ, սկզբունքայնություն աշխատանքում և անհաշտվողականություն թերությունների նկատմամբ, քննադատելու կարողություն և համարձակություն, զարգացնի դժվարությունները հաղթահարելու նախաձեռնություն ու հաստատակամություն, սովորեցնի պարտիական ղեկավարության արվեստը։ Իսկ ուր իշխում է հաճոյակատարությունը, անհնար է հարցերը գործարար մթնոլորտում քննարկել, ղեկավար ընկերներին քննադատական դիտողություններ անել, աշխատաքում լինում են խիստ թերություններ, թույլ են տրվում լուրջ սխալներ։

Պատահական չէր, որ Նոյեմբերյանի, Սևանի, Սպիտակի և Ախտայի պարտիայի շրջանային կոմիտեների նախկին ղեկավարների աշխատանքի արատավոր ոճը և սխալ մեթոդները բացասական ազդեցություն ունեցան տնտեսության վրա։ Նշված շրջանների կոլտնտեսությունները չէին կատարում պլանով նախատեսված առաջադրանքները, էլ չենք խոսում սոցիալիստական մրցությամբ վերցրած պարտավորությունների կատարման մասին։ Այսպես, օրինակ, Ախտայի շրջանի կոլտնտեսություններում հացահատիկի համախառն բերքը 1958 թվականին կազմել է 94,654 ցենտներ, պլանով նախատեսված 115 հազար ցենտների դիմաց։ Չի կատարվել կովերի կաթնատվության պլանը. պլանով նախատեսված 1930 կգ-ի փոխարեն ամեն մի կովից ստացվել է 1450 կգ կաթ։ Մսի արտադրության 1958 թվականի տարեկան պլանը կատարվել է 79,5 տոկոսով, 100 հեկտար հողատարածության դիմաց շրջանի կոլտնտեսություններում 1958 թվականին պլանավորված է եղել արտադրել միս՝ (կենդանի քաշով) 36 ցենտներ, բայց արտադրվել է 27,9 ցենտներ, կաթ՝ 140



ցենտներ, արտադրվել է 129 ցենտներ, բուրդ՝ 266 կիլոգրամի դիմաց 214 կգ, ձու 6900-ի դիմաց 4100 հատ։ Չեն կատարվել նաև կովերի, խոզամայրերի և թռչունների գլխաքանակի ավելացման տարեկան պլանները։

Հարցերի քննարկման և լուծման ժամանակ պետք է կարողանալ կոլեկտիվությունը ճիշտ զուգակցել անձնական պատասխանատվության հետ։ Քիչ չեն այն փաստերը, երբ որոշ շրջկոմների որոշումներ կրում են ընդհանուր բնույթ, որի հետևանքով ոչ ոք պատասխանատու չէ նրանց կատարման համար։ Որոշումների կատարման սիստեմատիկ ստուգումը ամրապնդում է պարտիական և պետական կարգապահությունը, պայմաններ ստեղծում աշխատանքում տեղ գտած թերությունները ժամանակին նկատելու և վերացնելու համար։

Հարցերի կոլեկտիվ քննարկման և լուծման գործում կարևոր դեր է խաղում պարտիական կոմիտեների բյուրոյի նիստերի, պլենումների ճիշտ անցկացումը։ Պարտիական կոմիտեների բյուրոյի նիստերը, պլենումները կանոնավոր կերպով, ժամանակին չհրավիրելը կոլեկտիվ ղեկավարության խախտում է։ Պարտիայի շրջկոմի բյուրոյի և պլենումների վատ նախապատրաստումը չի նպաստում կոլեկտիվ ղեկավարության սկզբունքի կիրառմանը։ Որոշ դեպքերում բյուրոյի անդամները նյութերը նախօրոք չեն ստանում և ընդունվող որոշումների նախագծերին ծանոթանում են հենց բյուրոյի նիստերում։ Այդ պայմաններում հարցերի քննարկումը տևում է ժամեր և հաճախ խելացի որոշում չի ընդունվում։ Այդպիսի անարդյունավետ նիստերը հրավիրվում են ոչ թե հարցերի իսկական քննարկման, այլ ձևականության համար։ Օրինակ, մինչև վերջին ժամանակներս էլ Նոյեմբերյանի, Սևանի և Ախտայի պարտշրջկոմների բյուրոների նիստերը հաճախ հրավիրվում էին առանց նիստերում քննարկվող հարցերի խոր ուսումնասիրության ու նախապատրաստման։

Ներպարտիական աշխատանքում մեծ տեղ է տրվում պարտիական ակտիվի հետ տարվող աշխատանքին։ Պարտիական ակտիվը պարտիայի հասարակական կարծիքի արտահայտիչն է, նրա որոշումների կենսագործողը։ Կոմունիստական պարտիան իր գործունեության ընթացքում կարևորագույն խնդիրներ լուծելիս միշտ լսել է պարտիական և ժողովրդական լայն մասսաներին, խորհրդակցել պարտիական ակտիվի հետ, որը հնարավորություն է տալիս արագ և ավելի ճիշտ լուծելու պարտիական, երկրի տնտեսական ու կուլտուրական շինարարության բազմազան հարցերը։ Կոլեկտիվ ղեկավարման սկզբունքը պահպանելու գործում մեծ նշանակություն ունի շրջանային կոմիտեների պլենումների և ակտիվի նիստերի պարբերաբար հրավիրումը։ Սակայն դեռևս հանդիպում ենք այնպիսի շրջկոմների, որոնք առանձին դեպքերում խախտում են ՍՄԿՊ կանոնադրությամբ սահմանված շրջանային կոմիտեների պլենումների հրավիրման ժամկետները։ Պարտիայի Սպիտակի շրջանային կոմիտեն 1958 թվականի ընթացքում հրավիրել է 2 պլենում (չհաշված կազմակերպչական պլենումը), Նոյեմբերյանի շրջանային կոմիտեն՝ նույնպես 2 պլենում։ Շրջանային կոմիտեների պլենումների հրավիրման սահմանված ժամկետները խախտվել են նաև պարտիայի Շահումյանի շրջանի և այլ շրջկոմների կողմից։

Ինչպես պարտիական ակտիվի ժողովների, այնպես էլ պլենումների նիստերի նախապատրաստմանը պետք է լայն կերպով մասնակից դարձնել կոմիտեի անդամներին, պարտիական լայն ակտիվին։ Սակայն պարտիական ակտիվի ուժերը օգտագործելու և նրանց հետ կատարվող աշխատանքները մինչև

վերջին ժամանակներս էլ թերագնահատվում են պարտիայի Կոտայքի, Շահումյանի, Սևանի, ինչպես նաև մի շարք այլ շրջկոմների կողմից։ Պարտիայի Սևանի շրջանային կոմիտեի 2-րդ պլենումում (1958 թ. ապրիլ), որտեղ քննարկվել են ՀԼԿԵՄ Սևանի շրջանային կոմիտեի աշխատանքները, ելույթ ունեցող 10 ընկերներից միայն 4-ն են պլենումի անդամներ, 3-րդ պլենումում (1958 թ. հունիս), որտեղ քննարկվել էր աշխատավորների դեպուտատների Սովետների գործունեությունը բարելավելու և մասսաների հետ նրանց կապերը ուժեղացնելու հարցը, ելույթ ունեցող 12 ընկերներից միայն 4-ն են պլենումի անդամներ։

Միայն մարքսիստական-լենինյան թեորիայի գիտական հիմքերի վրա խարսխված կոլեկտիվ փորձը, Կոմունիստական պարտիայի և նրա լենինյան Կենտրոնական Կոմիտեի կոլեկտիվ իմաստությունն են ապահովում պարտիայի և երկրի ճիշտ ղեկավարությունը, պարտիայի շարքերի անսասան միասնությունն ու համախմբվածությունը, մեր երկրում կոմունիստական հասարակարգի հաջող կառուցումը։

Կոմունիստական շինարարության յոթնամյա պլանի հոյակապ խնդիրները, պարտիայի XXI համագումարի որոշումների անթերի կատարումը պարտիական կազմակերպություններից պահանջում է պարտիական-կազմակերպական ու քաղաքական աշխատանքի մակարդակի հետագա էլ ավելի բարձրացում, պարտիական ու պետական ապարատի բոլոր օղակներում պարտիական ղեկավարության ամրապնդում, պարտիական ղեկավարության սկզբունքների և պարտիական կյանքի լենինյան նորմերի ճշգրիտ կիրառում։ Անհրաժեշտ է ամեն կերպ պահպանել կոլեկտիվ ղեկավարության սկզբունքը և անհաշտ պայքար մղել այդ սկզբունքը խախտողների դեմ։

ԱՆԴ. ՍԱՐԳՍՅԱՆ

## ԶԱՐԳԱՑՄԱՆ ԼԱՅՆ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐ

Ղափանի լեռնահանքային արդյունաբերության աշխատողները, խոր գիտակցելով իրենց թողարկած արտադրանքի նշանակությունը մեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման գործում, ուժ ու եռանդ չեն խնայում ձեռնարկությունների բարձր արտադրողական աշխատանքն ապահովելու, երկրին ավելի շատ պղինձ ու մոլիբդեն տալու համար։

Կենսագործելով ՍՄԿՊ XX համագումարի որոշումները, Զանգեզուրի հանքավարչության և Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի բանվորներն ու ինժեներա-տեխնիկական աշխատողները վերջին տարիներին զգալի գործ են կատարել լեռնահանքային աշխատատար պրոցեսների մեքենայացման, պղնձով ու մոլիբդենով հարուստ նոր հանքավայրերի հայտաբերման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, ինքնարժեքի իջեցման, բանվորների որակավորման ուղղությամբ։

Այժմ Ղափանի ու Քաջարանի բոլոր հանքերում և աշխատանքային տեղամասերում մեքենայացված է հանքաքարի հանույթի, բարձման, փոխադրման և մշակման երբեմնի դժվարին աշխատանքների մեծ մասը։ Բանվորների առողջությունը պահպանելու համար այնտեղ, որտեղ հնարավոր է, կիրառվում է հանքափորման բաց եղանակը։ Հանքախորշերում տեղադրված են անհրա-



ժեշտ քանակությամբ օդամղիչ և օդափոխիչ սարքավորումներ, անցկացված է էլեկտրական լուսավորություն։ Միայն անցած տարի ստացվել և լեռնահանքային արդյունաբերության մեջ տեղադրվել են 16 ապառաբարձիչ մեքենա, 13 էլեկտրաքարշ, տասնյակ սկրեպերային կարապիկներ, օդամղիչ պոմպեր։ Քաջարանի հանքում գործի են դրվել չորս հսկա էքսկավատոր, կառուցվել և գործարկման է հանձնվել երկրորդ ճոպանուղին, Գյումուշ-Քաջարան բարձրավոլտ էլեկտրահաղորդման գիծը, ճոպանուղու հանքաքար ջարդող բաժինը, 8-րդ հանքավայրէջքը, ֆլոտացիոն ֆաբրիկայի 4-րդ բաժինը։ Կոմբինատը ստացել է նաև տարբեր մարկաների ավելի քան 50 ավտոմեքենա, խոր փորող հաստոցներ և այլ մեխանիզմներ։

Լեռնահանքային արդյունաբերության աշխատատար պրոցեսների մեքենայացման, հանքագործ բանվորների, ինժեներների, տեխնիկների, պարտիական, արհմիութենական կազմակերպությունների, տնտեսական ղեկավարների եռանդուն աշխատանքի շնորհիվ Ղափանում անընդհատ ավելանում է հանքաքարի արդյունահանումը, պղնձի և մոլիբդենի կոնցենտրատի արտադրությունը։ Վերջին երեք տարվա ընթացքում պղնձի և մոլիբդենի կոնցենտրատի արտադրությունը ավելացել է 1,6 անգամ։

Երկրին ավելի շատ արտադրանք տալու գործում տեխնիկա-տնտեսական բարձր ցուցանիշներ են ձեռք բերել հատկապես Քաջարանի պղնձա-մոլիբդենային կոմբինատի բանվորներն ու ինժեներա-տեխնիկական աշխատողները։ Սոցիալիստական ստեղծագործ մրցություն ծավալելու, աշխատանքի կազմակերպման մակարդակը բարձրացնելու, տեխնիկան ռացիոնալ օգտագործելու շնորհիվ քաջարանցիներն անցած տարի ժամկետից մեկ ամիս շուտ կատարեցին պետական պլանները և լրացուցիչ կերպով երկրին տվին մի քանի հազար տոննա արժեքավոր մետաղների կոնցենտրատ։ Արտադրության բոլոր օղակներում խնայողության խստագույն ռեժիմ հաստատելու միջոցով կոմբինատի կոլեկտիվը ունեցել է մոտ 11 միլիոն ռուբլու արտապլանային կուտակում։

Իր առջև դրված խնդիրները հաջողությամբ է կատարել Զանգեզուրի հանքավարչության կոլեկտիվը։ Իրագործելով Ղափան-Ալավերդի տրադիցիոն մրցությամբ ստանձնած պարտավորությունները, №№ 7—10, 1—2, 5—6, Նոր Բարաբաթում հանքերի, հիմնական հանքուղու և ֆլոտացիոն ֆաբրիկայի կոլեկտիվները ժամկետից շուտ կատարեցին տարեկան պլանային առաջադրանքները և Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատին ուղարկեցին հարյուրավոր տոննաներով պլանից ավելի կոնցենտրատ։ Ձեռնարկության հետագա տարիների բարձր արտադրողական աշխատանքն ապահովելու նպատակով Զանգեզուրի հանքագործները լեռնահետախուզական և լեռնակապիտալ լայն աշխատանքներ են կատարել, հայտաբերելով պղնձով հարուստ նոր հանքավայրեր, բացելով մի շարք նոր հանքուղիներ ու հանքախորշեր։

Երկրին ավելի շատ արտադրանք տալու համար մղվող պայքարն անցյալ տարի հաջողությամբ է պսակվել նաև պահածոների գործարանում, տեղական արդյունաբերության, մսի կոմբինատներում, կարի և կոշիկի արտելներում, որոնք պատվով կատարեցին սոցիալիստական մրցությամբ ստանձնած իրենց պարտավորությունները։

Կոմունիստական պարտիայի XXI արտահերթ համագումարը արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվների, պարտիական, արհմիութենական կազմակերպությունների առջև լուրջ խնդիրներ է դրել։ Յոթնամյա պլանով նա-

խատեսված է ՍՍՌՄ-ում ռաֆինացված պղնձի արտադրությունն ավելացնել 1,9 անգամ։ Այս խնդրի լուծման գործում իր համեստ բաժինն ունի Ղափանի լեռնահանքային արդյունաբերությունը։ 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, Ղափանի պղնձահանքերի համախառն արտադրանքն աճելու է ավելի քան մեկ ու կես անգամ, հիմնական հանքուղին ընդարձակվելու է ավելի քան երկու անգամ, մեքենայացվելու են հանքաքարի բացման ու տեղափոխման համարյա բոլոր աշխատանքները։

Զանգեզուրի հանքավայրի վերջին տարիներին կատարված երկրաբանական ուսումնասիրությունները ցույց տվին պղնձի խոշոր պաշարների առկայությունը։ Ելնելով դրանից, նախատեսվում է հանքվարչության արտադրողական կարողությունը յոթնամյակում ավելացնել երկու անգամ։ Այդ հանգամանքը պահանջում է հիմնական վերակառուցման ենթարկել այժմյան գործող բոլոր հանքերն ու օժանդակ ցեխերը։ 1960 թվականից կսկսվի Ս. Մ. Կիրովի անվան ֆլոտացիոն ֆաբրիկայի նոր սեկցիաների շինարարական աշխատանքը, որի ավարտումից հետո ֆաբրիկայի արտադրական կարողությունը կավելանա մոտ երեք անգամ։

Մեծ կապիտալ ներդրումներ են կատարվելու նաև ստորերկրյա տրանսպորտի հանքուղիները վերակառուցելու ուղղությամբ։ Նախատեսվում է քաղաքով հոսող Ողջի գետի վրա կառուցել նոր երկհարկանի կամուրջ, որի առաջին հարկը կօգտագործվի քաղաքացիների երթևեկության համար, իսկ երկրորդով միայն կանցնի էլեկտրաքարշը։ Բանվորների առողջության պահպանման, մեխանիզմների լայն օգտագործման վճռական պայմաններից մեկը հանքերը օդով ապահովելն է։ Դրա համար 1961 թվականին շահագործման կհանձնվի կոմպրեսորային նոր հզոր կայանը, որի վրա ծախսվելու է մոտ երեք միլիոն ռուբլի։ Բանվորների կենցաղային պայմանները բարելավելու նպատակով յոթնամյակի տարիներին կառուցվելու են կենցաղային երկու կոմբինատ, մեկը՝ Լենինի անունը կրող հանքախմբում, իսկ մյուսը՝ գլխավոր հանքին կից։

Յոթնամյա պլանի կատարման համար պահանջվող կապիտալ ներդրումների ծավալը Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատում ավելանալու է մոտ 450 միլիոն ռուբլով։ Կոմբինատի համախառն արտադրանքը նախատեսվում է ավելացնել մոտ երեք անգամ։ 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, մոլիբդենի կոնցենտրատի թողարկումն ավելանալու է 2,5 անգամ։ Այդ նույն ժամանակամիջոցում կոմբինատի մեքենայական պարկը հարստանալու է հայրենական մարկայի ԷԿԳ—4 տիպի հզոր էքսկավատորներով, 25 տոննա բեռնատարողությամբ ավտոմեքենաներով, որոնց թիվը յոթնամյակի վերջում հասնելու է 120-ի։ Կառուցվելու են էքսկավատորային դեպո, մեխանիկական վերանորոգման արհեստանոց, բուլդոզերային կայան, պահեստային ճոպանուղի, որի բեռնաբարձումը կատարվել է պնևմատիկ փականներով։ Մեծ փոփոխությունների է ենթարկվելու հարստացուցիչ ֆաբրիկան. Նախատեսվում է ամբողջ ֆլոտացիան կատարել երկստադիալ եղանակով, լրիվին մեքենայացնել կոնցենտրատի բարձման և բեռնաթափման աշխատանքները։ Ֆաբրիկայում գործելու են չորացման և ֆլոտացման նոր ցեխեր։ Յոթնամյակի վերջում կոմբինատն ունենալու է իր պողպատաձուլական ցեխը։

Այդ խնդիրները հաջողությամբ կատարելու համար հանքերում բացվելու



են տասնյակ նոր հորիզոններ, աշխատանքային տեղամասեր, հանքավայրէջքներ, էլ ավելի լայն ծավալ է ստանալու տեխնիկական պրոգրեսը։

Մտնելով յոթնամյակը ժամկետից շուտ կատարելու համար ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցության մեջ, Ղափանի լեռնահանքային արդյունաբերության և մյուս արտադրական ձեռնարկությունների կոլեկտիվները բարձր պարտավորություններ են ստանձնել։ Զանգեզուրի հանքվարչության կոլեկտիվը, օրինակ, պարտավորվել է յոթնամյակի առաջին տարվա պլանը հիմնական ցուցանիշներով կատարել ժամկետից 12 օր շուտ, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 7 տոկոսով, պղնձի կորզումն ավելացնել 3,1 տոկոսով, ստանալ մի քանի միլիոն ռուբլու արտապլանային շահույթ։

Ստանձնած պարտավորությունները կենսագործելու համար հարկավոր էր ոտքի հանել բոլոր բանվորներին և ինժեներա-տեխնիկական աշխատողներին, նրանց համար ստեղծել աշխատանքի նորմալ պայմաններ։ Այդ խնդիրների իրականացմանը ձեռնամուխ եղան պարտիական, արհմիութենական կազմակերպությունները և տնտեսական ղեկավարները։ Ձեռնարկության պարտկոմիտեի և պրոֆմբկոմի անդամները եղան հանքերում, հարստացուցիչ ֆաբրիկայում, օժանդակ ցեխերում, զրույցներ ունեցան բանվորների հետ, նրանց բացատրեցին այն խնդիրները, որոնց կատարման համար պայքարում է ամբողջ կոլեկտիվը։ Ելնելով դրանից, յուրաքանչյուր հանքի, ցեխի կոլեկտիվ և բանվոր ստանձնեց կոնկրետ պարտավորություն։ Լուրջ ուշադրություն նվիրվեց առաջավոր հորատողների, մեքենավարների, ֆլոտատորների աշխատանքի հարուստ և ուսանելի փորձի արմատավորմանը։ Պատշաճ բարձրության վրա դրվեց սոցիալիստական մրցության ղեկավարման գործը։ Այժմ ամեն ամսվա վերջում հանքերի, ֆլոտացիոն ֆաբրիկայի և օժանդակ ցեխերի պարտիական, արհմիութենական կազմակերպությունները սիստեմատիկաբար ստուգում են սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքը և արդյունքները ագիտատորների, պատի թերթերի, բանվորական ժողովների միջոցով հասցնում աշխատողներին, խրախուսում առաջավորներին, կոնկրետ օգնություն ցույց տալիս ետ մնացողներին։

Ուսումնասիրելով եղած հնարավորությունները, № 7—10 հանքի դիրեկցիան և պարտիական կազմակերպությունը որոշեցին այս տարի անցնել կոմպլեքսային աշխատանքի։ Հարցը քննարկվեց հանքի կոլեկտիվի ընդլայնված խորհրդակցությունում, որին մասնակցում էին նաև հանքվարչության ինժեներա-տեխնիկական աշխատողներ։ Խորհրդակցությունը միահամուռ հավանություն տվեց № 7—10 հանքի կոլեկտիվի նախաձեռնությանը և հանքվարչության դիրեկցիային պահանջեց լրացնել ապառաբարձիչ մեքենաների և էլեկտրաքարշերի թիվը։ Այդ ուղղությամբ արդեն որոշ աշխատանք է կատարվել. հանքախորշերում և հորիզոններում տեղադրվել են երկու խոր փորման հաստոց, մեկ ապառաբարձիչ մեքենա, երկու էլեկտրաքարշ և երեք սկրեպերային կարապիկ, անց են կացվել ջրատար և օդատար նոր խողովակներ, 180-րդ հորիզոնում շահագործման է հանձնվել պղնձով հարուստ մի նոր երակ։

Հանքի պարտիական և արհմիութենական կազմակերպությունները սոցիալիստական մրցության մեջ են ընդգրկել բոլոր բանվորներին ու ինժեներա-տեխնիկական աշխատողներին, սահմանել են միջհերթափոխային փոխանցիկ դրոշ, գործի են դրել պատվո տախտակը, բոլոր հերթափոխություններում աշ-

խորացրել են քաղաքական-մասսայական աշխատանքը, բրիգադներում և աշխատանքային տեղամասերում նշանակել են ագիտատորներ, հարստացրել ցուցադրական ագիտացիայի նյութերը, որոնք պատկերում են յոթնամյակում հանքի կոլեկտիվի առջև դրված խնդիրները։

Սոցիալիստական լայն մրցություն ծավալելով, հանքի կոլեկտիվը հանքաքարի պոկման այս տարվա անցած չորս ամսվա պլանը կատարել է 104 տոկոսով և հանքաքարի հանույթինը՝ 105 տոկոսով։ Պլանային առաջադրանքները հաջողությամբ են կատարում Ն. Գրիգորյանի, Վ. Ստեփանյանի և Մ. Հակոբյանի ղեկավարած հերթափոխությունների բանվորները։ Նրանցից հորատողներ Մ. Համբարձումյանը, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ Հ. Վալիևը, Խ. Ալիևը, Գ. Հարությունյանը և շատ ուրիշներ, մրցելով միմյանց հետ, իրենց օրվա առաջադրանքները կատարում են 145—150 տոկոսով։ Հանքում արդեն կրճատվել է 4-րդ հերթափոխությունը, մեկ բանվորի աշխատանքի արտադրողականությունը բարձրացվել է 10,3 տոկոսով, յուրաքանչյուր տոննա հանքաքարի ինքնարժեքն իջեցվել է մոտ 2 ռուբլով։

Այս տարվա առաջին օրերից սկսած կոմպլեքսային աշխատանքի են անցել նաև հիմնական հանքուղու լեռնագործները։ Նրանց աշխատանքի առաջին արդյունքները գոհացուցիչ են. չորս ամսում հանքուղում տրվել է 11 հազար ռուբլու միայն աշխատավարձի խնայողություն։ Հանքուղու կոլեկտիվը հանքաքարի պոկման առաջադրանքը կատարել է 115,6, հանույթի արդյունահանման պլանը՝ 107,1 տոկոսով։ Արձագանքելով ռեսպուբլիկայի մի շարք առաջավոր արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվների հայրենասիրական կոչին, հանքուղու կոլեկտիվը պայքարում է ժամկետից մեկ ամիս շուտ կատարել յոթնամյակի առաջին տարվա պլանը։

Արտադրական նոր վերելք է ապրում նաև կոմերիտմիության անվան հանքի կոլեկտիվը։ Պարտիայի XXI համագումարի որոշումները ոգեշնչել, թև ու թռիչք են տվել հանքագործ բանվորներին, ինժեներա-տեխնիկական աշխատողներին։ Յուրաքանչյուր հորատող, մեքենավար ձգտում է որքան կարող է լավ աշխատել, որպեսզի ժամկետից շուտ կատարվեն յոթնամյակում հանքի առջև դրված խնդիրները։ Չէ՞ որ յոթնամյակում այստեղ հանքաքարի արդյունահանումն ավելանալու է երկու և կես անգամ։ Համագումարի որոշումներով ոգեշնչված ընդերքում աշխատող մարդիկ խոստացել են ժամկետից 15—20 օր շուտ կատարել հանքաքարի պոկման և արդյունահանման յոթնամյակի առաջին տարվա պլանները, մեկ ամիս առաջ օգտագործման հանձնել 960-րդ հորիզոնականում տեղադրվող հզոր էլեկտրաքարշային պարկը, հանքաքարի արդյունահանումը նախորդ տարվա համեմատությամբ ավելացնել 26,5 տոկոսով, տալ 200 հազար ռուբլու արտապլանային օգուտ։

Խոսքը գործի վերածելու ուղղությամբ արդեն որոշակի գործ է կատարված։ Կազմակերպված աշխատանքի շնորհիվ կոլեկտիվը հանքաքարի հանույթի այս տարվա անցած չորս ամսվա պլանը կատարեց 117 տոկոսով՝ ֆլոտացիոն ֆաբրիկա փոխադրելով մի քանի հարյուր տոննա պլանից ավել հանքաքար։ Այստեղ շատ բանվորներ չորս ամսում հինգուկեսից վեց ամսվա նորմա են կատարել։ Հորատող Աշոտ Մելքոնյանը, բնավորությամբ համեստ, վճռականությամբ լի այս երիտասարդը, հանքում առաջինը չորս ամսում կատարեց վեց ամսվա նորմա և այժմ համառորեն ճեղքելով լեռան կուրծքը, անընդհատ խորանում է ընդերքում։ Հանքի պարտիական, կոմերիտական կազ-



մակերպությունները նրան վստահեցին կոմունիստական աշխատանքի բրիգադայի ղեկավարությունը։ Այդ մեծ վստահությանը երիտասարդ հորատողը որոշեց պատասխանել նվիրված աշխատանքով, գործով ապացուցել, որ չեն սխալվել իր նկատմամբ, որ ինքը և իր բրիգադայի մյուս բոլոր բանվորները կարդարացնեն նրանց հույսերը։ Եվ նրանք այդպես էլ անում են։ Բրիգադայի անդամ, հորատող Անդրանիկ Արզումանյանը, լինելով մոտ տասը տարվա հանքագործ, լավ ծանոթ է հանքի պայմաններին, լեռնակազմությանը։ Նա հիանալի տիրապետում է հորատանցքերի փորման տեխնիկային, գիտի, թե ինչ թեքությամբ, խորությամբ ու հեռավորությամբ պետք է փորել հորատանցքերը, որ պայթեցումից ավելի շատ հանքաքար կպոկվի։ Արտադրական առաջադրանքները սիստեմատիկաբար գերակատարելու հետ միասին, անվանի հորատողը աշխատանքի իր ուսանելի փորձը հաղորդում է երիտասարդ հորատողներին, օգնում նրանց՝ առաջադրանքների կատարման գործում։ Առաջադրանքները զգալիորեն գերակատարում են նաև հորատողներ Արամ Հովհաննիսյանը, Իվան Գորբաչովը, Կոլյա Դավթյանը և ուրիշներ։ Ստանձնած պարտավորությունները կենսագործելու շնորհիվ անցած ամիսներին հանքում աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 17,4 տոկոսով, ինքնարժեքն իջավ 3,2 տոկոսով, տրվեց 40 հազար ռուբլու օգուտ, առաջադրանքից ավելի արդյունահանվեց մի քանի հարյուր տոննա պղնձաքար։

Բարձր արտադրողականությամբ է աշխատում նաև Ս. Մ. Կիրովի անվան ֆլոտացիոն ֆաբրիկայի կոլեկտիվը, որը կոնցենտրատի թողարկման չորս ամսվա պլանը կատարել է 101 և կոնցենտրատի մեջ պղնձի պարունակությանը՝ 102,4 տոկոսով։ Ստեղծված ընդհանուր վերելքի շնորհիվ Զանգեզուրի հանքվարչությունը (դիրեկտոր Գ. Մաթևոսյան, պարտկոմիտեի քարտուղար Հ. Պողոսյան, պրոֆմբկոմի նախագահ Ս. Ստեփանյան) հանքաքարի հանույթի անցած չորս ամսվա պլանը կատարել է 104,1 և պղնձի կոնցենտրատի թողարկման պլանը՝ 105 տոկոսով, Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատին ուղարկելով մի քանի հարյուր տոննա պլանից ավելի կոնցենտրատ։

Սակայն լեռնահանքային արդյունաբերության աշխատողների գործունեության մեջ կան նաև լուրջ թերություններ։ Քաջարանի կոմբինատի կոլեկտիվը տարվելով անցյալ տարվա հաջողություններով, չապահովեց այս տարվա առաջին եռամսյակի համախառն արտադրանքի պլանի կատարումը։ Այդ հանգամանքը անհանգստացրեց պարտիայի շրջանային կոմիտեին։ Շրջկոմի բյուրոն քննության առնելով կոմբինատի ետ մնալու պատճառները, նշեց, որ այստեղ դեռևս վատ են օգտագործվում լեռնահանքային տեխնիկան, բանվորական ուժը, ցածր է աշխատանքի կազմակերպման մակարդակը։ Պարտիական, արհմիութենական կազմակերպությունները իրենց հեռու են պահում սոցիալիստական մրցությունը կազմակերպելու և գլխավորելու գործից, չեն ուսումնասիրում և արմատավորում արտադրության առաջավորների փորձը։ Հանքում, ճոպանուղում, ֆլոտացիոն ֆաբրիկայում խախտվում էր լեռնային աշխատանքների գրաֆիկը։

Պարտիայի շրջկոմի բյուրոյի որոշումը քննարկվեց կոմբինատի պարտիական ժողովում և կոմունիստների քննադատական դիտողությունների ու առաջարկությունների հիման վրա ընդունվեցին կոնկրետ միջոցառումներ։ Պետք է ասել, որ ապրիլ ամսին դրությունը որոշ չափով բարելավվեց։ Կոմբինատը կատարեց համախառն արտադրանքի պլանը։ Կասկած լինել չի կարող,

որ շուտով կոմբինատը դուրս կգա ճեղքվածքից և կսկսի աշխատել բարձր արտադրողականությամբ, անպայման կկատարի յոթնամյակի առաջին տարվա պլանները։

Յոթնամյակում բուռն թափով զարգանալու է նաև շրջանի տեղական արդյունաբերությունը։ Շուտով կսկսվի ապագա կրի գործարանի կառուցումը։ Գործարանը տարեկան արտադրելու է 22 հազար տոննա կիր։ Թորաբխանլու տեղամասում կան մեծ քանակությամբ որակյալ և ամուր բազալտ։ Այստեղ տեղադրվելու են մի շարք մեքենաներ և օրական տասնյակ խորանարդ մետր բազալտ է մատակարարվելու քաղաքի նորակառույցներին։ Այս տարվա հենց առաջին օրերից հիմք է դրվել կավե ամանների արտադրությանը։ 1965 թվականին արտադրվելու է 300 հազար լիտր ընդհանուր տարողությամբ կավե ամաններ։ Լեռնագործների քաղաքում 1960 թվականին հիմք է դրվելու գորգերի մասսայական արտադրությանը։ Այդ նույն ժամանակամիջոցում շրջանի բոլոր ենթախմբերի գյուղերում կազմակերպվելու են կոշիկի և հագուստեղենի վերանորոգման ցեխեր։

Լայն կերպով զարգանալու է պահածոների արտադրությունը։ Պահածոների գործարանի կոլեկտիվը որոշել է 1965 թվականին արտադրել 2 միլիոն 500 հազար պայմանական տուփ զանազան տեսակի պահածոներ ու մուրաբաներ։ Գործարանի արտադրանքի որակը բարելավելու և արտադրության տեխնոլոգիան կատարելագործելու, ինչպես նաև բազմասորտիմենտ արտադրանք տալու համար վերակառուցվելու են ցեխերը, տեղադրվելու են նոր, ավելի կատարելագործված մեխանիզմներ։ Այս տարվա պլանը ժամկետից շուտ կատարելու համար գործարանում նախապատրաստական լուրջ աշխատանքներ են կատարել արտադրական սեզոնը կազմ ու պատրաստ սկսելու համար։ Արդեն վերանորոգվել և պատրաստ են հիմնական ագրեգատներն ու մեքենաները, մեխանիկական արհեստանոցը։ Այս տարի գործարանի համախառն արտադրանքը, անցյալ տարվա համեմատությամբ, ավելացվելու է 12 տոկոսով, իսկ հետագա տարիների միջին աճը կկազմի 14 տոկոս։ Հումքի մեծ մասը ստացվելու է շրջանի կոլտնտեսություններից ու սովխոզներից։

Յոթնամյակի առաջին տարվա պլանները հաջողությամբ են կատարում տեղարդ կոմբինատի, մսի կոմբինատի, կարի, կոշիկի արտելների, կահույքի ֆաբրիկայի կոլեկտիվները։

Յոթնամյակում մեծ չափով ավելանալու է հանքագործ բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների ռեալ աշխատավարձը։ Հենց այս տարվանից ավելի քան 25 տոկոսով բարձրանում է նրանց աշխատավարձը։ Եթե անցած տարվա փետրվարի մեկի դրությամբ ընդերքում աշխատող մեկ բանվորի միջին աշխատավարձը կազմում էր 854 ռուբլի, ապա այս տարի այն կհասնի 1052 ռուբլու։

ՍՄԿԿ XXI համագումարը լուրջ խնդիրներ է դրել նաև գյուղատնտեսության բնագավառի աշխատողների առջև։ Այդ խնդիրների լույսի տակ վերանայելով իրենց հնարավորությունները, Ղափանի գյուղատնտեսության աշխատողները խոստացել են յոթնամյակում կաթի արտադրությունը շրջանում հասցնել 44 հազար 400 ցենտների։ Շրջանի կոլտնտեսությունները 1965 թվականին պետությանն են հանձնելու 1050 ցենտներ բուրդ, որը 430 ցենտներով ավելի է, քան 1957 թվականի ստացածը։ 1965 թվականին շրջանում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը ավելանալու է ավելի քան 1100 գլ-



խով, այդ թվում կովերինը՝ 870 գլխով, ոչխարներինը՝ մոտ 10 հազար գլխով, թռչուններինը՝ մոտ 80.000 թևով։ Կրկնապատկվելու են բազմամյա խոտաբույսերի ցանքատարածությունը, ծխախոտի և եգիպտացորենի պլանտացիաները, լայնորեն զարգանալու է այգեգործությունը, ընդլայնվելու է դաշտերի ոռոգման ցանցը։

ՍՄԿԿ XXI համագումարի որոշումներով ոգեշնչված, շրջանի գյուղատնտեսության աշխատողները սոցիալիստական մրցության են հրավիրել Մեղրու շրջանի կոլտնտեսականներին և խոստացել են յոթնամյա պլանը կատարել հինգ տարում։ Դավիթբեկ գյուղի Ստալինի անվան կոլտնտեսության աշխատողները որոշել են ամեն մի կովի կաթնատվությունը հասցնել 2000 կիլոգրամի, ոչխարի միջին բրդատվությունը՝ 4 կիլոգրամի, կրկնապատկել խոշոր և մանր եղջերավոր անասունների ու խոզերի գլխաքանակը։ Լայն ծավալ է ստանալու անասնապահական շենքերի շինարարությունը, մեքենայացվելու են անասունների կերակրման աշխատանքները։

Գյուղատնտեսության զարգացման լայն հեռանկարներ ունեն Շիշկերտ, Կաթնառատ, Լեռնաձոր, Շիկահող գյուղերի կոլտնտեսությունները, Նորաշենիկի և Սիզնակի սովխոզները, որոնք յոթնամյակում 1,5—2 անգամ ավելացնելու են գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։

Կառուցվում, բարեկարգվում, գեղեցկանում է հանքագործների քաղաք Ղափանը։ Այժմ քաղաքի բոլոր թաղամասերում վեր են բարձրանում վարդագույն տուֆաքարից կառուցվող բնակելի, արտադրական և կուլտուր-կենցաղային տասնյակ շենքեր։ Կանցնի յոթ տարի և անճանաչելիորեն կփոխվի Ղափանը։ Միայն այս տարի քաղաքում կառուցվելու և շահագործման է հանձնվելու 6000 քառակուսի մետր բնակելի տարածություն։ Այս տարի քաղաքում շահագործման են հանձնվելու նաև ավտոշահագործման կայանը, մի քանի նոր խանութներ, լենինյան հանքախմբի բանվորական հանրակացարանը, ակումբը, տեղարդ կոմբինատի պավիլիոնի երկու շենքերը։

Շուտով քաղաքում շահագործման կհանձնվի կապի գրասենյակի նոր շենքն իր ավտոմատ հեռախոսակայանով։ Բեխ գյուղի ցածրադիր մասում բարձրանում են հացի գործարանի կորպուսները։ Ղափանում բացվելու է լեռնամետալուրգիական տեխնիկում, կայարանի թաղամասերում կառուցվելու է գիշերօթիկ դպրոց, 32 կիլոմետրի վրայից Ղափան է բերվելու Գեղիի խմելու ջուրը, որը լի ու լի բավարարելու է քաղաքի և բանավանների աշխատավորության պահանջները։ Այժմ լայն ծավալ է ստացել ջրմուղի կառուցումը, որին ակտիվ կերպով մասնակցում են նաև քաղաքի բնակիչները՝ շաբաթօրյակների կարգով։

Խոշոր կապիտալ ներդրումներ են կատարվելու Ողջի, Քաջարան, Հանքավան բանավաններում։ Նախատեսված է այդ բանավաններում կառուցել հանրակրթական դպրոցի, մանկամսուրի, մանկապարտեզի շենքեր, հանգստյան և ծերերի ու հաշմանդամների տներ։ 1965 թվականին Քաջարանում կրկնապատկվելու է բնակելի տարածության այժմյան մակերեսը։ Կոմունալ շինարարության վրա ծախսվելու է շուրջ 47 միլիոն ռուբլի։

Շատ ժամանակ չի անցել ՍՄԿԿ XXI համագումարից, բայց Ղափանում զգալի գործ է կատարվում։ Կենսագործելով համագումարի որոշումները, լեռնահանքային արդյունաբերության և գյուղատնտեսության աշխատողները հայտաբերում և գործի են դնում նորանոր ռեզերվներ, ավելի գործարար և

*նպատակասլաց բնույթ տալով սոցիալիստական մրցությանը, համառ պայքար են մղում յոթնամյակի առաջին բնագիծը նվաճելու, 1959 թվականի պետական պլանները և մրցությամբ ստանձնած պարտավորությունները ան թերի կատարելու համար։*

Ա. ԳԱՍՊԱՐՅԱՆ
ՀԿՊ Ղափանի շրջկոմի քարտուղար

# ՊԱՐՏԼՈՒՍՑԱՆՑԻ ԱՆՑԱԾ ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐՈՒՄ

*Պարտիական և անպարտիական մասսաների կողմից մարքս-լենինյան ռևոլյուցիոն թեորիայի և պատմության խոր ուսումնասիրության գործում կարևոր դեր է խաղում պարտիական լուսավորության սիստեմն իր բազմազան օղակներով։*

*Անցած ուսումնական տարվա արդյունքները ցույց տվին, որ ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները զգալի աշխատանք են կատարել կոմունիստների, կոմերիտականների և անպարտիական ակտիվիստների քաղաքական ուսուցումը կազմակերպելու ուղղությամբ։*

*Պարտլուսցանցի բոլոր օղակներում սովորում էին ավելի քան 85 հազար կոմունիստներ և անպարտիականներ։ Անցած ուսումնական տարվա բնորոշ առանձնահատկությունն այն էր, որ կոմունիստների քաղաքական ուսուցումն անցավ ավելի կազմակերպված, ավելի բովանդակալից, բարձրացավ ոչ միայն պարտիական պրոպագանդայի բովանդակությունը, այլև կոմունիստների քաղաքական ու աշխատանքային ակտիվությունը՝ յոթնամյակի առաջին տարվա պլանների կատարման բնագավառում։*

*Ուսումնական տարվա կեսին տեղի ունեցավ ՍՄԿՊ XXI համագումարը, որի նյութերի ուսումնասիրությունն սկսեցին պարտիական լուսավորության ցանցի բոլոր օղակները։ Համագումարի փաստաթղթերի ուսումնասիրությունը հարստացրեց քաղաքական ուսուցման բովանդակությունը և բարձրացրեց նրա գաղափարական մակարդակը, ուժեղացրեց կոմունիստների և անպարտիականների հետաքրքրությունը գիտական կոմունիզմի թեորիայի հարցերի նկատմամբ, մեծ չափով նպաստեց պարտիական պրոպագանդան կյանքի, կոմունիստական շինարարության պրակտիկ խնդիրների հետ սերտորեն կապելու գործին։*

*Անցած ուսումնական տարվա բնորոշ կողմերից մեկն էլ այն էր, որ պարտիական լուսավորության սիստեմում զգալիորեն աճեց պարտիայի հերոսական պատմությունն ուսումնասիրող կոմունիստների և անպարտիականների թիվը։ Դա միանգամայն բնական է ու հասկանալի այն առումով, որ մամուլում սկսվեց տպագրվել ՍՄԿՊ պատմության նոր դասագրքի առանձին գլուխները, որտեղ իրենց ճիշտ մեկնաբանումն են ստացել պարտիայի պատմության կարևորագույն պրոբլեմները, ինչպես նաև մեր պարտիայի վերջին քսան տարիների փառապանծ պատմությունը։*

*Պարտիայի պատմությունն ուսումնասիրողների թիվը գրեթե կրկնապատիկ չափով աճեց Կիրովական, Լենինական քաղաքների, Ապարանի, Աշտարակի, Ալավերդու, Կալինինոյի, Սիսիանի, Ղափանի, Թալինի, Սպիտակի, Վեդու շրջանների պարտիական կազմակերպություններում։*



*ՍՄԿՊ պատմության ուսումնասիրության աշխատանքի դրական փորձ են ձեռք բերել մի շարք պարտիական կազմակերպությունների խմբակներ ու սեմինարներ։ Դրանցից է Լենինականի տեքստիլ կոմբինատի՝ պարտիայի պատմությունն ուսումնասիրող խմբակը, որի պրոպագանդիստն է Ս. Ավետիսյանը։ Սովորաբար այդ խմբակի պարապմունքներն անցնում են ունկնդիրների ակտիվ մասնակցության պայմաններում, նրանցից շատ շատերը նախօրոք բարեխղճորեն պատրաստվում են պարապմունքի, ուսումնասիրում և կոնսպեկտավորում են ոչ միայն պարտիայի պատմության առանձին գլուխները, այլև մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունները։ Այդ խմբակում պարտիայի XXI համագումարի նյութերի ուսումնասիրությունն ունկնդիրները սերտորեն կապում են կոմբինատի արտադրական խնդիրների ու նրա զարգացման հեռանկարների հետ։*

*Ունկնդիրների ջանասեր ու ստեղծագործական աշխատանքին մեծապես նպաստում է Ավետիսյանի պրոպագանդիստական վարպետությունը, նյութը մինչև վերջ ունկնդիրներին պարզաբանելու նրա կարողությունը։ Ուսումնասիրվող թեմաների հիմնական հարցերը նա մեկնաբանում է խոր տրամաբանությամբ, պարապմունքը վարում է աշխույժ, կենդանի զրույցի մեթոդով։*

*Պարապմունքներն այսպիսի բարձր մակարդակով է անցնում նաև էջմիածնի Վ. Զեյվայի (պրոպագանդիստ Վ. Մանուկյան), Աշտարակի շրջկենտրոնի կոլտնտեսության (պրոպագանդիստ Է. Օհանյան), Հոկտեմբերյանի Վորոշիլովի անվան սովխոզի (պրոպագանդիստ Մ. Պողոսյան), Ապարանի Քասախ գյուղի (պրոպագանդիստ Գ. Մկրտչյան) և շատ ուրիշ խմբակներում ու սեմինարներում։*

*Հարկ է նշել, որ կան նաև այնպիսի խմբակներ, որտեղ ուսուցման ցածր մակարդակի պատճառը հենց իրենք՝ պրոպագանդիստներն են, որոնք չունենալով տեսական ու մեթոդական անհրաժեշտ պատրաստականություն, վատ են նախապատրաստում անցնելիք թեման, որի հետևանքով պարապմունքի ժամանակ երբեմն թույլ են տալիս սխալներ։ Այդպիսիներից են ՍՄԿՊ պատմությունն ուսումնասիրող խմբակների պրոպագանդիստներ Մ. Արզումանյանը (Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարան), Գ. Սաքանյանը (Կիրովականի քիմկոմբինատ), Մ. Աբրահամյանը (Կամոյի շրջանի Այրիվանք գյուղ), Ժ. Սահակյանը (էջմիածնի կայարան), Ս. Մնացականյանը (Կոտայքի միլբաժանմունք), Հ. Հասանովը (Ղափանի շրջանի Բահարլու գյուղ), որոնք իրենց քաղաքական գիտելիքներով շատ քիչ են տարբերվում ունկնդիրներից։*

*Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպություններն ընթացիկ ուսումնական տարում մեծ ուշադրություն դարձրին նաև կադրերի տնտեսագիտական կրթության կազմակերպմանը. ստեղծվեցին մարքսիստական տնտեսագիտության, սոցիալիստական արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության, տրանսպորտի, առևտրի կոնկրետ էկոնոմիկայի հարցերն ուսումնասիրող ավելի քան 700 խմբակ ու սեմինար՝ մոտ 19 հազար ունկնդիրներով։ Տնտեսական գիտելիքների պրոպագանդմանը լայնորեն ներգրավվեցին պարտիական, սովետական, ինժեներա-տեխնիկական աշխատողներ, գյուղատնտեսության մասնագետներ, ֆինանսական, պլանային և առևտրի օրգանների աշխատողներ։ Արտադրության կոնկրետ ճյուղերի գիտակ մարդկանց ներգրավումը պրոպագանդիստական աշխատանքում՝ զգալի չափով օգնեց թեորիան պրակտիկայի, պարտիական կազմակերպություն-*

ների առջև կանգնած կոնկրետ խնդիրների հետ կապելու գործին։ Կադրերի տնտեսագիտական ուսուցման կազմակերպման գործում զգալի փորձ են կուտակել Երևանի Ստալինյան, Շահումյան շրջանների, Լենինական, Կիրովական քաղաքների, Էջմիածնի, Աշտարակի, Իջևանի, Ալավերդու պարտիական կազմակերպությունները։ Կարելի է խոսել մի շարք շնորհալի պրոպագանդիստների ու սեմինարավարների մասին, որոնք իրենց բարեխիղճ ու գործիմաց աշխատանքով ունկնդիրներին օգնում են լավ ըմբռնելու սոցիալիստական տնտեսության տվյալ ճյուղի կոնկրետ էկոնոմիկայի հարցերը, որոնց ճիշտ լուծումը նպաստում է արտադրության վերելքին։

Տնտեսագիտական ուսուցումն արտադրության նպատակին ծառայեցնելու ուսանելի օրինակ է ցույց տալիս Երևանի ձեթ-օճառ կոմբինատի սկզբնական պարտիական կազմակերպությունը (քարտուղար Ս. Ղազարյան), որտեղ կոմունիստների մեկ երրորդը ուսումնասիրում է մարքսիստական տնտեսագիտության և արդյունաբերության կոնկրետ էկոնոմիկայի հարցերը։ Այդ կազմակերպության սոցիալիստական արդյունաբերության ձեռնարկությունների էկոնոմիկան ուսումնասիրող խմբակներից մեկը ղեկավարում է կոմբինատի արտադրական բաժնի վարիչ՝ ինժեներ Ա. Բարսեղյանը։ Այդ խմբակում ընդգրկված ցեխերի ու հերթափոխությունների վարպետները, բրիգադավարները և առաջավոր բանվորները երկրորդ տարին է, որ ուսումնասիրում են արդյունաբերության էկոնոմիկան։ Այս առումով դրական աշխատանք են կատարել նաև Շահումյանի շրջանի Վ. Ի. Լենինի անվան կոլտնտեսության, Արտաշատի շրջանի Մխչյան գյուղի, Ազիզբեկովի Ջառիթափ սովխոզի գյուղատնտեսության էկոնոմիկան ուսումնասիրող խմբակները, ինչպես նաև Երևանի ալյումինի, ՀԿՊ Լենինականի քաղաքային կոմիտեի, Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատի արդյունաբերական ձեռնարկությունների էկոնոմիկայի հարցերն ուսումնասիրող սեմինարները։ Նշված խմբակներն ու սեմինարները ղեկավարում են տվյալ կոլտնտեսության նախագահները, հիմնարկի և արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարներն ու պետերը։

Սակայն պետք է նշել, որ կադրերի տնտեսագիտական ուսուցման ասպարեզում գոյություն ունեն նաև լուրջ թերություններ։ Մի շարք շրջաններում (Եղեգնաձոր, Ազիզբեկով, Ախուրյան, Թալին) գյուղատնտեսության էկոնոմիկան ուսումնասիրող խմբակներ են կազմակերպվել այնպիսի պարտիական կազմակերպություններում, որտեղ կոմունիստների մեծամասնությունն ունի տարրական և թերի միջնակարգ կրթություն։ Քիչ չեն դեպքերը, երբ այդ ուսուցումը խմբակներում ու սեմինարներում վեր է ածվում արտադրական խորհրդակցությունների, որտեղ կոնկրետ էկոնոմիկայի հարցերը տեսական մեկնաբանություն չեն ստանում։ Բնական է, որ նման դեպքերում այդպիսի խմբակներն ու սեմինարները իրենց նպատակին չեն կարող ծառայել։

Ինչպես անցյալ տարի, այնպես էլ այս ուսումնական տարում զգալի տարածում գտան ընթացիկ քաղաքականությունն ուսումնասիրող խմբակները։ Պրակտիկան ցույց է տվել, որ այդ խմբակներն իրենց արդարացնում են միայն այն դեպքում, երբ ճիշտ են կոմպլեկտավորված և ապահովված են տեսականորեն պատրաստված պրոպագանդիստներով։ Բայց իրականում այլ է վիճակը։ Երևան քաղաքի Կիրովյան, Սպանդարյան, Ստալինյան, Լենինյան, Ախտայի, Ախուրյանի, Ստեփանավանի, Մեղրիի շրջաններում և Լենինական քաղաքում ընթացիկ քաղաքականությունն ուսումնասիրող խմբակները կազ-



մում են գործող բոլոր խմբակների 60 տոկոսից ավելին, որոնց մի մասը բարձրորակ պրոպագանդիստներով ապահովված չէ։ Հենց դա է պատճառը, որ այդ խմբակների զգալի մասում պարապմունքները չեն տարբերվում քաղաքական ինֆորմացիաներից ու ագիտ ժամերից և հաճախ վեր են ածվում թերթերի սովորական ընթերցանության։ Այսպիսով, այդ խմբակները քիչ են օգնում կոմունիստների տեսական-գաղափարական աճին ու չեն տալիս քաղաքական անհրաժեշտ գիտելիքներ։

Անցած ուսումնական տարում ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները զգալի տեղ են հատկացրել կոմունիստների քաղաքական ուսուցման այնպիսի ձևերի ստեղծմանը, ինչպիսիք են՝ քաղդպրոցները, քաղաքատնտեսության, մարքսիստական փիլիսոփայության, ժողովրդական կրթության ու կոմունիստական դաստիարակության պրոբլեմներն ուսումնասիրող խմբակներն ու սեմինարները։ Այդ տիպի խմբակներում ու սեմինարներում ընդգրկված էին ավելի քան 15 հազար կոմունիստ և անպարտիական։ Սակայն պետք է նշել, որ մի շարք շրջաններում անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում փիլիսոփայության ուսումնասիրությանը։ Բավական է ասել, որ Սևանի, Ալավերդու, Կիրովականի, Ապարանի շրջաններում փիլիսոփայություն ուսումնասիրող կոմունիստների թիվը 10-ից չի անցնում։ Անհրաժեշտ է պարտիական և սովետական մեր բոլոր կադրերին զինել հասարակության զարգացման, կոմունիզմի կառուցման օրենքների ճանաչողությամբ, ռևիզիոնիզմի և բուրժուական իդեոլոգիայի դրսևորումների դեմ պայքարելու իմացությամբ ու կարողությամբ։

ՍՄԿՊ Կենտկոմի ցուցումով վերակառուցվեցին մարքսիզմ-լենինիզմի երեկոյան համալսարանները։ Առաջին անգամ համալսարաններում ստեղծվեցին տնտեսագիտության, փիլիսոփայության, պատմության և ընդհանուր ֆակուլտետներ։ Դա զգալիորեն թարմություն մտցրեց երեկոյան համալսարանների ուսումնական ծրագրերում և աշխուժացրեց նրանց աշխատանքը։ Սակայն դրա հետ միասին Երևանի, Լենինականի քաղաքային կոմիտեների անհետևողական աշխատանքի պատճառով ուսումնական տարվա ընթացքում այդ համալսարաններում մաղվել է ավելի քան 200 ունկնդիր։ Դա հետևանք է այն բանի, որ պարտիական կազմակերպությունները վատ են զբաղվում համալսարանները համապատասխան կոնտինգենտով ապահովելու գործով։

Կոմունիստների և անպարտիական ակտիվի գաղափարական դաստիարակության հիմնական ձևը հանդիսանում է մարքսիստական-լենինյան թեորիայի ինքնուրույն ուսուցումը։ Այս տարի քաղաքական ինքնակրթությամբ զբաղվում էր ավելի քան 42 հազար մարդ, որից 34.600-ը կոմունիստներն են։

Փորձը ցույց է տալիս, որ ինքնուրույն ուսումնասիրողներին օգնելու ամենաարդյունավետ ձևը թեորիական սեմինարներն են։ Սեմինարներում է, որ տեսական և պրակտիկ առավել կարևոր հարցերը կոլեկտիվ քննարկման միջոցով լայն լուսաբանում են ստանում։ Պատահական չէ, որ պրոպագանդիստական շատ աշխատողներ արտահայտում են այն միտքը, թե անհրաժեշտ է այն փոքրաթիվ կազմակերպություններում, որտեղ կան ինքնակրթությամբ զբաղվող 6—10 կոմունիստ, նրանց քաղաքական ուսուցումը տանել նաև սեմինարային ձևով։

Ինքնուրույն ուսումնասիրողներին օգնելու նպատակով մի շարք պարտիական կազմակերպություններ պարբերաբար կազմակերպում են դասախոսություններ, զեկուցումներ, անհատական ու խմբակային կոնսուլտացիաներ, ռեֆերատների քննարկումներ և տեսական կոնֆերանսներ։ Պարտիական լուսավորության սիստեմի անցած ուսումնական տարում պարտիական կոմիտեների դասախոսական խմբերի միջոցով ինքնուրույն ուսումնասիրողների համար կազմակերպված է մոտ 10 հազար դասախոսություն։ Ինքնուրույն ուսումնասիրողների հետ լավ աշխատանք են կազմակերպում Լենինականի երկաթուղային հանգույցի, մանվածքային ֆաբրիկայի, Շահումյանի Լենինի անվան կոմբինատի, Կիրովականի № 2 միջնակարգ դպրոցի, Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին առընթեր Պետական անվտանգության կոմիտեի և մի շարք այլ պարտիական կազմակերպություններ։

Այնուամենայնիվ կոմունիստների ինքնուրույն ուսուցումը դեռևս մնում է պարտիական լուսավորության ցանցի ամենաթույլ օղակներից մեկը։ Կարելի է բերել բազմաթիվ օրինակներ, երբ շատ կոմունիստներ, մասնավորապես որոշ ղեկավար աշխատողներ, իրենց համարում են ինքնուրույն ուսումնասիրողներ, բայց ամբողջ ուսումնական տարվա ընթացքում ոչինչ չեն անում իրենց գաղափարական մակարդակի բարձրացման ուղղությամբ։

Նոյեմբերյանի շրջանի անտառարդյունաբերության, Այրումի խաղողագործական սովխոզի, շրջկոոպի պարտիական կազմակերպությունները բավարար աշխատանք չեն կազմակերպել քաղաքական ինքնակրթությամբ զբաղվողներին օգնելու ուղղությամբ։ Նրանք բավարարվել են միայն նրանով, որ ուսումնական տարվա նախօրյակին կազմել են ինքնուրույն ուսումնասիրողների ցուցակները, իսկ այնուհետև մինչև ուսումնական տարվա վերջը բոլորովին չեն հետաքրքրվել, թե կոմունիստները ինչպես են սկսել աշխատանքը, ի՞նչ դժվարությունների են հանդիպել և ի՞նչ օգնության կարիք են զգում։ Այդպես է վիճակը նաև Կամոյի շրջանի Սարուխան գյուղի միջնակարգ դպրոցի, շրջկոոպի, Ղուկասյանի շրջսովետի գործկոմի, Ախուրյանի շրջանի Ազատան, Ջաջուռ գյուղերի, Ստեփանավանի շրջանի Կուրթան գյուղի, երկրաբանական հետախուզական արշավախմբի և բազմաթիվ այլ պարտիական կազմակերպություններում։ Չէին լինի այդ կարգի թերություններ, եթե պարտիական կազմակերպությունները, քաղկոմ-շրջկոմների քաղլուսներն ու կաբինետները հենց կոմպլեկտավորումից հետո պլանավորված ու սիստեմատիկ աշխատանք տանեին քաղաքական ինքնակրթությամբ զբաղվող կոմունիստների հետ։

Պարտիայի մի շարք շրջկոմներ կոմունիստների քաղաքական ուսուցման հարցերին անդրադառնում են միայն ուսումնական տարվա սկզբին և վերջին։ Ավելին, պարտիայի շրջկոմների (Սիսիան, Կոտայք, Հոկտեմբերյան, Երևանի Ստալինյան, 26 կոմիսարների) ղեկավար աշխատողները հաճախակի լինելով պարտիական կազմակերպություններում, զբաղվում են տնտեսական-կազմակերպական հարցերով, շրջանցում են իդեոլոգիական-պրոպագանդիստական աշխատանքը։ Նրանք չեն լսում խմբակների ու սեմինարների պարապմունքները, համապատասխան օգնություն ցույց չեն տալիս ինքնուրույն ուսումնասիրողներին, պրոպագանդիստներին և պարտկազմակերպությունների քարտուղարներին։ Նրանք չեն հետաքրքրվում նաև կոմերիտական լուսավորության ցանցի աշխատանքով։ Այլ կերպ ինչո՞վ բացատրել, երբ առանձին կազմակերպություններում 20—50 կոմունիստներ և մեծ թվով կոմերիտականներ



դուրս են մնացել քաղաքական ուսուցումից, իսկ Երևանի էլեկտրալամպերի, մոլիտի, էլեկտրալուսավորման արմատուրայի, էլեկտրամեքենաշինական գործարանների, դեղատների վարչության պարտիական կազմակերպությունների խմբակներում հաճախակի բացակայում են ունկնդիրների 50—60 տոկոսից ավելին։ Եզակի չեն նաև այնպիսի դեպքեր, երբ ունկնդիրների չներկայանալու կամ անպատրաստ լինելու պատճառով պարապմունքները ձախողվում են։

Պարտիական լուսավորության սիստեմի կենտրոնական դեմքը պրոպագանդիստն է։ Նրա տեսական պատրաստականությունից և մեթոդական վարպետությունից է կախված ուսուցման բարձր մակարդակի ապահովումը։ Պրոպագանդիստական կադրերի ընտրության և դաստիարակության գործը միշտ եղել է պարտիական կազմակերպությունների աշխատանքի կարևորագույն օղակներից մեկը։ ՀԿՊ Կենտրոնական Կոմիտեն ինչպես անցյալ, այնպես էլ այս ուսումնական տարում կազմակերպեց պրոպագանդիստների վերապատրաստման դասընթացներ, որին մասնակցեց պարտիայի պատմության, քաղաքատնտեսության, փիլիսոփայության խմբակների 170 պրոպագանդիստ։ Պրոպագանդիստների հետ տարվող աշխատանքի հիմնական ձևը եղել և մնում են մշտական գործող սեմինարները։ Այդ սեմինարներն ավելի արդյունավետ են լինում այն ժամանակ, երբ դրանցում քննարկվում են տեսական և մեթոդական բնույթի դասախոսություններ ու զեկուցումներ, ընդհանրացվում և տարածվում է պրոպագանդիստական աշխատանքի լավագույն փորձը, վերլուծվում են խմբակների ու սեմինար պարապմունքների անցկացման ձևերն ու մեթոդները։ Բայց մի շարք շրջաններում պրոպագանդիստների սեմինարներում կարդացվում են միայն տեսական բնույթի դասախոսություններ։ Դիֆերենցված աշխատանք չի տարվում նաև կոմերիտական քաղլուսցանցի պրոպագանդիստների հետ։

Վերջերս Կամոյի և Իջևանի շրջկոմները պրոպագանդիստներին մեթոդական կոնկրետ օգնություն ցույց տալու նպատակով քաղլուսկաբինետներին կից ստեղծել են մեթոդական խորհուրդներ։ Այդ մեթոդխորհուրդներում ընդգրկված են ՍՄԿՊ պատմության, քաղաքատնտեսության, փիլիսոփայության, ՍՍՌՄ ներքին ու արտաքին քաղաքականության հարցերին լավատեղյակ փորձառու պրոպագանդիստներ։ Նրանք պլանավորված կարգով լինում են պարտիական կազմակերպություններում, լսում են քաղխմբակների ու սեմինարների պարապմունքները, իրենց արժեքավոր դիտողություններն են անում և մեթոդական խորհուրդներ տալիս պրոպագանդիստներին, ուսումնասիրում և տարածում են պրոպագանդիստական աշխատանքի ուսանելի փորձը։

Ներկայումս ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները հանրագումարի են բերում պարտիական լուսավորության սիստեմի ուսումնական տարվա արդյունքները, ամփոփում ու ընդհանրացնում են պրոպագանդիստական աշխատանքում գոյություն ունեցող դրական փորձը և միջոցառումներ նշում նոր ուսումնական տարին նախապատրաստելու համար։

Պարտիական կազմակերպությունները ամառային ամիսները պետք է օգտագործեն ՍՄԿՊ XXI համագումարում ընկ. Ն. Ս. Խրուշչովի զեկուցման մեջ առաջ քաշված տեսական ու գործնական խնդիրների վերաբերյալ թեորիական ու տնտեսական կոնֆերանսներ նախապատրաստելու և անցկացնելու համար։

Պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ էլ ավելի բարձրացնել պարտիական պրոպագանդայի գաղափարական մակարդակը, այն ամբողջապես ի սպաս դնել աշխատավորներին մարքսիզմ-լենինիզմի ոգով դաստիարակելու մեծ գործին։

Ջ. ԵՂԻԱԶԱՐՅԱՆ
Ա. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ

# ԼԻՈՎԻՆ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ՌԵԶԵՐՎՆԵՐԸ

Պարտիայի XXI համագումարի կողմից ընդունված ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թթ. յոթնամյա պլանի կենսագործումը պարտիական, սովետական, տնտեսական բոլոր կազմակերպություններից պահանջում է լիովին օգտագործել տնտեսության սոցիալիստական սիստեմի մեծագույն առավելությունները։

Կիրովականի շրջանի կոլտնտեսականները, սովխոզների բանվորներն ու գյուղատնտեսության մասնագետները ձեռնամուխ են եղել յոթնամյակի առաջին տարվա առաջադրանքները հաջողությամբ կենսագործելու, տնտեսության հետագա առաջընթացն ապահովելու գործին։

Պարտիան սովորեցնում է, որ տնտեսության հետագա զարգացման, նրա ուղիները պարզ ու որոշակի նշելու համար անհրաժեշտ է քննադատորեն վերլուծել աշխատանքի արդյունքները, բացահայտել թերությունները, վեր հանել առկա, բայց դեռևս չօգտագործված հնարավորություններն ու ռեզերվները և կազմակերպական լավագույն աշխատանքի միջոցով մոբիլիզացնել աշխատավորությանը՝ առաջադրանքների անթերի կատարումն ապահովելու համար։

Կիրովականի շրջանն իր տնտեսական ցուցանիշներով զգալիորեն ետ է մնում մեր ռեսպուբլիկայի մյուս շրջաններից. բավական է ասել, որ 100 հեկտար հողային տարածությունից մեզ մոտ ավելի քիչ գյուղատնտեսական մթերքներ են արտադրվում, քան ռեսպուբլիկայի միջինն է։ Վերջին տարիներին հացահատիկային կուլտուրաների մեկ հեկտարի բերքատվությունը չի անցնում 5—7, իսկ պտղատու այգիներինը՝ 20 ցենտներից. յուրաքանչյուր հեկտարից ստացվել է 60—75 ցենտներ կարտոֆիլի բերք, իսկ անասնաբուծական մթերքների արտադրությունը 100 հեկտար հողային տարածության դիմաց ներկայացնում է հետևյալ պատկերը՝

| | Միս ցենտ. (սպանդ. քաշով) | Կաթ ցենտ. | Բուրդ կգ. | Մեկ կովից ստացված կաթը կգ. |
|---|---|---|---|---|
| Հայկ. ՍՍՌ կոլտնտեսություններ | 28,4 | 235 | 235 | 1414 |
| Կիրովականի շրջանի կոլտնտեսություններ | 22,5 | 91 | 171 | 965 |

Շրջանում գյուղատնտեսական մթերքների և, մասնավորապես, անասնաբուծական մթերքների արտադրության այս ցածր մակարդակը բացատրվում է նրանով, որ կոլտնտեսություններում և սովխոզներում անբավարար են օգտագործվում գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվության բարձրացման հնարավորություններն ու ռեզերվները։



Կիրովականի շրջանի ետ մնալու պատճառներից մեկն էլ այն է, որ մինչև վերջերս էլ չէր լուծված շրջանի էկոնոմիկայի ճիշտ մասնագիտացման հարցը, կոլտնտեսություններն զբաղվում էին գյուղատնտեսական գրեթե բոլոր կուլտուրաների մշակությամբ։ Դրանում համոզվելու համար բավական է բերել կոլտնտեսությունների 1958 թվականի ցանքատարածությունների ստրուկտուրան։

| | | |
|---|---|---|
| Վարելահողեր . . . | 4700 | հեկտար |
| Այդ թվում՝ | | |
| Հացահատիկային կուլտուրաներ . | 2700 | հեկտար |
| Կարտոֆիլ . . . | 620 | » |
| Բանջարեղեն . . . | 200 | » |
| Եգիպտացորեն . . . | 179 | » |
| Պտղատու այգիներ . . | 430 | » |
| Բազմամյա և միամյա խոտեր . | 430 | » |
| Այլ կուլտուրաներ . . | 141 | » |

Ցանքատարածությունների նման ստրուկտուրան ցույց է տալիս, որ կոլտնտեսությունները հիմնականում մշակել են հացահատիկային կուլտուրաներ, չնայած որ Կիրովականի շրջանն իր բնակլիմայական պայմաններով առավել նպաստավոր է ոչ թե հացահատիկի, այլ անասնաբուծության զարգացման համար։ Ցանքատարածությունների ստրուկտուրան մի կողմից, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվության անցյալ տարվա արդյունքները մյուս կողմից, ցույց են տալիս, որ ճիշտ չի լուծվել շրջանի էկոնոմիկայի մասնագիտացման հարցը։

Շրջանի պարտիական կազմակերպության վերջին կոնֆերանսում խոր անալիզի ենթարկվեցին անցյալ տնտեսական տարվա արդյունքները և բազմակողմանիորեն քննվեցին շրջանի հետագա զարգացման հնարավորությունները. Հաշվի առնելով բնակլիմայական և մյուս անհրաժեշտ պայմանները, որոշվեց կոլտնտեսությունների էկոնոմիկային տալ որոշակի ուղղություն, որպեսզի հնարավոր լինի կարճ ժամանակամիջոցում հաղթահարել շրջանի ետ մնալը և տնտեսապես ու կազմակերպորեն ամրապնդել կոլտնտեսությունները։

Կիրովականի շրջանն ունի ավելի քան 20 հազար հեկտար ալպյան արոտավայրեր և մարգագետիններ. Նրա տնտեսության հիմնական ճյուղը, մեր կարծիքով, պետք է լինի անասնաբուծությունը, ըստ որում մսա-կաթնատու անասնաբուծությունը, խոզաբուծության և թռչնաբուծության առավել զարգացմամբ հանդերձ։

Բնակլիմայական պայմանները նպաստավոր են նաև պտղաբուծության, իսկ քաղաքամերձ կոլտնտեսություններում՝ բանջարաբուծության զարգացման համար։

Անասնաբուծությունը տնտեսության գլխավոր ճյուղ դարձնելու ուղղությամբ արդեն արված են առաջին քայլերը։ Անցյալ տարվա համեմատությամբ այս տարի կովերի թիվն ավելացել է մոտ 350 գլխով, մինչև տարվա վերջը կավելանա ևս 300 գլխով. աճ՝ 25 տոկոսով. Նախատեսվում է նույն չափով ավելացնել նաև ոչխարների, խոզերի և թռչունների գլխաքանակը։

Անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման գործում արդեն ձեռք են բերված շոշափելի արդյունքներ։ Այս տարվա անցած երեք ամիսներին կաթի արտադրության աճը շրջանի կոլտնտեսություններում և սովխոզներում, անցյալ տարվա նույն ժամանակի համեմատությամբ, կազմում է 161 տոկոս։ Այժմ Ժդանով, Դարպաս, Լենինապատ, Ֆիոլետով և մի շարք այլ

գյուղերի կոլտնտեսությունների անասնապահներն իրենց լավագույն աշխատանքի շնորհիվ երկու անգամ ավելի շատ կաթ են ստանում, քան անցյալ տարի։

Կիրովականի շրջանի գյուղատնտեսության աշխատողները ճիշտ եզրակացություն հանելով ՍՄԿՊ Կենտկոմի 1958 թվականի Դեկտեմբերյան պլենումի և ՍՄԿՊ XXI համագումարի որոշումներից, լուրջ միջոցառումներ են մշակել հատկապես մսի արտադրությունն ավելացնելու ուղղությամբ։ Նրանք լավ գիտեն, որ իրենց ամբողջ աշխատանքն, առաջին հերթին, չափվելու է մսի արտադրության գործում ձեռք բերած հաջողություններով։ Շրջանի կոլտնտեսությունների մի մասը լայն հնարավորություններ ունի հատկապես խոզաբուծության զարգացման համար։ Այդ հնարավորություններն արդեն օգտագործվում են, որի շնորհիվ 1959 թվականի առաջին եռամսյակում զգալիորեն ավելացել է մսի արտադրությունը։ Այժմ շրջանի Ֆիոլետով և Դեբետ գյուղերի կոլտնտեսություններում նախապատրաստական աշխատանքներ են տարվում լողացող թռչունների ֆերմաներ կազմակերպելու ուղղությամբ։ Տարվա վերջին այդ կոլտնտեսությունները կտան մոտ 100 ցենտներ թռչունի միս։

Անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման գործում ամենակարևորը կերի կայուն բազայի ստեղծումն է։ Այդ նպատակով արդեն փոխվել է ցանքատարածությունների ստրուկտուրան։ Կոլտնտեսությունները սեփական փորձով համոզվել են, որ եգիպտացորենը անասնաբուծական մթերքների ավելացման հիմնական աղբյուրն է, ուստի կոլտնտեսությունների արտադրական պլաններով նախատեսվում է ավելի քան երեք անգամ ավելացնել այդ ամենաարժեքավոր կուլտուրայի ցանքատարածությունը։ Զգալիորեն ավելացել են բազմամյա և միամյա խոտաբույսերի ցանքատարածությունները։ Այս տարի առաջին անգամ շրջանում զգալի տարածություններ են առանձնացվել սպիտակուցավոր այնպիսի կերի ցանքի համար, ինչպիսին է վիկա-վարսակի խառնուրդը։ Կոլտնտեսություններում մշակվում են նաև ճակնդեղ, դդում, կաղամբ և այլ կուլտուրաներ։ Շրջանի կոլտնտեսություններում և սովխոզներում լայն նախապատրաստական աշխատանք է տարվում բնական արոտավայրերի և խոտհարքների բերքատվության բարձրացման համար։

Կերի արտադրության ավելացման համար նախատեսված միջոցառումների կենսագործումը հնարավորություն կտա այս տարի շրջանի կոլտնտեսություններում և սովխոզներում կուտակել մոտ երկու անգամ ավելի շատ խոտ և հյութալի կեր, քան անցյալ տարի։

Հանրային անասնաբուծության բնագավառում եղած թերությունները ցույց են տալիս, որ Կիրովականի շրջանում դեռևս մեծ չափի է հասնում անասունների, մանավանդ մատղաշների անկումը, բարձր է մայրական կազմի ստերջությունը։ Այժմ շրջանի պարտիական և սովետական կազմակերպությունները գործնական քայլեր են անում կարճ ժամանակամիջոցում վերացնելու այդ թերությունները, բարելավելու անասունների խնամքը, ավելացնելու ցեղային անասունների գլխաքանակը, ամենուր արմատավորելու արհեստական սերմնավորումը, որոնք հնարավորություն կստեղծեն շրջանի կոլտնտեսություններում 60—70 տոկոսով ավելացնելու մսի և կաթի արտադրությունը։

Հանրային անասնաբուծության զարգացմանը խանգարում էր նաև այն, որ



որոշ կոլտնտեսություններում թույլ էին տրվել գյուղատնտեսական արտելի Կանոնադրության խախտումներ։ Այդ է պատճառը, որ մի շարք գյուղերում (Մեղրուտ, Լեռնապատ, Հալլավար) կոլտնտեսականները և բանվոր ծառայողներն ավելի շատ կով ու խոզ ունեին, քան հանրային տնտեսությունները։ Ավելին, Համզաչիմանում, ուր կազմակերպված է սովխոզ, կային այնպիսի տնտեսություններ, որոնք սովխոզի հետ ոչ մի առնչություն չունեին, սակայն պահում էին մեծ քանակությամբ խոշոր և մանր եղջերավոր անասուններ, իսկ դա հնարավորություն չէր տալիս զարգացնելու սովխոզի անասնաբուծությունը։ Շատ անասուններ պահող տնտեսությունների համար կոլտնտեսություններն ու սովխոզը դեռ չեն դարձել եկամտի հիմնական աղբյուր։

Վերջերս պարտիայի շրջանային կոմիտեի պլենումը հատուկ քննության առարկա դարձրեց գյուղատնտեսական արտելի Կանոնադրության այս և մյուս կարգի խախտումները. պլենումը խորհուրդ տվեց կոլտնտեսություններին՝ նրանց հետագա արագ զարգացումն ապահովելու նպատակով վերանայել գյուղատնտեսության արտելի Կանոնադրության որոշ կետերը։

Պարտիայի շրջանային կոմիտեի պլենումից հետո որոշ աշխատանք է կատարված թույլ տրված սխալներն ու խեղաթյուրումները վերացնելու ուղղությամբ։ Ամենից առաջ կոլտնտեսությունների ընդհանուր ժողովների որոշմամբ նվազեցված է կոլտնտեսականների անձնական օգտագործման անասունների՝ կովերի, ոչխարների, խոզերի գլխաքանակը, արոտավայրերից և խոտհարքներից օգտվելու նոր կարգ է սահմանված։

Գյուղատնտեսական արտելի Կանոնադրության ճշգրիտ կենսագործումը ապահովում է բոլոր կոլտնտեսականների ակտիվ մասնակցությունը հանրային աշխատանքներին։

Կիրովականի շրջանում համեմատաբար դժվար է գյուղատնտեսական աշխատատար պրոցեսների լայն մեքենայացման արմատավորումը։ Նման պայմաններում կոլտնտեսությունները և սովխոզներն անհրաժեշտ քանակությամբ աշխատող ձեռքերով ապահովելը գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվության բարձրացման կարևոր ռեզերվներից մեկն է։ Շրջանի պարտիական կազմակերպություններն արդեն ձեռնամուխ են եղել այդ կարևոր ռեզերվի օգտագործմանը և առաջին արդյունքները շոշափելի են Դարբասի, Եղեգնուտի, Վահագնի կոլտնտեսություններում։

Շրջանի կոլտնտեսությունների տնտեսական ու կազմակերպական ամրապնդման գործում դեռևս անբավարար է օգտագործվում այնպիսի կարևոր մի ռեզերվ, ինչպիսին է կոլտնտեսությունների ապրանքայնության բարձրացումը։ Որքան բարձր լինի հանրային տնտեսության ապրանքայնությունը, այնքան բարձր կլինի դրամական եկամուտը, այնքան ավելի լավ կլուծվի քաղաքային բնակչությանը գյուղատնտեսական մթերքներով ապահովելու խնդիրը։

Որոշ կոլտնտեսություններում պրակտիկա է դարձել պետական առաջադրանքները կատարելուց հետո ստացված գյուղատնտեսական ամբողջ մթերքը կամ նրա զգալի մասը աշխօրերին բաշխելը։ Պետական սահմանված առաջադրանքները կատարելուց հետո, անցյալ տարի կոլտնտեսություններում ստացված կաթնամթերքի 80—85 տոկոսը բաշխվել է աշխօրերին, իսկ կոլտնտեսա-

յին շուկաներում կամ պետությանը պլանից ավելի վաճառել են չնչին քանակությամբ մթերքներ։ Նպատակահարմար է, որ մթերքների ռեալիզացիայով զբաղվի ոչ թե կոլտնտեսականը, այլ կոլտնտեսությունը, որն ավելի լայն հնարավորություններ ունի դրա համար։

Դժվար չէ հասկանալ, որ կոլտնտեսությունների ցածր ապրանքայնությունն անհրաժեշտ պայմաններ չի ստեղծում կապիտալ ներդրումներն ավելացնելու, ընդլայնված վերարտադրությունը և գյուղատնտեսության ինտենսիվությունը, միջկոլտնտեսային օբյեկտների՝ արտադրական շենքերի, կառուցվածքների, կուլտուրական և կենցաղային օբյեկտների շինարարությունն ապահովելու համար։ Այդ նշանակում է, որ ցածր ապրանքայնությունն անհրաժեշտ պայմաններ չի ստեղծում սոցիալիստական արտադրական հարաբերությունների արագ զարգացման համար։

Պարտիայի շրջանային կոմիտեն իր նիստերում, խորհրդակցություններում, սեմինար պարապմունքներում այս հարցերի վրա է բևեռում պարտիական կազմակերպությունների և տնտեսական ղեկավարների ուշադրությունը՝ ապրանքայնությունը բարձրացնելու ուղղությամբ։ Բավական է հիշել, որ եթե 1958 թվականի առաջին եռամսյակում շրջանի կոլտնտեսությունները պետությանը վաճառել են 327 ցենտներ միս, 1076 ցենտներ կաթ, ապա այս տարի անասնաբուծական մթերքների վաճառքը պետությանը ավելացել է մսինը՝ մոտ 80 տոկոսով, կաթինը՝ 165 տոկոսով։ Կոլտնտեսությունները ստացել են ավելի քան 360 հազար ռուբլու լրացուցիչ դրամական եկամուտ։

Գյուղատնտեսական մթերքների արտադրության հետագա ավելացման հիմքը աշխատանքի արտադրողականության զգալի բարձրացումը և արտադրանքի մեկ միավորի վրա աշխատանքի ու նյութական միջոցների ծախսերի կրճատումն է։ Աշխատանքի արտադրողականության բարձրացումը հասարակական հարստության և աշխատավորության բարեկեցության բարձրացման որոշակի գործոն է։ Մեզ մոտ դեռևս լուրջ աշխատանք չի տարվում այդ ուղղությամբ։ Անցյալ տնտեսական տարվա արդյունքները ցույց են տալիս, որ շրջանի կոլտնտեսություններում և սովխոզներում խելացիորեն չեն օգտագործվել գյուղատնտեսական արտադրանքի ինքնարժեքի իջեցման հնարավորությունները։ Առանձին կոլտնտեսություններում կարտոֆիլի մեկ ցենտների ինքնարժեքը կազմել է 136 ռուբլի, խոզի մսինը՝ 1300 ռուբլուց մինչև 3000 ռուբլի։ Դեռևս կան տնտեսության այնպիսի ճյուղեր, որոնց վրա աշխատանքային և նյութական հսկայական ծախսումներ է կատարվում, բայց եկամուտ կամ չի ստացվում, կամ շատ չնչին է լինում։ Ֆիոլետով և Գյոզալդարա գյուղերի կոլտնտեսությունները մեղվաբուծության վրա ծախսել են ավելի քան 20000 ռուբլի, մինչդեռ այդ ճյուղից ոչ մի եկամուտ չեն ստացել։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման և ինքնարժեքի իջեցման կարևոր ուղիներից մեկը դաշտավարության և անասնաբուծության աշխատատար պրոցեսների մեքենայացումն է։

Այս տարի շրջանի կոլտնտեսությունները և սովխոզները լայն նախապատրաստական աշխատանք են տանում շարահերկ կուլտուրաների՝ եգիպտացորենի, կարտոֆիլի մշակության աշխատանքների զգալի մասը մեքենայացնելու համար։ Գոյություն ունեցող գյուղատնտեսական մեքենաներն ու մեխանիզմների մի մասը իրենց կառուցվածքով, ծավալով չեն համապատասխանում լեռնային շրջանների պահանջներին. անհրաժեշտ է, որ գիտա-հետազոտական



հիմնարկները, նախագծող կազմակերպությունները և ռեսպուբլիկայի Գյուղատնտեսության մինիստրությունը ինչպես հարկն է ձեռնամուխ լինեն լեռնային պայմաններին համապատասխան մեքենաներ ու մեխանիզմներ ստեղծելու գործին։

Յոթնամյա պլանի խնդիրների հաջող կենսագործումը պահանջում է տընտեսապես թույլ կոլտնտեսությունները հասցնել առաջավորների մակարդակին։ Այդ նպատակով կոլտնտեսությունների վերջին հաշվետու-ընտրական ժողովներում զգալի աշխատանք կատարվեց թույլ կոլտնտեսությունները բանիմաց, կազմակերպական անհրաժեշտ ունակությունների տեր ղեկավար կադրերով ամրապնդելու ուղղությամբ։

Շրջանի գյուղատնտեսության առաջավորների վերջերս կայացած հավաքը պարտավորեցրեց ժամկետից շուտ, հինգ տարում կատարել յոթնամյա պլանի խնդիրները։ Հավաքի մասնակիցները պարտավորվեցին և կոչ արեցին շրջանի բոլոր կոլտնտեսություններին, գյուղատնտեսության մասնագետներին և մեխանիզատորներին՝ 1963 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, կաթի համախառն արտադրությունն ավելացնել ավելի քան 4 անգամ, 2 անգամ ավելացնել մսի, բրդի արտադրությունը, զգալիորեն ավելացնել անասունների, մասնավորապես կովերի գլխաքանակը, բարձրացնել գյուղատնտեսական կուլտուրաների և պտղատու այգիների բերքատվությունը։ Կոլտնտեսականները, սովխոզների բանվոր-ծառայողները, գյուղատնտեսության մասնագետները համոզված են, որ Կիրովականի շրջանն ունի բոլոր պայմանները՝ կարճ ժամանակամիջոցում հաղթահարելու տնտեսական ցածր մակարդակը և դասվելու ռեսպուբլիկայի առաջավոր շրջանների շարքին։

ՕՆ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ
ՀԿՊ Կիրովականի շրջկոմի քարտուղար

## ՍՄԿՊ XXI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՆՅՈՒԹԵՐԻ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆԸ ԻՋԵՎԱՆՈՒՄ

Կոմունիստներին, կոմերիտականներին, մեր կադրերին մարքսիզմ-լենինիզմի վեհ գաղափարներով զինելու գործում անգնահատելի դեր է խաղում պարտիական լուսավորության աշխատանքի ճիշտ ու հմուտ կազմակերպումը։ ՀԿՊ Իջևանի կազմակերպությունը վաղօրոք անհրաժեշտ նախապատրաստական աշխատանք կատարելուց և ունկնդիրների կոմպլեկտավորումն ավարտելուց հետո ժամանակին և հաջող սկսեց պարտիական լուսավորության ցանցի ուսումնական տարին։ Գործող 65 խմբակները, քաղդպրոցները, արդյունաբերության և գյուղատնտեսության կոնկրետ էկոնոմիկայի սեմինարներն ավարտեցին ՍՄԿՊ XXI համագումարի նյութերի ուսումնասիրումը։ Պարտիական լուսավորության նշված օղակներում սովորել են 902 կոմունիստ, 138 կոմերիտական և 216 անպարտիական ակտիվիստ։ Մարքսիզմ-լենինիզմի հիմունքները, ՍՄԿՊ XXI համագումարի նյութերն ինքնուրույն ձևով ուսումնասիրել են 538 մարդ։

Փորձը ցույց տվեց, որ պարտիական ուսուցման գաղափարապես բարձր հագեցվածությունը, նրա հաջողությունն առաջին հերթին պայմանավորված է պրոպագանդիստների ճիշտ ընտրությամբ, գիտելիքների խոր իմացու-

թյամբ, գաղափարական ու կազմակերպական աշխատանքի հմտությամբ։ Իջևանի շրջանի պրոպագանդիստներից ու կոնսուլտանտներից 88-ը ունի բարձրագույն ու թերի բարձրագույն կրթություն, որոնց մեծ մասը ունի պրոպագանդիստական աշխատանքի երկար տարիների փորձ։ Պրոպագանդիստական աշխատանք են կատարում նաև պարտիայի շրջանային կոմիտեի և շրջսովետի գործկոմի գրեթե բոլոր ղեկավար աշխատողները։

Առանձնապես ուշագրավ է Ենոքավան գյուղի կոմունիստների ու կոմերիտականների քաղաքական ուսուցման աշխատանքի փորձը։ Այստեղ պրոպագանդիստ Հ. Մինասյանն արդեն երրորդ տարին է, ինչ ղեկավարում է պարտիայի պատմությունն ուսումնասիրող խմբակը, որի պարապմունքներն անցնում են աշխույժ ու բովանդակալից։ Սովորաբար, մինչև բուն նյութին անցնելը, 5—10 րոպեում նա ունկնդիրներին հաղորդում է այն կարևոր իրադարձությունները, որ վերջին շաբաթում տեղի են ունեցել մեր երկրում և նրա սահմաններից դուրս։ Այնուհետև հարցերի միջոցով պարզում է, թե ո՞վ և ինչպե՞ս է յուրացրել հանձնարարված նյութը. մեկ երկու ունկնդիր պատմում են անցածը։ Պրոպագանդիստը հակիրճ ամփոփում է այդ թեման և ապա դյուրըմբռնելի ձևով շարադրում նոր նյութը։ Պարապմունքների ժամանակ նա հաճախ է օգտագործում քարտեզ, ալբոմներ ու այլ դիդակտիկ նյութեր։ Ամեն հարմար առիթով ընկ. Հ. Մինասյանն ունկնդիրների ուշադրությունը կենտրոնացնում է կոլտնտեսության առջև ծառացած խնդիրների հաջող լուծման վրա։ Կոլտնտեսության նախագահ Ս. Ջիբախչյանը, կաթնա-անասնապահական ֆերմայի վարիչ Հ. Համբարձումյանը, բրիգադավարներ Հ. Գաբրիելյանը, Գ. Փաշինյանը, կթվորուհի Վ. Բադալյանը և ուրիշներ, որոնք ակտիվ կերպով մասնակցում են պարապմունքներին, հաճախ խորհրդածում և խելացի առաջարկներ են անում յոթնամյակում կոլտնտեսության արտադրությունը բարձրացնելու, եղած ռեզերվները լրիվին օգտագործելու մասին։ Եվ դա հասկանալի է։ Կոմունիստների քաղաքական դաստիարակությունը ինքնանպատակ չէ։ Ամրապնդելով անցյալ տարվա հաջողությունները, Ենոքավանի կոլտնտեսությունը պայքարում է այս տարի 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրելու 76,5 ցենտներ միս, 300 ցենտներ կաթ, 375 կիլոգրամ բուրդ և 21.500 հատ ձու։ Կոլտնտեսությունն արդեն գերակատարել է ընթացիկ տարվա անասնաբուծական մթերքների արտադրության անցած 5 ամսվա առաջադրանքը։

Պրոպագանդիստներին տեսական ու մեթոդական անհրաժեշտ օգնություն ցույց տալու համար պարբերաբար հրավիրվում էին պրոպագանդիստների ու կոնսուլտանտների սեմինարներ. տեսական, մեթոդական զեկուցումների հետ մեկտեղ այնտեղ լսվել են պրոպագանդիստ Հ. Խեմչյանի, Հ. Առաքելյանի զեկուցումներն իրենց աշխատանքի փորձի մասին։

Ուսումնական տարվա սկզբից շրջկոմը կազմակերպել է մեթոդխորհուրդ։ Մեթոդխորհրդի կազմում են՝ պարտիայի շրջկոմի քարտուղարը, պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչը, պարտիական գրադարանի վարիչը, շրջանային թերթի խմբագիրը, ԼԿԵՄ շրջկոմի քարտուղարը և երկու փորձված պրոպագանդիստներ։ Անցած ուսումնական տարում մեթոդխորհուրդը լսել է շրջպարտկոմի՝ պարտիայի պատմությունն ուսումնասիրող խմբակի, Աչաջրի՝ գյուղատնտեսության էկոնոմիկան ուսումնասիրող սեմինարի, ընթա-



ցիկ քաղաքականության հարցերն ուսումնասիրող խմբակի և Քաղդպրոցի պարապմունքները։

Գյուղատնտեսության էկոնոմիկան ուսումնասիրող սեմինարի պարապմունքի թեման էր՝ «Աշխատանքի արտադրողականությունը գյուղատնտեսության մեջ և նրա բարձրացման ուղիները»։ Ունկնդիրներից շատերը լավ էին յուրացրել թեման, այն կոնսպեկտավորել էին խնամքով, բացի ձեռնարկից օգտվել էին նաև Լենինի աշխատություններից։ Ահա թե ինչու նրանք պրոպագանդիստի հարցերին պատասխանում էին ճիշտ, կարողանում էին տեսական ընդհանրացումներ կատարել։ Ունկնդիր Ս. Աթաբեկյանը աշխատանքի արտադրողականության մասին խոսելիս նշեց, որ Լենինը աշխատանքի արտադրողականության բարձրացումը համարել է ամենագլխավորը կոմունիզմի կառուցման գործում։ Ունկնդիր Մ. Աթանեսյանը լավ պարզաբանեց գյուղատնտեսության մեջ աշխատանքի արտադրողականությունը որոշելու ցուցանիշները և մեթոդները։ Սակայն պարապմունքն ուներ նաև թերություններ. օրինակ, լավ չբացատրվեցին աշխատանքի մեկ միավորի վրա կատարվող ծախսերի իջեցման ուղիները։

Հետաքրքրական անցավ ընթացիկ քաղաքականության հարցերն ուսումնասիրող խմբակի այն պարապմունքը, որի թեման էր «Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակը»։ Պրոպագանդիստ Ա. Օհանյանը աշխատում էր ակտիվ զրույցի մեթոդով այնպես վարել պարապմունքը, որ բոլոր ունկնդիրները մասնակցեն նյութի քննարկմանը։

Քաղդպրոցի պարապմունքներում դրականն այն է, որ պրոպագանդիստ Ե. Գասպարյանը բացի նոր թեմայից, ունկնդիրներին հաղորդում է նաև վերջին շաբաթում մեր երկրում տեղի ունեցած նորությունները։ Սակայն անցած նյութը պրոպագանդիստը հարցրեց միայն երկու հոգու և անցավ նոր նյութի հաղորդմանը։ Ընկ. Գասպարյանին չհաջողվեց նոր նյութը հետաքրքրական և բովանդակալից հաղորդել։

Այդ պարապմունքները լսելուց հետո մեթոդխորհուրդը գործարար ձևով քննարկեց արդյունքները, ընդհանրացրեց նրանց դրական աշխատանքը, վեր հանեց թերությունները։ Մեր պարտիայի կերտող Վ. Ի. Լենինի աշխատանքի օրինակով ցույց տրվեց, թե որքան մեծ նշանակություն ունեն խոր համոզվածությունը, առարկան բազմակողմանիորեն գիտենալը, թեորիան կենդանի իրականության հետ շաղկապելու ունակությունը, պրոպագանդիստական ելույթներին հանգամանորեն նախապատրաստվելը, լսարանը նվաճելու կարողությունը։

ՍՄԿՊ XXI համագումարի նյութերի խոր ըմբռնման համար կարևոր նշանակություն ունեն որակյալ դասախոսությունների, զեկուցումների, ռեֆերատների, տեսական կոնֆերանսների, բանավոր ամսագրերի կազմակերպումն ու անցկացումը։ Իջևանի փայտամշակման գործարանի արդյունաբերության էկոնոմիկայի սեմինարներից մեկում, երբ պրոպագանդիստ ընկ. Ի. Մարգարյանը պատմում էր ներկա յոթնամյակում ՍՍՌՄ արդյունաբերության զարգացման մասին, ունկնդիրները մի շարք հարցեր ուղղեցին բնական գազի վերաբերյալ, մանավանդ, որ այս տարի Իջևանը ռեսպուբլիկայում առաջինն է ստանալու բնական գազ։ Այդ կապակցությամբ հունվարին կազմակերպվեց բանավոր ամսագիր՝ «Ուզում եմ ամեն ինչ իմանալ գազի մասին», որին մասնակցեց շուրջ 450 մարդ։ «Բնական գազը արդյունաբերության մեջ և կենցա-

ղում» թեմայով դասախոսություն կարդաց քիմիական գիտությունների դոկտոր-պրոֆեսոր Ա. Բաբայանը, «Ղարադաղ—Աղստաֆա—Երևան գազամուղը» հարցի շուրջը՝ գազամուղի շինարարության պետի տեղակալ ընկ. Սիլեր։

Արդեն երրորդ տարին է, ինչ գործում է գյուղատնտեսության աշխատողների շրջանային սեմինարը, որին մասնակցում են կոլտնտեսությունների նախագահներ, սովխոզների դիրեկտորներ, գյուղատնտեսության մասնագետներ, ֆերմաների վարիչներ, հաշվային աշխատողներ։

Վերջերս կազմակերպվեց նաև գիտա-արտադրական հետաքրքիր կոնֆերանս։ Կոնֆերանսում ներածական խոսք ասաց տնտեսագիտական գիտությունների թեկնածու Գ. Իսահակյանը, «Իջևանի շրջանի գյուղատնտեսության զարգացման հեռանկարները ներկա յոթնամյակում» թեմայով զեկուցեց Հայկական ՍՍՌ Պետպլանի գյուղբաժնի վարիչ Ռ. Մակարյանը, «Աշխատանքի արտադրողականությունը գյուղատնտեսության մեջ և նրա բարձրացման ուղիները» հարցի մասին զեկուցումով հանդես եկավ գյուղատնտեսական գիտությունների թեկնածու Ա. Երիցյանը, «Գյուղատնտեսական արտադրանքի ինքնարժեքը կոլտնտեսություններում և նրա իջեցման ուղիների մասին» զեկուցեցին գյուղատնտեսական գիտությունների թեկնածու Հ. Դալլաքյանը և դոցենտ Է. Գերասիմյանը, «Աշխատանքի վարձատրման պրոգրեսիվ սիստեմը կոլտնտեսություններում» հարցի շուրջ զեկուցեց գյուղատնտեսության էկոնոմիկայի ինստիտուտի կրտսեր գիտաշխատող Պ. Ամիրյանը։ Զեկուցումներից հետո տեղի ունեցավ մտքերի աշխույժ փոխանակություն։ Տրված բոլոր զեկուցումները, անշուշտ, շոշափեցին ակտուալ հարցեր, բերվեցին մի շարք օրինակներ Միության, ռեսպուբլիկայի, ինչպես նաև Իջևանի շրջանի Սարի գյուղի, Ենոքավանի և մյուս կոլտնտեսությունների փորձից։

Այդ բոլորը, իհարկե, կարևոր նշանակություն ունեն մեր կադրերի տնտեսագիտական զինվածության բարձրացման, կոլտնտեսությունների, սովխոզների աշխատանքը ավելի լավ կազմակերպելու համար։ Սակայն գիտա-արտադրական կոնֆերանսն ուներ նաև որոշ թերություններ։ Պետպլանի գյուղբաժնի վարիչ ընկ. Ռ. Մակարյանը, ինչպես երևաց նրա զեկուցումից, կտրված է կյանքից, նա սխալ թվերով մեկնաբանեց Իջևանի շրջանի գյուղատնտեսության յոթնամյակի պլանային առաջադրանքները։

Պրոպագանդիստների սեմինարում տրվել է մեթոդական զեկուցում՝ պարտիայի XXI համագումարի նյութերի ուսումնասիրությունը և Իջևանի շրջանը 1959—1965 թվականներին թեմայով։ Շրջկոմի պարտիական գրադարանի նախաձեռնությամբ շրջկենտրոնում կազմակերպվել է տեսական կոնֆերանս հետևյալ հարցերի շուրջ. «Յոթնամյա պլանի գլխավոր խնդիրները», «Յոթնամյա պլանի միջազգային նշանակությունը», «Կոմունիստական շինարարության նոր էտապը և մարքս-լենինյան տեսության մի քանի հարցեր»։ Կոնֆերանսն անցավ հետաքրքիր և աշխույժ։

ՍՄԿՊ XXI համագումարի նյութերի շուրջ կարևոր զեկուցումներ ու դասախոսություններ են կազմակերպվում նաև շրջանի մյուս գյուղերում։ Օրինակ, Սևքարում, Աչաջրում, Խաշթառակում և Իջևանի անտառային արդյունաբերության տնտեսությունում շրջկոմի դասախոսների ուժերով զեկուցումներ են կազմակերպվել «Յոթնամյակի գլխավոր խնդիրները», Թալայում, Վերին Աղդան գյուղերում՝ «ՍՄԿՊ XXI համագումարի նյութերը մեծ ավանդ են մարքսիզմ-լենինիզմի գանձարանում» և այլ թեմաներով։



«Յոթնամյա պլանի կատարումը,—ինչպես նշված է համագումարի բանաձևում,— կպահանջի պարտիայի գաղափարական-քաղաքական և կազմակերպական ամբողջ աշխատանքի մակարդակի հետագա բարձրացում, սովետական ժողովրդի ստեղծագործական ուժերի ակտիվ մոբիլիզացում։ Անհրաժեշտ է բոլոր աշխատավորների գիտակցությանը հասցնել պլանի առաջադրանքները, յուրաքանչյուր կոլեկտիվի ջանքերը կազմակերպել և ուղղել դրանց կատարման նպատակին։ Վճռաբար արմատախիլ անել, հաղթահարել աշխատանքում հանդիպող դժվարությունները»։

Անհրաժեշտ է, որ մեր պարտիական պրոպագանդան կրի մարտական բնույթ, լինի մոբիլիզացնող ու կոնկրետ, սերտորեն կապված լինի յոթնամյա պլանի խնդիրների լուծման համար աշխատավորների մղած անմիջական պայքարի հետ։

Ավարտելով պարտիական լուսավորության տարին, պետք է ավելի ուժեղացնել դասախոսական պրոպագանդան և քաղաքական-դաստիարակչական աշխատանքի բոլոր միջոցները գործի դնել՝ աշխատավորներին մոբիլիզացնելու և հաջողությամբ կատարելու յոթնամյակի խնդիրները։

Ս. ՃԱՂԱՐՅԱՆ
ՀԿՊ Իջևանի շրջկոմի քարտուղար

## ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ՏՆԵՐՈՒՄ

Երևան քաղաքի Լենինյան շրջանում են տեղավորված Նոր-Արեշի և Սարի-Թաղի կուլտուրայի տները, որոնք սպասարկում են մոտ 60 հազար բնակչի, որոնց գերակշռող մասը հայրենադարձ հայեր են։

Կուլտուրայի տները մեծ աշխատանք են ծավալել աշխատավորների կոմունիստական դաստիարակության, պարտիայի և կառավարության որոշումները մասսաների մեջ պրոպագանդելու ուղղությամբ։ Այդ գործում նրանց մեծ օգնություն է ցույց տալիս պարտիայի Լենինյան շրջկոմը։

Նոր-Արեշի կուլտուրայի տունը (դիրեկտոր Մ. Ջիլախյան) իր լավագույն աշխատանքի շնորհիվ դարձել է բնակչության սիրելի վայրը։ Այնտեղ կազմակերպվող ամենօրյա հետաքրքիր և բազմազան միջոցառումներով պրոպագանդվում են Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության որոշումները, վառ օրինակներով ցույց է տրվում մեր Հայրենիքի աննախընթաց վերելքը ժողովրդական տնտեսության զարգացման բոլոր բնագավառներում։ Միայն 1958 թվականին շրջանի և քաղաքի լավագույն ուժերի միջոցով Նոր-Արեշի կուլտուրայի տանը տարբեր հարցերի մասին կազմակերպվել է 63 դասախոսություն, զեկուցում և զրույց, որոնց մասնակցել է 7300 մարդ։

Իսկ այս տարվա անցած չորս ամսում կազմակերպվել է 15 դասախոսություն, որից 8-ը նվիրված է եղել ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարի նյութերի մասսայականացմանը։ Նոր-Արեշի կուլտուրայի տանը տրադիցիա է դարձել հանդիպումների կազմակերպումը։ Այնտեղ սիստեմատիկ կերպով հանդիպումներ են կազմակերպվում արտադրության առաջավորների, կուլտուրայի և արվեստի գործիչների, սպորտի վարպետների հետ. այդ երեկոներին Նոր-Արեշի բնակիչները մեծ սիրով են հանդիպել ՍՍՌՄ ժողովրդական դերասան-

ներ՝ Վ. Փափազյանի, Հ. Ներսիսյանի, Հայկական ՍՍՌ ժողովրդական դերասաններ՝ Ա. Ավետիսյանի, Ն. Հովհաննիսյանի, հին բոլշևիկ Գերասիմ Մելիք-Գրիգորյանի, շեֆ զորամասի մարտիկների, շրջանի առաջավոր բանվորների, ՍՍՌՄ, Հայկական ՍՍՌ և տեղական Սովետների դեպուտատների և շատ ուրիշների հետ:

Հիշատակության արժանի է Վարդաշենի և Նոր-Արեշի բնակչության հանդիպումը Երևանի քաղաքային Սովետի գործկոմի նախագահ Գ. Փահլևանյանի, Հայկական ՍՍՌ առողջապահության մինիստր Ա. Խրիմլյանի և ուրիշների հետ: Հանդիպման ժամանակ ընկ. Փահլևանյանը պատմեց քաղաքի Լենինյան շրջանի և հատկապես Վարդաշենի ու Նոր-Արեշի զարգացման հեռանկարների մասին: Մանրամասն խոսելով Նոր-Արեշում և Վարդաշենում բուժ. աշխատանքների բարելավման մասին, ընկ. Խրիմլյանն ասաց, որ կառուցվում են մանկական հիվանդանոց, ծննդատուն, 60 մահճակալանոց մանկամսուր, արդեն շահագործման է հանձնվել երկաթգծի հիվանդանոցը՝ Մուրացանի փողոցում:

Հայկական ՍՍՌ կուլտուրայի մինիստրի տեղակալ Հ. Աղասարյանը պատմեց Հայաստանում կուլտուրայի տների, հատկապես Նոր-Արեշի կուլտուրայի տան աշխատանքների մասին և խոստացավ կուլտուրայի տունը ապահովել գեղարվեստական և գիտահանրամատչելի հետաքրքիր կինոնկարներով: Երևանի քաղաքային Սովետի առևտրի վարչության պետ Գ. Փանոսյանը պատմեց, որ միայն 1958 թվականին Վարդաշենում և Նոր-Արեշում կառուցված և շահագործման է հանձնված երեք մասնագիտացված խանութ, 6 կրպակ, բանջարեղենի վաճառքի մի քանի կետեր, կառուցվում է և մոտ ժամանակներս շահագործման կհանձնվի Արեշի ունիվերմագը:

Այդ երեկոյին ներկա էր նաև ՀԿՊ Երևանի քաղաքային կոմիտեի քարտուղար Հովհ. Բաղդասարյանը: Խոսելով քաղաքի և հատկապես Նոր-Արեշի ու Վարդաշենի բարեկարգման աշխատանքների մասին, նա ասաց, որ Երևանի քաղաքային կոմիտեն ձեռք կառնի բոլոր միջոցները բնակչության պահանջները հնարավորության սահմաններում կատարելու համար: Հետո նա նշեց, որ այդ գործում շատ անելիքներ ունեն նաև տեղի բնակիչները, անհրաժեշտ է նրանց ակտիվ մասնակցությունը ինչպես հակահասարակական երևույթների դեմ պայքարելու, այնպես էլ ավանների բարեկարգման, տրամվայի գծերի անցկացման և այլ աշխատանքներում: Երեկոյի վերջում ելույթ ունեցան կուլտուրայի տան ինքնագործ խմբերը, ցուցադրվեց կինոնկար:

Այսպիսի հանդիպումները ակտիվացրել են բնակչությանը, նրանց ուժերը մոբիլիզացրել՝ Նոր-Արեշի և Վարդաշենի բարեկարգման, առողջապահության և առևտրի օբյեկտների կառուցման գործում: Նոր-Արեշի և Վարդաշենի տասնյակ հազարավոր բնակիչներ մասնակցել են շաբաթօրյակների և օգնել տրամվայի գծի անցկացման աշխատանքներին, որի շնորհիվ Հայաստանում Սովետական կարգերի հաստատման 38-րդ տարեդարձի օրը երթուղի դուրս եկավ դեպի Նոր-Արեշ գնացող տրամվայի առաջին գնացքը:

Կուլտուրայի տունը կազմակերպում է նաև բանավոր ամսագրի երեկոներ: Անցյալ տարի տեղի է ունեցել 6 երեկո, որոնց մասնակցել է 1200 մարդ, իսկ 1959 թ. անցած ամիսների ընթացքում՝ 3 երեկո, որոնց մասնակցել է 650 մարդ: Այդ երեկոներին ներկա են լինում շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների առաջավորներ, նորարարներ, քաղաքի և ռեսպուբլիկայի ղեկավար աշխատողներ:



Բանավոր ամսագրի երեկոներից մեկում բնակիչների համար զեկուցում տրվեց միջազգային դրության մասին, որից հետո Երևանի շոգեքարշային դեպոյի ավագ մեքենավար Ա. Ամիրջանյանը մանրամասն պատմեց իր աշխատանքի մասին:

Երեկոյի մասնակիցները հետաքրքրությամբ լսեցին աշխատավորների դեպուտատների Երևանի քաղաքային Սովետի գործադիր կոմիտեի կուլտուրայի բաժնի վարիչ Ա. Ասատրյանի զրույցը՝ «Երևան քաղաքի զարգացման 15-ամյա պլանի և Լենինյան շրջանի, հատկապես, Նոր-Արեշի և Վարդաշենի զարգացման հեռանկարների մասին»:

Կուլտուրայի տանը կազմակերպվել են նաև բարեկամության երեկոներ, որտեղ ելույթ են ունեցել Վրաստանի, Ադրբեջանի, Հայաստանի, Ալբանիայի ժողովրդական ռեսպուբլիկայի արվեստի գործիչներ, Ռոստովի կուլտուր-լուսավորական հիմնարկների շատ աշխատողներ: Այդպիսի երեկոները նպաստել են աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությանը:

Շատ ջերմ ու հետաքրքիր անցավ հանդիպումը Անդրկովկասյան մեր եղբայրական ռեսպուբլիկաների արվեստի գործիչների հետ: Տոնականորեն էր զարդարված կուլտուրայի տունը. ալ պաստառների վրա վրացերեն, ադրբեջաներեն ու հայերեն գրված էր՝ «Բարի գալուստ մեր թանկագին հյուրերին, վրաց և ադրբեջանական թատերական արվեստի ներկայացուցիչներին»: Կուլտուրայի տան դահլիճը լեփ-լեցուն էր Նոր-Արեշի և Վարդաշենի բնակիչներով: Այնտեղ էին ՍՍՌՄ ժողովրդական դերասանուհի Մարզիա Խանում Դավուդովան, Վրացական թատերական ընկերության նախագահի տեղակալ Սիկո Վաչնաձեն, Ադրբեջանական անվանի դրամատուրգ Մեջնունբեկովը, Հայկական ՍՍՌ վաստակավոր դերասան Ալի-Շախ-Սաբախլին և ուրիշներ:

Պատմական գիտությունների թեկնածու Կ. Շահնազարյանը խոսեց Անդրկովկասի ժողովուրդների դարավոր բարեկամության մասին, որից հետո պիոներական շեփորի և ծափերի տարափի տակ ծաղկեփնջերով ներս մտան Լենինյան շրջանի 43-րդ դպրոցի պիոներները: Նրանց սրտաբուխ ողջույնից հետո ելույթ ունեցան ՍՍՌՄ ժողովրդական դերասանուհի Մարզիա Խանում Դավուդովան, Վրացական ՍՍՌ արվեստի վաստակավոր գործիչ Վանո Գվինչիձեն, որոնք հաղորդեցին վրաց և ադրբեջանական ժողովուրդների ջերմ ողջույնները հայ ժողովրդին: Վերջում երեկոյի մասնակիցները դիտեցին կուլտուրայի տան ինքնագործ խմբերի ելույթները և կինոնկար:

Շրջանային կոմիտեի քաղլուսակաբինետում մարտի 6-ին հրավիրվեց շրջանի կուլտուրայի տների, ակումբների և գրադարանների աշխատողների շրջանային խորհրդակցություն, ուր լսվեց Նոր-Արեշի կուլտուրայի տան դիրեկտոր Մ. Զփլախյանի, № 1 մասսայական գրադարանի վարիչ Մ. Եղոյանի ինֆորմացիաները՝ ՍՄԿԿ XXI համագումարի նյութերի մասսայականացման մասին: Նոր-Արեշի կուլտուրայի տունը լուրջ ուշադրություն է դարձնում ցուցադրական ագիտացիայի կազմակերպմանը: Լոզունգների, պլակատների, դիագրամաների և ցուցադրական ագիտացիայի այլ միջոցներով բնակչությանն են հասցվում պարտիայի XXI համագումարի կողմից առաջադրված խնդիրները: Այստեղ Սովետական Միության և Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի մեծադիր քարտեզների վրա պատրաստված ՍՍՌՄ և ՀՍՍՌ յոթնամյակի կոնտրոլ թվերը մեր աչքի առջև գծագրում են Սովետական երկրի պայծառ հեռանկարները: Տարբեր թեմաներով կազմակերպված է 25 ցուցահանդես, որտեղ

ցուցադրված բազմաթիվ նկարները, դիագրամաններն ու պլակատները պատմում են արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության, արվեստի և այլ բնագավառներում մեր ձեռք բերած նվաճումների մասին։ Կուլտուրայի տունն ունի շրջանի արդյունաբերության առաջավորների տախտակ, ուր փակցված են առաջավոր բանվորների, կոմունիստական աշխատանքի բրիգադաների անդամների նկարները։ Ցուցադրական ագիտացիան կազմակերպելիս լուրջ ուշադրություն է հատկացվում ոչ միայն նրա արտաքին ձևավորմանը, այլ հատկապես այն բանին, որ բովանդակությունը հարուստ լինի, թեմաները բազմազան, օգտագործվող նյութերը ակտուալ։

Բնակչության կուլտուրական սպասարկման ձևերից մեկը էքսկուրսիաների կազմակերպումն է դեպի ռեսպուբլիկայի, քաղաքի տեսարժան վայրերը։ Այս տարի կազմակերպվել է 8 էքսկուրսիա, որին մասնակցել են 480 հայրենադարձ հայեր։ Կուլտուրայի տանը կից գործում են շախմատի, շաշկի, վոլեյբոլի, բոքսի և այլ սպորտ խմբակներ, ուր ընդգրկված են 50 պատանիներ ու աղջիկներ։ Լավ են գործում երգեցիկ, թատերական, երգի-պարի, ժողգործիքների, ակորդեոնի, կիթառի, դաշնամուրի, կար ու ձևի խմբակները։ Միայն 1959 թ. անցած չորս ամսում կուլտուրայի տան ինքնագործ խմբերի ուժերով բնակչության համար կազմակերպվել է 27 ներկայացում և համերգ։

Կուլտուրայի տունը սերտ կապ է հաստատել Նոր-Արեշի և Վարդաշենի դպրոցների հետ։ Պիոներ-դպրոցականների համար հաճախակի կազմակերպվում են կինո-դիտումներ, գրքերի քննարկումներ, ցերեկույթներ։ Կուլտուրայի տանը կից գործում է 14 ինքնագործ խմբակ, որոնց մասնակցում է 400 հոգի։ Նոր-Արեշի կուլտուրայի տունը ռեսպուբլիկայում առաջինն է, որ ՍՄԿՊ XXI համագումարի պատմական որոշումները կենսագործելու իմաստով երիտասարդության էսթետիկական դաստիարակության համար բաց է արել կուլտուրայի համալսարան և ժողովրդական թատրոն, ուր արդեն ընդգրկված է 80 երիտասարդ։ Համալսարանը նպատակ ունի աշխատավորների լայն շրջաններին, ուսանողներին և բարձր դասարանների աշակերտներին տալ գիտելիքների սիստեմ կերպարվեստի, թատերական և երաժշտական կրթության բնագավառում, ամեն կերպ օժանդակել սովետական մարդկանց ընդհանուր կուլտուրայի բարձրացմանը, նրանց գեղարվեստական ճաշակի զարգացմանը։

Սարի-Թաղի կուլտուրայի տունը (դիրեկտոր Մ. Վաթյան), որը շահագործման հանձնվեց անցյալ տարվա սեպտեմբեր ամսին, զգալի աշխատանք է կատարել Սարի-Թաղի բնակչության շրջանում։ Կուլտուրայի տանը կից գործում են տարբեր տեսակի 16 ինքնագործ խմբեր։ Դրանցից թատերական, երգի-պարի և ժողգործիքների ինքնագործ խմբերը ունեցել են 41 ելույթ։ Կուլտուրայի տունը շահագործման հանձնելուց հետո կարգավորվեց կինոյի հարցը, որը տարիներ շարունակ առաջ էին քաշում Սարի-Թաղի բնակիչները։ Լավ են գործում երկու կուլտուրայի տների մասսայական գրադարանները։ Լենինյան շրջանի № 3 մասսայական գրադարանը, որը տեղավորված է Նոր-Արեշի կուլտուրայի տանը, ունի 927 ընթերցող, որոնց մեծ մասը բանվոր ծառայողներ ու տնտեսուհիներ են. այնտեղ լավ է կազմակերպված գրքի պրոպագանդան, հաճախակի անց են կացվում գրական երեկոներ, ընթերցողների կոնֆերանսներ և հանդիպումներ հին բոլշևիկների և գրողների հետ։ Ընթերցողների կոնֆերանսներից մեկում գրող Հ. Ղուկասյանի «Վիպակները» գրքի մասին զեկուցումով հանդես եկավ 43-րդ դպրոցի ուսուցիչ Ս. Մանուկյանը. խնլացի



ելույթներ ունեցան ընթերցողներ՝ քաղշինի բանվոր Սուրեն Շիրինյանը, տնային տնտեսուհի Թագուհի Սահակյանը, ուսանողներ՝ Հարություն Ջանիկյանը, Ասատուր Տոբելչյանը և ուրիշներ։

Լավ է գործում Սարի-Թաղի կուլտուրայի տան գրադարանը (վարիչ Ա. Ավետիսյան), որն ունի 21667 կտոր գիրք։ Գրադարանը բնակչությանը լավագույն ձևով սպասարկելու, գրականությունը ազգաբնակչությանը մոտեցնելու համար ծայրամասերում բաց է արել 3 շրջիկ կետ։ Գրադարանն ունի 828 ընթերցող, որոնցից թոշակառու Միսակ Ցունդիկյանը, չնայած իր պատկառելի տարիքին, այս տարվա անցած ամիսներին ընթերցել է 22 գիրք, տնային տնտեսուհի Նինա Ջախվյան՝ 24 գիրք, էլեկտրատեխնիկական գործարանի բանվորուհի Անիվարդ Գրիգորյանը՝ 31 գիրք և այլն։ Այստեղ հաջող է կազմակերպված ՍՄԿՊ XXI համագումարի նյութերի պրոպագանդման գործը. այդ ուղղությամբ նրանք լավ են օգտագործում Լենինգրադի մասսայական գրադարանի դրական փորձը։ Այստեղ միայն այս տարվա անցած ամիսների ընթացքում կազմակերպված 29 դասախոսությունից, զեկուցումից և զրույցից 18-ը նվիրվել է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարի նյութերին։

Գրադարանում հաճախակի են կազմակերպվում հանդիպումներ գրողների հետ։ Հանդիպումներից մեկում ընթերցող Ռուբիկ Մնացականյանը զեկուցեց «Գ. Սևունցը և իր «Գերիներ» վեպը» թեմայով։ Ելույթ ունեցան ընթերցողներ՝ Արշալույս Պետրոսյանը, Շուշանիկ Արիստակեսյանը, Վազգեն Առաքելյանը։ Վերջում հանդես եկավ «Գերիներ» վեպի հեղինակը, որից հետո կազմակերպվեց կինոդիտում։

Մարտի 5-ին հանդիպում կազմակերպվեց գրող Նաիրի Զարյանի հետ, որտեղ «Պարոն Պետրոսը և իր նախարարները» վեպի մասին զեկուցումով հանդես եկավ ընթերցող Վազգեն Առաքելյանը։ Ելույթ ունեցան 47-րդ դպրոցի դասատու Ղազարոս Ալագյոզյանը, Ռուբիկ Մնացականյանը և ուրիշներ։

Լավագույն աշխատանքի համար 1958 թվականի վերջում Սարի-Թաղի մասսայական գրադարանին շնորհվել է «Ռեսպուբլիկայի լավագույն գրադարան»-ի կոչում, իսկ նրա վարիչին տրվել է ՍՍՌՄ Կուլտուրայի մինիստրության պատվոգիր։

ՍՄԿՊ XXI համագումարի նյութերի մասսայականացման, աշխատավորների կոմունիստական դաստիարակության ու նրանց կուլտուրական աճող պահանջների բավարարման գործում Լենինյան շրջանի կուլտուրայի տների կատարած աշխատանքը ուսանելի շատ կողմեր ունի, որից պետք է օրինակ վերցնեն մյուս կուլտուրայի տները։

Ա. ՋԱՔԱՐՅԱՆ

## ՔԱՂԼՈՒՍԿԱԲԻՆԵՏԻ ԱՇԽԱՏԱՆՔԸ

Մարքսիզմ-լենինիզմի տեսությունը ստեղծագործորեն ուսումնասիրելու, բոլոր կոմունիստների և կադրերի գաղափարական մակարդակը բարձրացնելու նպատակով պարտիայի Շահումյանի շրջկոմի քաղաքական լուսավորության կաբինետը կիրառում է աշխատանքի տարբեր ձևեր ու մեթոդներ։ Պարտիայի XXI համագումարի որոշումներն ու նյութերը լայնորեն պրոպագանդելու

*համար զգալի աշխատանք է կատարվում դասախոսությունների և զեկուցումների, տեսական սեմինարների և կոնֆերանսների, ռեֆերատների կազմակերպման ուղղությամբ։ Պարտիական և սովետական ակտիվի, ինտելիգենցիայի, մարքս-լենինյան թեորիան ինքնուրույն ուսումնասիրողների, պրոպագանդիստների և ագիտատորների համար քաղլուսկաբինետում անցած ուսումնական տարում կազմակերպվել է մոտ 200 դասախոսություն և զեկուցում։*

*ՍՄԿՊ XXI համագումարի պատմական որոշումները խոր պրոպագանդելու համար շրջկոմի քաղլուսկաբինետը, Քաղաքական և գիտական գիտելիքների տարածման ընկերության շրջանային բաժանմունքի հետ միասին կոլտնտեսությունների, ֆաբրիկաների, սովխոզների աշխատողների, դպրոցների ու գիտական հիմնարկների ինտելիգենցիայի համար կազմակերպել է շուրջ 110 դասախոսություն ու զեկուցում։*

*ՍՄԿՊ XXI համագումարի որոշումները աշխատավորներին բացատրելու և մասսայականացնելու գործում ագիտատորներին օգնելու նպատակով Լենինի անվան կոմբինատում, Շահումյանի անվան կոլտնտեսությունում, Սովետաշենում, Զանգիբասարի ենթաշրջանի կոլտնտեսություններում և այլ կազմակերպություններում քաղլուսկաբինետը անցկացրել է սկզբնական պարտկազմակերպությունների և ագիտկոլեկտիվների ղեկավարների, ագիտատորների սեմինար պարապմունքներ։ Առանձին սեմինար պարապմունք է անցկացված նաև պրոպագանդիստների համար, որտեղ մանրամասն պարզաբանվել է նրանց խնդիրները։ Շրջանի պարտիական կազմակերպություններում գործող 45 խմբակներում, քաղդպրոցներում և 24 տեսական սեմինարներում ունկնդիրներն ուսումնասիրում էին ՍՄԿՊ XXI համագումարի որոշումներն ու նյութերը, որոնք սերտորեն կապվում էին յուրաքանչյուր արդյունաբերական ձեռնարկության, կոլտնտեսության, սովխոզի զարգացման յոթնամյա պլանի խնդիրների հետ։*

*Փորձը ցույց է տվել, որ գաղափարական բարձր մակարդակով անցկացված տեսական կոնֆերանսները մեծ չափով նպաստում են կոմունիստների կողմից թեորիական հարցերը խորապես յուրացնելու, նրանց քաղաքական ակտիվությունը բարձրացնելու գործին։*

*Շրջկոմի քաղաքական լուսավորության կաբինետը վերջերս տեսական կոնֆերանս անցկացրեց Լենինի անվան մետաքսի կոմբինատում։ Տեսական կոնֆերանսը բարձր մակարդակով անցկացնելու համար կաբինետը մշակեց պլան, ընտրվեց հանձնարարվող գրականություն։ Պարտիայի անդամ Շ. Կարապետյանը խոսեց յոթնամյակում ծանր ինդուստրիայի առավելագույն զարգացման հարցի մասին։ Խոսելով քիմիական արդյունաբերության զարգացման մասին, նա նշեց, որ քիմիական արդյունաբերության գծով արհեստական թելի արտադրության աճը հնարավորություններ կտա ավելացնելու Լենինի անվան կոմբինատի արտադրանքը։ Կոմբինատի վերամշակման արտադրության վարպետ Պ. Զուքասիզյանը իր ելույթում խոսեց յոթնամյակում հանրային աշխատանքի արտադրողականության բարձրացման ուղիների և խնդիրների մասին։ Նա պատմեց, թե ինչ է արվում Լենինի անվան կոմբինատում աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու ուղղությամբ։*

*Պարտիայի անդամ Հ. Հարությունյանը տեսական կոնֆերանսում խոսեց ժողովրդական տնտեսության մեջ նյութական և աշխատանքային ծախսումնե-*



*րը կրճատելու և խնայողության ռեժիմ կիրառելու մասին։ Այդ հարցը նա կապեց յոթնամյակում Լենինի անվան կոմբինատի խնդիրների հետ։ Նա ասաց, որ 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, մետաքսեղենի թողարկումը կավելացվի մոտ 4,9 միլիոն մետրով. այդ ապահովելու համար մինչև 1963 թվականը կկառուցվի և շահագործման կհանձնվի նոր արտադրական կորպուս, որտեղ տեղադրվելու են 300 գործող նոր հաստոցներ։ Զգալի աշխատանք է կատարվելու բանվորների համար նոր բնակարաններ կառուցելու ուղղությամբ։*

*Տեսական կոնֆերանսն անցավ գաղափարական բարձր մակարդակով։*

*Քննարկվող թեմայի հիմնական հարցերը սերտորեն զուգակցվում էին կոմբինատի յոթնամյա պլանի խնդիրների հետ։ Կոմունիստները քաղաքական ակտիվությամբ ու գործիմացությամբ վերլուծում էին կոմբինատի արտադրության զարգացման և արտադրանքի որակի բարձրացման հարցերը։*

*Շրջկոմի քաղլուսկաբինետը տեսական կոնֆերանս է անցկացրել նաև գուլպայի ֆաբրիկայում՝ «Աշխատանքի արտադրողականության բարձրացումը և արտադրանքի ինքնարժեքի իջեցումը յոթնամյակի խնդիրների իրականացման վճռական պայմանն է» թեմայով։*

*Պարտշրջկոմի քաղլուսկաբինետը զգալի օգնություն է ցույց տալիս մարքս-լենինյան թեորիան ինքնուրույն ուսումնասիրողներին։ Կաբինետը լայնորեն օգտագործում է ռեֆերատների քննարկման մեթոդը։ Պարտիական լուսավորության ուսումնական տարում կաբինետը կազմակերպել է 6 ռեֆերատների քննարկում։ Լենինի անվան մետաքսի կոմբինատի աշխատող, պարտիայի անդամ Ս. Ղահրամանյանը կաբինետի օգնությամբ կազմեց ռեֆերատ՝ «Ժողովրդական ռևոլյուցիայի հաղթանակը և սոցիալիստական շինարարության հաջողությունները Չինաստանում» թեմայով։ Նա բարեխղճորեն ուսումնասիրել էր նյութը, որի շնորհիվ ռեֆերատի քննարկումն անցավ աշխույժ և հետաքրքրական։ Շատ հաջող անցավ նաև պարտանդամ Ա. Բդոյանի (շրջդատախազությունից) կազմած ռեֆերատի քննարկումը, որը նվիրված էր «ՍՄԿՊ XXI համագումարը սոցիալիզմից կոմունիզմին անցնելու օրինաչափությունների մասին» թեմային։ Ինքնուրույն ուսումնասիրողների ռեֆերատների քննարկումը տեղի է ունենում նաև սկզբնական պարտիական կազմակերպություններում։*

*Քաղլուսկաբինետին զգալի օգնություն են ցույց տալիս շրջկոմի հրահանգիչները։ Օրինակ, շրջկոմի հրահանգիչ Մ. Իսպիրյանը Երկրագործության ինստիտուտի ագրոքիմիայի լաբորատորիայի գիտաշխատողների հետ տեսական զրույցներ ու կոնսուլտացիաներ է անցկացնում պարտիայի XXI համագումարի որոշումների շուրջը, օգնում է նրանց գիտահետազոտական աշխատանքների թեմատիկ պլանը վերակառուցելու ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների պահանջներին համապատասխան։ Շրջկոմի հրահանգիչ Ս. Մկրտչյանը ղեկավարում է իրեն ամրացված Դավիթաշենի միջնակարգ դպրոցում կազմակերպված սեմինարը, որտեղ ուսուցիչները խորապես ուսումնասիրում են ՍՄԿՊ XXI համագումարի պատմական որոշումները։ Սեմինար պարապմունքները կազմակերպելիս Ս. Մկրտչյանը առանձնակի ուշադրություն է դարձնում դպրոցի առջև դրված կոնկրետ խնդիրներին և, հատկապես, աշակերտների աշխատանքային դաստիարակության հարցերին։*

*Աշխատավորների մեջ տարվող քաղաքական-մասսայական աշխատանքի*

կարևոր ձևերից մեկը հարց ու պատասխանի երեկոների անցկացումն է։ Շրջկոմի քաղլուսկաբինետը մի քանի անգամ անցկացրել է հարց ու պատասխանի երեկոներ, որտեղ աշխատավորներին հետաքրքրող քաղաքական, միջազգային դրության, շրջանի տնտեսական շինարարության, բնակչության կոմունալ-կենցաղային սպասարկման խնդիրների վերաբերյալ հարցերին պատասխանեցին ինչպես պարտիայի շրջկոմի, այնպես էլ աշխատավորների դեպուտատների շրջսովետի գործկոմի պատասխանատու աշխատողները։

Շահումյանի շրջանի քաղաքական լուսավորության կաբինետը, անշուշտ, որոշ հաջողություններ ունի իր աշխատանքում։ Սակայն մենք դրանով չենք բավարարվում և ձգտում ենք ավելի կատարելագործել կաբինետի աշխատանքը։

Հ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ
ՀԿՊ Երևանի Շահումյանի շրջկոմի
քաղլուսկաբինետի վարիչ

---



# ՔԻՄԻԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅՈՒՄ

ՅԱ. ԱԿՈՊՈՎ

Քիմիական արդյունաբերության զարգացումն արագացնելու մասին ՍՄԿՊ Կենտկոմի Մայիսյան պլենումի որոշումներում հատուկ ուշադրություն է դարձված սինթետիկ նյութերի և դրանցից պատրաստվող առարկաների արտադրության զարգացման վրա։ Այդ նույն հարցը համապատասխան կերպով արտացոլվել է ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959-1965 թվականների կոնտրոլ թվերում, որոնք հաստատվել են ՍՄԿՊ XXI համագումարի կողմից։

ՍՄԿՊ Կենտկոմի Մայիսյան պլենումի և ՍՄԿՊ XXI համագումարի որոշումները մեծ խնդիրներ են դնում Հայկական ՍՍՌ քիմիական արդյունաբերության աշխատողների առջև։

Հայկական ՍՍՌ քիմիական արդյունաբերությունը, որ ստեղծվել է Սովետական իշխանության տարիներին, հիմնականում զարգացել է օրգանական սինթեզի պրոդուկտների արտադրության ուղղությամբ՝ ռեսպուբլիկայի էժան հիդրոէներգիայի և տեղական հումքի օգտագործման բազայի վրա։ Դեռ նախապատերազմյան թվականներին Կիրովականի Ալ. Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատում և Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանում այդ համալիրը նպաստել է կազմակերպելու կալցիումի կարբիդի հզոր արտադրություն և դրա հիման վրա սինթետիկ կաուչուկի ու նրա մի շարք ածանցյալ պրոդուկտների, ինչպես նաև կալցիումի ցիանամիդի ու մյուս ցիանային միացությունների արտադրություն։

Հետագայում շահագործման են հանձնվել Երևանի պոլիվինիլացետատ գործարանը, Կիրովականի քիմիական կոմբինատի մի խումբ ցեխեր, Ալավերդու քիմիական գործարանը, ավտոդողերի, քրոմպիկի, լաքերի ու ներկերի, ռետինատեխնիկական առարկաների գործարանները։

Քիմիական ձեռնարկությունները տարեցտարի ավելացնում էին իրենց կարողությունները՝ յուրացնելով արտադրանքի նոր տեսակների թողարկումը և կատարելագործելով տեխնոլոգիական սխեմաները։ Ներկայումս երկրի ժողովրդական տնտեսության համար ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերությունը թողարկում է արտադրանքի այնպիսի կարևոր տեսակներ, ինչպես սինթետիկ կաուչուկ, կաուստիկ սոդա, կալցիումի կարբիդ, ազոտային ու ֆոսֆորային պարարտանյութեր, պղնձարջասպ, վինիլացետատ ու նրա ածանցյալներ, կալցիումի ցիանամիդ, ավտոմոբիլային ծածկաններ, յուղային ներկեր ու էմալներ, ռետինատեխնիկական առարկաներ և այլն։

Զգալի է քիմիական արդյունաբերության տեսակարար կշիռը ռեսպուբլիկայի ողջ արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալում։

ՍՄԿՊ Կենտկոմի Մայիսյան պլենումի, Հայաստանի կոմպարտիայի XX
համագումարի և ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների հիման վրա 1959-
1965 թթ. քիմիական արդյունաբերությունը կստանա բուռն զարգացում։ Եթե
վերջին տարիներում քիմիական արդյունաբերության աճը կասեցվում էր
սահմանափակ էներգոռեսուրսների պատճառով, ապա հետագայում նրա
զարգացումը կհիմնվի եղբայրական Ադրբեջանից ստացվող բնական գազի՝
որպես օրգանական սինթեզի համար ամենաէժան հումքի վրա։ Վերջերս,
հատկապես ՍՄԿՊ Կենտկոմի Մայիսյան պլենումից հետո, քիմիական գիտու-
թյան և տեխնիկայի նվաճումները ստեղծեցին քիմիական արդյունաբերության
մի շարք ճյուղեր, որոնք սինթետիկ նյութերի նոր տեսակներ են արտադրում։
Դրանք ոչ միայն բնական նյութերի լիարժեք փոխարինիչներ են հանդիսա-
նում, այլև շատ դեպքերում իրենց հատկություններով՝ ամրությամբ, թեթևու-
թյամբ, էժանությամբ շատ անգամով են գերազանցում բնության մեջ առաջ-
ներում հայտնի բոլոր նյութերին ու մետաղներին։

Ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության զարգացման ուղիները
ծրագրվում են արդեն ստեղծված ճյուղերի հետագա, դեռ ավելի մեծ զար-
գացման և քիմիական պրոդուկտների նոր տեսակների թողարկման գծով,
որոնք ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի կարիքները բավարա-
րելու համար պետք է դառնան անհրաժեշտ հումք՝ կիսապրոդուկտ։

Բնական գազի քիմիական վերամշակումը նախատեսվում է իրագործել
հետևյալ ուղղություններով.

ա) ացետիլենի ստացում բնական գազի ջերմօքսիդացման պիրոլիզի
մեթոդով, որը թույլ կտա առնվազն երկու անգամ իջեցնել գազից ստաց-
ված ացետիլենի ինքնարժեքը՝ կարբիդի մեթոդի համեմատությամբ։

բ) ացետալդեհիդից քացախաթթվի արտադրության կազմակերպում
բնական գազից ստացված ացետիլենի բազայի վրա, էթիլային սպիրտից
ացետալդեհիդի արտադրության տնտեսապես ոչ ձեռնտու մեթոդի փոխա-
րեն։

Գործող քիմիական ձեռնարկություններում բնական գազից նախատես-
վում է ացետիլենի ստացում, այդ թվում նաև պոլիքլորվինիլային խեժերի
արտադրությունը կազմակերպելու համար։ Այդ խեժերը կօգտագործվեն թա-
ղանթների պատրաստման համար, որոնք կիրառվում են լինոլեումի, արհես-
տական կաշվի, սիֆոնների, սննդամթերքների փաթաթանյութերի, շինարա-
րական-դրվագման նյութերի, գույնզգույն պարկետների, սանիտարա-տեխնի-
կական սարքավորման և գալանտերեայի տարբեր առարկաների արտադրու-
թյան մեջ։

Կաբելային արդյունաբերության մեջ պոլիքլորվինիլային խեժերի՝ որպես
մեկուսիչ նյութերի կիրառում թույլ է տալիս միաժամանակ փոխարինել կա-
պարը, մանվածքը և կաուչուկը, ընդ որում բարելավվում են մեկուսիչ հատկու-
թյունները և պակասում է հաղորդագծի քաշը։

Բավական է ասել, որ կաբելների արտադրության մեջ պոլիքլորվինիլա-
յին խեժի մեկ տոննան փոխարինում է 4 տոննա կապարին։ Դրա հետ միասին,
ինչպես վերևում նշվել է, բնական գազից ստացվող ացետիլենի բազայի վրա
կազմակերպվում է սինթետիկ քացախաթթվի արտադրությունը, որը կօգտա-
գործվի ացետատային մետաքսի կառուցվող գործարանում ացետիլցելյու-
լոզա ստանալու համար։



Զգալիորեն ընդլայնվում է արտադրանքի թողարկումը Պոլիվինիլացետատ
գործարանում, որտեղ արդեն անցած տարի շահագործման են հանձնվել պո-
լիվինիլբուտիրալային թաղանթի և կարագաթթվի ցեխը։ Այնտեղ էլ յուրացվել
է վինիֆլեքս էմալային լաքի արտադրությունը, որի բազայի վրա 1959 թ.
կկարգաբերվի էլեկտրամեկուսիչ լաքի թողարկումը, որ չափազանց անհրա-
ժեշտ է կաբելային արդյունաբերությունում և կիրառվում է փաթույթային
հաղորդալարերի մեկուսացման համար։ Դա հնարավորություն կտա զգալի
չափով կրճատելու էլեկտրասարքավորման չափերը և շատ մետաղ ու մանվածք
տնտեսել։ Այդ նույն գործարանում նախատեսվում է կառուցել պոլիվինիլա-
յին սպիրտի և լաքաներկերի արդյունաբերության մեջ կիրառվող «ՑԿՑ» խեժի
նոր ցեխ։

Յոթնամյակում մեծ զարգացում կստանա Կիրովականի քիմիական կոմ-
բինատը, որտեղ, բացի գործող արտադրության ընդլայնումից, կթողարկվեն
արտադրանքի նոր տեսակներ։ Կկազմակերպվի խեժերի և պլաստմասսաների
ստացման համար հումք հանդիսացող մելամինի արտադրությունը։ Խեժերն
ու պլաստմասսաները օժտված են մեծ ամրությամբ, ջրակայունությամբ և
էլեկտրամեկուսիչ բարձր հատկություններով։

1959 թ. շարք կմտնի սինթետիկ կորունդի ցեխը։ Կազմակերպվող հա-
տուկ գործարանում ժամացուցային և սարքաշինական արդյունաբերության
համար կորունդից կարտադրվեն տեխնիկական ճշգրիտ քարեր։

Յոթնամյա պլանով Կիրովականի քիմիական կոմբինատում նախատես-
վում է բնական գազից հանքային պարարտանյութերի համար անհրաժեշտ
ամոնիակի արտադրությունը, որ զգալիորեն էժան է գոյություն ունեցող մե-
թոդի համեմատությամբ և միզանյութի արտադրությունը, որ կօգտագործվի
որպես պարարտանյութ, անասունների կեր և պլաստմասսաների հումք։

Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի մի խումբ ցեխեր ենթարկվում
են արմատական վերակառուցման։ Այդ կոմբինատում շարք կմտնի գործող
աշտարակային մեթոդի փոխարեն կոնտակտային մեթոդով ծծմբական թթվի
արտադրության հզոր ցեխը։ Այդ միջոցառումը զգալիորեն կբարելավի շրջա-
պատի մթնոլորտը և հնարավորություն կտա միաժամանակ հազվագյուտ մե-
տաղներ կորզել։ 1965 թ. ծծմբական թթվի թողարկումը 1958 թ. համեմա-
տությամբ 7 անգամ կավելանա։ Այնտեղ էլ նախատեսված է անընդհատ գոր-
ծողության խցիկների միջոցով սուպերֆոսֆատի արտադրության նոր ցեխի
շինարարությունը։ 1965 թ. սուպերֆոսֆատի թողարկումը 2,2 անգամ կավե-
լանա։ 1959 թ. լրիվ կարողությամբ շահագործման կհանձնվի պղնձարջասպի
արտադրության նոր ցեխը։

Բացի նոր ձեռնարկությունների շինարարությունից 1,2 մլրդ. գումարով
կապիտալ ներդրում է կատարվելու գործող ձեռնարկությունների վերակա-
ռուցման վրա, որի շնորհիվ կաուչուկի թողարկումը ավելանում է 2 անգամ,
վինիլացետատինը՝ 5 անգամ, ավտոծածկաններինը՝ 1,4 անգամ, պոլիվինիլ-
ացետատային էմուլսիայինը՝ 14 անգամ և այլն։

Առաջիկա յոթնամյակում քիմիական արդյունաբերության խոշոր նորա-
կառույց կլինի բամբակի կամ վիսկոզային կորդի փոխարեն արտադրվող
կապրոնային կորդի գործարանը։ Նրա արտադրանքը կօգտագործվի ավտոմո-
բիլային դողերի արտադրությունում։ Բամբակե կամ վիսկոզային կորդի փո-
խարեն կապրոնային կորդով դողերի պատրաստումը 15—20%-ով կրճատում

է կաուչուկի ծախսը և միաժամանակ 30-40%-ով բարձրացնում է դողերի օգտագործման ժամկետը։

Նորակառույցներից մեծ հետաքրքրություն է ներկայացնում ապակեթելի արտադրությունը։

Վերջին տարիներին պոլիմերային քիմիական նյութերի մեջ ապակեթելը և նրանից պատրաստված առարկաները հատուկ տեղ են գրավել։ Ապակեթելը օժտված է շատ արժեքավոր հատկություններով՝ անկիզելիությամբ, բարձր ամրությամբ, գերազանց էլեկտրական, ջերմային և ձայնամեկուսիչ հատկություններով։ Ապակեթելից պատրաստված առարկաները լայն և բազմազան կիրառում են գտել տեխնիկայի տարբեր բնագավառներում՝ էլեկտրամեքենաշինության, ապարատաշինության և քիմիական արդյունաբերության մեջ։ Պլաստմասսաներից շատ կարևոր ու բարդ առարկաներ կարող են պատրաստվել միայն այն պայմանով, եթե պլաստմասսաներում ապակեթելի պարունակությունը կազմում է ողջ խառնուրդի քաշի 40—70%-ը։

Բազմատոննաժ արտադրության զգալի զարգացման հետ միասին կկազմակերպվի բարդ օրգանական միացությունների՝ մաքուր քիմիական ռեակտիվների և բուժիչ պրեպարատների՝ դեղորայքի թողարկումը։ Հայաստանում այդպիսի արտադրության կազմակերպումը պայմանավորվում է մեծ հայտնագործումներով Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտում մաքուր քիմիական միացումները և բուժիչ պրեպարատները սինթեզելու գործում, այդ բնագավառում բարձր որակյալ կադրերի և անհրաժեշտ հումքային ռեսուրսների առկայությամբ։ Բացի վերոհիշյալներից կառուցվելու են և այլ ձեռնարկություններ՝ ժողովրդի պահանջները բավարարելու համար։

Քիմիական արդյունաբերությունը կոչված է ոչ միայն ապահովելու արտադրանքի քանակական աճը, այլև որակական էական փոփոխություններ մտցնել արտադրության տեխնիկական պրոգրեսի զարգացման գործում։ Այդ տեսակետից մեծ հետաքրքրություն է ներկայացնում յոթնամյակի ընթացքում կառուցվելիք Ախտայի լեռնաքիմիական կոմբինատը։ Բացի ալյումինիումի ու շինարարական ցեմենտի արտադրության համար անհրաժեշտ կավահողից, կոմբինատը կթողարկի զանազան քիմիական բազմաթիվ պրոդուկտներ։ Դրանց են պատկանում նատրիումի և կալցիումի մետասիլիկատները, որոնք կաուստիկ սոդայի փոխարեն կիրառվում են տեքստիլ արդյունաբերության մեջ, բորաքսի փոխարեն ջնարակներ, ցինկի օքսիդ և այլն արտադրելու համար։

Մեծ հետաքրքրություն է ներկայացնում ՍՍՌՄ-ում և համաշխարհային պրակտիկայում նոր քիմիական պրոդուկտ հանդիսացող «երևանիտը», որը հաջողությամբ կօգտագործվի ապակու արդյունաբերության մեջ։

Հայաստանում հայտաբերված աղի մեծ պաշարները անհրաժեշտ են դարձնում նրա ռացիոնալ օգտագործումը։ Բացի սննդի արդյունաբերության կարիքները բավարարելուց, աղը հիմնականում հումք կհանդիսանա քիմիական արդյունաբերության համար։ Ս.Մ. Կիրովի անվան գործարանի կարիքները ներկայումս բավարարելու հետ միասին ամենից ավելի նպատակահարմար, բայց հետագա ուսումնասիրություն պահանջող հարցը հանդիսանում է Կիրովականի քիմիական կոմբինատի նախատեսվող վերակառուցումից հետո ոչ էներգատար մեթոդով աղը վերամշակել քլորի և քլորի ածանցյալների։



Տարբեր միացություններում ացետիլենի, քլորի, ազոտի, ամոնիակի կոմպոզիցիան հնարավորություն կտա թե՛ Ս. Մ. Կիրովի անվան գործարանում, թե՛ Կիրովականի Ալ. Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատում ստեղծելու հումքի նոր տեսակներ, որոնց հիման վրա խոշոր չափերով կարող է զարգանալ վերամշակող արդյունաբերությունը։

Հայաստանի կոմպարտիայի XX համագումարը ռեսպուբլիկայի քիմիկոսների առջև դրեց մի մարտական խնդիր՝ 1965 թ. քիմիական արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը 1958 թ. համեմատությամբ ավելացնել 3,3 անգամ և ապահովել նրա վերակառուցումը սինթետիկ նյութերի արտադրության ընդլայնման նոր խնդիրներին համապատասխան։ 1965 թ. քիմիական արդյունաբերության արտադրանքի տեսակարար կշիռը, ռեսպուբլիկայի արդյունաբերական արտադրանքի ծավալում, ամբողջովին վերցրած, անհամեմատ կմեծանա։

Ինչպես նշվեց, յոթնամյակում քիմիական արդյունաբերության արտադրանքը պետք է ավելանա 3,3 անգամ։ Կստեղծվի արհեստական և սինթետիկ թելերի արտադրություն, զգալիորեն կընդլայնվի սինթետիկ կաուչուկի, պլաստիկ մասսաների և մյուս սինթետիկ նյութերի արտադրությունը։

Արհեստական ու սինթետիկ թելերի, խեժերի ու պլաստմասսաների արտադրության գործող քիմիական ձեռնարկությունների նախատեսված ընդլայնումը և նորերի կառուցումը անհրաժեշտ բազա կստեղծի բնակչության աճող պահանջմունքները բավարարելու նպատակով գործվածքեղենի, կոշկեղենի և տնային գործածության առարկաների, ինչպես նաև արդյունաբերության բոլոր ճյուղերում մետաղների, հատկապես գունավոր մետաղների փոխարինիչների արտադրության ծավալը խիստ բարձրացնելու համար։

Ելնելով ՍՄԿԿ XXI համագումարի ղեկավար ցուցումներից, բոլոր քիմիական գործարաններում հեռանկարային պլանով նախատեսվում է զգալի միջոցներ իրագործել արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման, պրոգրեսիվ տեխնոլոգիայի արմատավորման և աշխատատար ու օժանդակ օպերացիաների մեքենայացման գծով։ Հիմնական կուրս պետք է վերցվի արտադրական պրոցեսների կոմպլեքսային ավտոմատացման համար։ Քիմիական արդյունաբերության մեջ ավտոմատացումը ձեռք է բերում հատուկ նշանակություն, քանի որ այն նպաստում է անընդհատ տեխնոլոգիական պրոցեսին անցնելու, որի շնորհիվ մեծ տնտեսական էֆեկտ է ստացվում։ Մեր պայմաններում պետք է կատարվեն մեծածավալ աշխատանքներ սինթետիկ կաուչուկի, սինթետիկ ամոնիակի, ազոտական թթվի, ամոնիակային սելիտրայի և այլ պրոդուկտների արտադրության կոմպլեքսային ավտոմատացման գծով։

Քիմիական արտադրությունների ավտոմատացման հիմնական խնդիրը հանդիսանում է տեխնոլոգիական պրոցեսի կայունացումը, տրված տեխնոլոգիական պարամետրերի հաստատունության պահպանումը, վթարների կանխումը և այլն։ Քիմիական արտադրությունների հիմնական տեխնոլոգիական պրոցեսների ավտոմատացման գծով ներկայումս անցկացվող միջոցառումներն ապահովում են աշխատանքի արտադրողականության մեծ աճ և արտադրանքի որակի բարելավում։

Քիմիական արդյունաբերության տեխնիկական զինվածության ընդհանուր աճի հետ միասին՝ արտադրական պրոցեսների մեքենայացման ու ավ-

տոմատացման և նոր տեխնիկայի արմատավորման գործում դեռ էական թերություններ կան։ Պետք է նշել, որ աշխատատար ու ծանր բեռնաբարձման-բեռնաթափման աշխատանքների, հումքի, կիսաֆաբրիկատների և պատրաստի արտադրանքի ներգործարանային և միջցեխային փոխադրության մեքենայացումը դեռ ետ է մնում։ Այդ պատճառով յոթնամյա պլանում հատուկ ուշադրություն է դարձվում արտադրական պրոցեսների մեքենայացման գործում եղած ճեղքվածքների վերացման վրա, որպեսզի հնարավոր լինի բոլոր տեսակի աշխատանքներում ձեռքի աշխատանքը արագորեն դուրս մղել։

Քիմիական պրոցեսների ավտոմատացման գծով աշխատանքների ծավալը մեծացնելու նպատակով կպահանջվի զգալիորեն ընդլայնել գիտահետազոտական և փորձնական կոնստրուկտորական աշխատանքները՝ ավտոմատացման նոր սխեմաների ստեղծման համար, ինչպես նաև ավելացնել սարքերի և ավտոմատացման միջոցների արտադրությունը։

Ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության զարգացման խնդիրների իրականացման գործում մեծ դեր է պատկանում Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի և Ժողովրդական տնտեսության խորհրդի քիմիական գիտահետազոտական ինստիտուտներին, նախագծային և հատուկ կոնստրուկտորական բյուրոներին, ռեսպուբլիկայի բարձրագույն ուսումնական հաստատությունների քիմիական ամբիոններին և ձեռնարկությունների գիտա-հետազոտական լաբորատորիաներին, որոնք բոլոր նոր արտադրությունների գծով պետք է ապահովեն պրոգրեսիվ տեխնոլոգիայի և նախագծային դոկումենտացիայի ստեղծագործական մշակումը, հաշվի առնելով գիտության և տեխնիկայի լայն կիրառումը։

Այդ տեսակետից մեծ խնդիրներ են կանգնած Կիրովականում վերջերս կազմակերպված «Արմնիիխիմպրոեկտ» գիտա-հետազոտական և նախագծային ինստիտուտի առջև, որի վրա դրված է քիմիական արդյունաբերության հետագա պրոգրեսի գիտա-հետազոտական աշխատանքների կատարումը և ընդլայնվող ու նոր նշագծվող քիմիական ձեռնարկությունների նախագծերի ապահովումը, ինչպես նաև քիմիական արտադրանքի նոր նմուշների ու նոր տեսակների արտադրությունների մշակումը։

Ս. Մ. Կիրովի անվան գործարանում կազմակերպվել է Սինթետիկ կաուչուկի համամիութենական գիտա-հետազոտական ինստիտուտի ֆիլիալը, զգալիորեն ընդլայնվել և ամրապնդվել են պոլիվինիլացետատ, ավտոդողերի գործարանների ու Կիրովականի քիմիական կոմբինատի, ինչպես նաև «Ավտոմատիկա» գիտահետազոտական ինստիտուտի լաբորատորիաները։

Վերջին ժամանակներս Հայկական ՍՍՌ քիմիական արդյունաբերության աշխատողները զգալի աշխատանք են կատարել քիմիական պրոցեսների ավտոմատացման գծով։ Ս. Մ. Կիրովի անվան ու պոլիվինիլացետատ գործարաններում և Կիրովականի քիմիական կոմբինատում իրագործվել է արտադրության վերահսկման ավտոմատացումը և արմատավորվել են զանազան ավտոմատիկ, կարգավորող ու այլ հարմարանքներ, որոնց դերն է ուղղություն տալ և կարգավորել քիմիական պրոցեսները, ջերմաստիճանային և մյուս ռեժիմները։

Իր արագ լուծմանը սպասող խոշորագույն գիտա-տեխնիկական պրոբլեմ է հանդիսանում արդյունաբերական կառավարող հաշվիչ մեքենաների ստեղծումը։ Քիմիական արդյունաբերության մեջ հաշվիչ մեքենաների արմատավորման միջոցով կլուծվեն տնտեսապես նպաստավոր այն ռեժիմի որոշման և



պահպանման խնդիրները, որը խիստ անհրաժեշտ է քիմիական արտադրությունների տեխնոլոգիական պրոցեսների հետագա բարդացման և ինտենսիվացման դեպքում։

ՍՄԿՊ Կենտկոմի այս տարվա հունիսի 24-ին գումարվելիք պլենումում քննարկվելու են ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների կատարման միջոցառումների հարցերը, որոնք վերաբերում են արդյունաբերության մեջ և տրանսպորտում կոմպլեքսային մեքենայացումը արմատավորելուն, արտադրության ավտոմատացմանը, թողարկվող արտադրանքի որակի բարձրացմանը և ինքնարժեքի իջեցմանը, ինչպես նաև շինարարության արժեքին։ Լսվելու է նաև ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Քիմիայի գծով պետական կոմիտեի զեկուցումը ՍՄԿՊ Կենտկոմի 1958 թվականի Մայիսյան պլենումի որոշման կատարման մասին՝ բնակչության պահանջմունքները և ժողովրդական տնտեսության կարիքները բավարարելու համար քիմիական արդյունաբերության և առանձնապես սինթետիկ նյութերի ու դրանցից պատրաստված առարկաների արտադրության զարգացումը արագացնելու վերաբերյալ։

Կասկածից դուրս է, որ ռեսպուբլիկայի ձեռնարկությունների բանվորների ու ինժեներա-տեխնիկական աշխատողների կոլեկտիվները և գիտահետազոտական հիմնարկությունները քիմիական արդյունաբերության հետագա զարգացումն արագացնելու համար լիովին կկատարեն ՍՄԿՊ Կենտկոմի Մայիսյան (1958 թ.) և Հունիսյան (1959 թ.) պլենումների որոշումները։

---

## ՍԵՂՄ ԺԱՄԿԵՏՈՒՄ ԱՎԱՐՏԵԼ ԳԱԶԱՄՈՒՂԻ ԿԱՌՈՒՑՈՒՄԸ

Բացառիկ նշանակություն տալով բնական գազին՝ որպես մեր ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության համար արժեքավոր հումքի և էժան վառելիքի, Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմը և ռեսպուբլիկայի Մինիստրների Սովետը վերջերս քննության առան Աղստաֆա-Երևան մագիստրալային գազամուղի, ինչպես նաև քաղաքի մագիստրալային գազամուղային ցանցի շինարարության ընթացքի ու գազի ընդունմանն արդյունաբերական ձեռնարկությունների նախապատրաստման հարցը և որոշում ընդունեցին ռեսպուբլիկայի այդ կարևորագույն օբյեկտի շինարարությունն արագացնելու մասին։

Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմը և Հայկական ՍՍՌ Մինիստրնեների Սովետը նշեցին, որ Աղստաֆա-Երևան մագիստրալային գազամուղի և Երևանի քաղաքային գազացանցի կառուցման տեմպերն անբավարար են։ Իջևան-Սևան բարձրլեռնային տեղամասի հորատման-պայթեցման աշխատանքների 257 հազ. խորանարդ մետր ընդհանուր ծավալից, 1959 թվականի չորս ամսվա ընթացքում կատարված է 187 հազ. խորանարդ մետր։ 47 կիլոմետր ընդհանուր երկարությամբ հարթավայրի սաեղծման ու մաքրման աշխատանքներն ավարտված են միայն 27 կիլոմետր երկարություն ունեցող տեղամասում։

«Մոսգազպրովոդստրոյ» տրեստի № 14 շինարարական վարչությունը և նրա ենթակա կազմակերպությունները բավականաչափ ապահովված չեն սարքավորումով, մեխանիզմներով ու խողովակներով՝ գազամուղի կառուցման աշխատանքները լիովին ծավալելու համար։

Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմը և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը նշեցին նաև, որ Ժողտնտխորհը միանգամայն անբավարար է զբաղվել արդյունաբերության գազիֆիկացմանը նախապատրաստվելու հարցերով, դեռ չի ձեռնարկել արդյունաբերական ձեռնարկություններն ու կաթսայական մեխանիզմները գազային վառելիքի փոխադրելու աշխատանքները, ձգձգվում է այդ աշխատանքների նախագծերի կազմումը։ Ժողտնտխորհի ձեռնարկություններում գազային պլիտաների արտադրության կազմակերպման նախապատրաստումը անբավարար է, ձգձգվում է նաև «Գազապարատ» գործարանի նախագծումն ու շինարարության սկսումը։

Աշխատավորների դեպուտատների Երևանի քաղաքային Սովետի գործկոմը բավականաչափ աշխատանք չի ծավալել Երևանի քաղաքային գազացանցի կառուցման, բնակարանային ու կոմունալ-կենցաղային օբյեկտները գազի փոխադրելու հետ կապված միջոցառումների ուղղությամբ։ Շարունակվում է բնակելի տներն ու կուլտուր-կենցաղային օբյեկտներն առանց գազիֆիկացման՝ շահագործման հանձնելու պրակտիկան։

ՀՍՍՌ Մինիստրների Սովետին կից Գազիֆիկացման վարչությունը ժամանակին միջոցներ ձեռք չի առել կոորդինացնելու գազամուղի կառուցման հետ կապված հարցերը և կառուցումը չի ապահովել նախագծային-տեխնիկական փաստաթղթերով։



Գազամուղի կառուցման աշխատանքներն արագացնելու նպատակով ՀԿԿ Կենտկոմը և ՀՍՍՌ Մինիստրների Սովետը որոշեցին հաստատել ՀՍՍՌ Մինիստրների Սովետին կից Պետպլանի և «Հայգազ» վարչության կողմից ներկայացված քաղաքների և բնակավայրերի գազիֆիկացման կարգը, ըստ որի 1960 թվականի հունվարին գազ է տրվելու Երևան քաղաքին։ Այդ նույն տարում գազ պետք է ստանան Կիրովականը, Ախտան, Իջևանը, Սևանը, Լուսավանը և Արզնին։ Իսկ Լենինականը գազ կստանա 1961 թվականին։

ՀԿԿ Կենտկոմը և ՀՍՍՌ Մինիստրների Սովետը պարտավորեցրին ռեսպուբլիկայի ժողտնտխորհին՝ ուժեղացնել արտադրական ձեռնարկությունները գազի փոխադրելու նախագծման աշխատանքները, նկատի առնելով, որ 1960 թվականի հունվարին գազիֆիկացման պետք է ենթարկել այն ձեռնարկությունները, որոնք գազի հիմնական սպառողներն են։ Միաժամանակ ժողտնտխորհը պետք է արագացնի «Գազապարատ» գործարանի նախագծումն ու կառուցումը, ինչպես և գործող ձեռնարկություններում սահմանված ժամկետի համեմատ ապահովի գազային պլիտաների արտադրությունը։

Այդ նույն որոշմամբ Երևանի քաղաքային Սովետի գործկոմին հանձնարարվեց ամեն կերպ ծավալել քաղաքի գազիֆիկացման ցանցի կառուցումը, հատուկ ուշադրություն նվիրելով ներբնակարանային գազային սարքավորումների և կոմունալ-կենցաղային օբյեկտների, ինչպես և բնակարանների ջեռուցման կաթսաների վերահարմարեցման վրա։

Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմը և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության խորհրդին, Երևանի քաղաքային Սովետի գործկոմին և «Հայգազ» վարչությանը պարտավորեցրին կարճ ժամկետում մշակել 1960 թվականի սկզբից գազի ընդունմանը նախապատրաստելու համաձայնեցված գրաֆիկներ ու միջոցառումներ այն հաշվով, որ 1960 թվականին գազը ռացիոնալ ու հավասարաչափ օգտագործվի հետևյալ չափերով.

ա) Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի Երևանի ձեռնարկությունների կարիքների համար՝ 70 միլիոն խորանարդ մետր.

բ) Երևան քաղաքի կոմունալ-կենցաղային և այլ սպառողների կարիքների համար՝ 70 միլիոն խորանարդ մետր.

գ) ռեսպուբլիկայի մյուս բնակավայրերի բոլոր սպառողների կարիքների համար՝ 30 միլիոն խորանարդ մետր։

ՀԿԿ Կենտկոմը և ՀՍՍՌ Մինիստրների Սովետը Հայաստանի Պետպլանին պարտավորեցրին՝ «Հայգազ» վարչության հետ միասին ռեսպուբլիկայի ժողտնտխորհի, Երևանի քաղսովետի գործկոմի և «Հայգազստրոյի» հայտի համաձայն տեղադրել արդյունաբերական ձեռնարկությունների և բնակարանային-կենցաղային օբյեկտների գազիֆիկացման համար անհրաժեշտ ապարատուրայի և արմատուրայի պատվերը։

Ռեսպուբլիկայի Պետպլանին և «Հայգազ» վարչությանը հանձնարարվեց երեք ամսվա ընթացքում Մինիստրների Սովետին ներկայացնել ռեսպուբլիկայի այլ քաղաքների և բնակավայրերի գազիֆիկացման միջոցառումներ, նկատի ունենալով նրանց գազ մատակարարելու հնարավորությանն ու նպատակահարմարությանը։

*Ռեսպուբլիկայի ժողտնտխորհին և Պետպլանին հանձնարարվեց 1960
թվականի ժողովրդատնտեսական պլանում անհրաժեշտ կապիտալ ներդրում
նախատեսել «Գազապարատ» գործարանի կառուցման համար։*

*ՀԿԿ Կենտկոմը և ՀՍՍՌ Մինիստրների Սովետը Պետպլանին հանձնարա-
րեցին՝ 1959—1965 թթ. ռեսպուբլիկայի բնական գազիֆիկացման ենթակա
քաղաքների ու բնակավայրերի ցուցակին համապատասխան, կապիտալ ներ-
դրումներ ու լիմիտներ նախատեսել այդ քաղաքների ու բնակավայրերի,
ինչպես նաև նրանց արդյունաբերական ձեռնարկությունների գազամուղի
կառուցման և գազիֆիկացումը նախագծելու համար։*

*Հանձնարարվեց ժողտնտխորհին կազմակերպել քաղաքների և բնակա-
վայրերի գազիֆիկացման կարիքների համար ացետիլենային բալոնների լցը-
ման կետեր և գազամուղի շինարարության կառուցումը ապահովել ացետի-
լենով։*

*Մինչև գալիք տարվա սկիզբը գազամուղի գործարկումն ապահովելու նպա-
տակով ՀԿԿ Կենտկոմի և ՀՍՍՌ Մինիստրների Սովետի վերոհիշյալ որոշմամբ մի
շարք գործնական միջոցառումներ են մշակված, որոնք ապահովելու են ռես-
պուբլիկայի գազիֆիկացման պլանի կենսագործումը։*

*Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն հանձ-
նարարեց գազիֆիկացման ենթակա քաղաքների ու շրջանների քաղաքային ու
շրջանային կոմիտեներին, ինչպես նաև արդյունաբերական ձեռնարկություն-
ների սկզբնական պարտիական կազմակերպություններին՝ քննարկել այն
հարցը, թե ձեռնարկություններն ու կոմունալ-կենցաղային հիմնարկություն-
ները որքանով են պատրաստ անցնելու բնական գազի օգտագործմանը և մի-
ջոցներ ձեռք առնել արագացնելու գազիֆիկացման հետ կապված նախա-
գծումն ու նախապատրաստումը՝ սահմանված ժամկետին գազն ընդունելու
համար։*

---



> «Անհրաժեշտ է միջոցառումներ ձեռնարկել ետ մնացող կոլ-
> տնտեսությունները տնտեսապես ամրապնդելու և յուրաքանչյուր
> շրջանում այդպիսիներն առաջավոր կոլտնտեսություններին հաս-
> ցընելու համար»:
>
> ՀԿԿ XX ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԲԱՆԱՁԵՎԻՑ

## ՆՈՐԱԿԵՐՏԻ ՆՈՐ ԿՅԱՆՔԸ

*Նորակերտը այն բարեկարգ գյուղերից է, որ ստեղծվել է Սովետական իշ-
խանության օրոք։ Դեռևս սրանից 25 տարի առաջ Հայաստանի աշխարհագրա-
կան քարտեզի վրա որևէ նշում չկար այդ գյուղի մասին։*

*1925 թվականին ռեսպուբլիկայի կառավարության որոշմամբ անցյալում
Արևմտյան Հայաստանից գաղթած մի խումբ հայ ընտանիքներ տեղափոխվե-
ցին Բասարգեչարի դաշտավայրը և բնակություն հաստատեցին Գիլլի լճի տա-
փաստանում։ Պետության միջոցներով կառուցվեցին մի քանի տասնյակ տներ
վերաբնակների համար, որից հետո տարեցտարի մեծացավ ու բարգավաճեց
Նորակերտ գյուղը։*

*1931 թվականից կազմակերպվեց կոլեկտիվ տնտեսություն, որը նոր
կյանքի ուղի բացեց նորակերտցիների առջև։ Կոլտնտեսությունը ձեռնամուխ
եղավ ճահիճների չորացմանը, իսկ վերջին 7—8 տարիների ընթացքում հիդ-
րոմելիորատիվ լայն աշխատանքների շնորհիվ ճահճուտներից իրացվեց 400
հեկտար նոր, պիտանի հողատարածություն։*

*Կոլտնտեսության ունեցած վարելահողի մեծ մասը կավա-ավազային և
ճահճային է։ Լավ բերք ստանալու համար հողատարածության այսպիսի
ստրուկտուրան պահանջում էր սիստեմատիկ պարարտացում և ագրոտեխնի-
կական տարբեր միջոցառումների կիրառում։ Կոլտնտեսականները երկար տա-
րիներ մեծ ջանքեր գործադրեցին հողի ստրուկտուրան բարելավելու համար։
Որպես պարարտանյութ օգտագործվեց տեղական տորֆը, գոմաղբը, իսկ
ճահճուտներից իրացված հողը պարարտացվեց սուպերֆոսֆատով։*

*Նորակերտի «Կարմիր հոկտեմբեր» կոլտնտեսությունն ունի պետության
կողմից նրան առհավետ ամրացված 2850 հեկտար հողատարածություն, որից
վարելահողեր՝ 1609 հեկտար, բնական խոտհարք՝ 80 հեկտար, այգի՝ 18 հեկ-
տար և այլն։ Գյուղն ունի 156 տնտեսություն, ավելի քան 800 բնակչով։ Աշխա-
տունակ կոլտնտեսականների թիվը հասնում է մոտ 400-ի։ Թեև կոլտնտեսու-
թյունն այնքան էլ մեծ չէ, սակայն դա չի խանգարում, որպեսզի նա մեծ գործ
կատարի և ունենա լավ ցուցանիշներ։*

*Գյուղատնտեսական արտելը տեխնիկապես զինված տնտեսություն է։ Դաշ-
տավարության բնագավառում աշխատատար պրոցեսները հիմնականում մեքե-
նայացված են. ՄՏԿ-ների վերակազմումից հետո կոլտնտեսությունը 1958*

*թվականին գնեց անհրաժեշտ քանակությամբ գյուղատնտեսական մեքենաներ և գործիքներ։ Այժմ կոլտնտեսությունն ունի 7 տրակտոր՝ իրենց կցվող գործիքներով, 5 կոմբայն, որից մեկը ինքնագնաց, 5 խոտհնձիչ, 5 շարքացան, 11 բեռնատար ավտոմեքենա, գրեյդեր, սերմաղտիչ և այլ մեքենաներ ու գործիքներ։*

*Կոլտնտեսային արտադրության առաջատար ճյուղը դաշտավարությունն է։ Նորակերտցիները բացի հացահատիկից, մշակում են նաև ծխախոտ, խոտաբույսեր, եգիպտացորեն և այլն։*

*Բասարգեչարի շրջանը իրավամբ համարվում է ռեսպուբլիկայի հացի շտեմարաններից մեկը, իսկ Նորակերտի կոլտնտեսությունը (հատկապես հացահատիկի սորտային սերմացուների արտադրությամբ)՝ ռեսպուբլիկայի առաջավոր կոլտնտեսություններից մեկը։ Կոլտնտեսությունը հասել է այն բանին, որ 1953 թվականին արտադրված 4627 ցենտներ հացահատիկի փոխարեն, 1958 թվականին արտադրել է 15082 ցենտներ, կամ մեկ հեկտարի բերքատվությունը ավելացել է մոտ 4 անգամ։*

*Կոլտնտեսությունը երկար տարիներ է ինչ կիրառում է ինը դաշտյա ցանքաշրջանառություն, որը նպաստել է բերքատվության բարձրացմանը և, հատկապես, սերմնաբուծության զարգացմանը։ Ցանքատարածության ինը դաշտամասերից երկուսը հերթականությամբ թողնվում են ցելի տակ։ Նորակերտցիները ցելի վրա կատարած ցանքից սովորաբար ստանում են 4—5 ցենտներով ավելի հացահատիկ, քան ոչ ցելի վրա կատարած ցանքից։ Կոլտնտեսության վարչության նախագահ Հ. Զաքարյանը պատմում է, որ վարելահողերի զգալի մասը կավա-ավազային հողեր են և Բասարգեչարի դաշտավայրում հաճախակի տեղի ունեցող ուժեղ քամիների հետևանքով ենթակա են չորացման։ Ուստի ամեն տարի վաղ գարնան ամիսներին հորդված գետի ջրով ողողում ենք աշնանացանի, կորնգանի դաշտերը։ Դրանով մի կողմից հողը բույսերին տալիս է անհրաժեշտ կենսական խոնավություն և մյուս կողմից՝ լեռներից եկող հորդացած ջրերը, բերելով իրենց հետ մեծ քանակությամբ սնուցող նյութեր, պարարտացնում են հողը։*

*Նորակերտցիները գարնանացանը սկսում են վաղ գարնանը։ Կոլտնտեսության նախագահ ընկ. Զաքարյանը հիշատակում է, որ շրջանում կային թերահավատ մարդիկ, որոնք ծիծաղում էին մեր այդ փորձի վրա, կարծելով թե վաղ գարնան ցանքերը կցրտահարվեն։ Բայց առանց վախենալու մենք ցանքը կատարում ենք վաղ գարնանը։ Եղել է դեպք, երբ ցանքը սկսել ենք փետրվարի վերջերից (այն դեպքում, երբ շրջանում գարնանացանը հիմնականում սկսվում է մարտի 25-ից) և միշտ էլ ստացել ենք բարձր բերք։*

*Հացահատիկի արտադրության բնագավառում ձեռք բերված նվաճումները հնարավոր պայմաններ ստեղծեցին, որպեսզի կոլտնտեսությունը զբաղվի այդ կուլտուրայի սերմնաբուծությամբ։ Դեռևս 1938 թվականից նորակերտցիները ձեռնամուխ եղան սորտային հացահատիկի մշակությանը։ Հետագայում Սովետական Հայաստանի կառավարությունը հաշվի առնելով այդ ասպարեզում կոլտնտեսության աչքի ընկնող հաջողությունները, գյուղատնտեսական արտելը դարձրեց էլիտային սերմնաբուծական տնտեսություն, որի արտադրած սորտային սերմացուներով մատակարարվում են ինչպես Սևանի ավազանի, այնպես էլ ռեսպուբլիկայի այլ շրջանների կոլտնտեսությունները։ Մեծ է սերմնաբուծությունից ստացված եկամուտը։ Հացահատիկի սորտային սերմերի արտադրու-*



*թյունը բարձրացնելու գործում նյութական շահագրգռվածության սկզբունքը կիրառելով, պետությունը յուրաքանչյուր ցենտներ սորտացու էլիտա-հացահատիկի դիմաց կոլտնտեսությանը տալիս է 1,7 ցենտներ պարենային հացահատիկ և հացահատիկի դրամական արժեքը՝ եռակի չափով։*

*Նորակերտի դաշտավարներն այնպիսի մարդիկ չեն, որ բավարարվեն ձեռք բերված հաջողություններով. նրանք անշեղորեն կիրառում են այն սկզբունքը, որ բերքի համախառն արտադրանքի բարձրացումը պետք է կատարվի ոչ միայն ցանքատարածությունները ընդարձակելու, այլև քիչ տարածությունից շատ բերք ստանալու միջոցով։ Չնայած նրան, որ 1958 թվականին նորակերտցիները 345 հեկտարով կրճատեցին հացահատիկի ցանքատարածությունը, բայց ստացան հինգ հազարից ավելի ցենտներ հացահատիկ, քան 1954 թվականին, երբ հացահատիկային ցանքատարածությունը 1945 հեկտար էր։*

*Գյուղատնտեսության շեշտակի վերելքի ուղղությամբ կոմունիստական պարտիայի ընդունած որոշումները, հատկապես պարտիայի XXI համագումարի կողմից առաջ քաշված պատմական խնդիրները, մեծ եռանդ են առաջացրել նորակերտցիների սրտերում։ Տոգորված հայրենասիրական խոր զգացմունքներով, չխնայելով ոչ մի ջանք, նրանք միահամուռ կերպով ձեռնամուխ եղան այս տարվա գյուղատնտեսական աշխատանքներին։ Գարնանացան հացահատիկի ու ծխախոտի դաշտերը ժամանակին տեղափոխվեց 6000 տոննա գոմաղբ և տորֆի մանրուք, 150 ցենտներ հանքային պարարտանյութ։ Աշխատանքի լավ կազմակերպման շնորհիվ 310 հեկտար գարնանացանը ավարտվեց 6 օրում։*

*Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գործում իրենց արժեքավոր դերն են կատարում գյուղատնտեսական արտելի կոմունիստները։ Պարտիական կազմակերպությունը մոբիլիզացրել է գյուղի աշխատավորության ուժերը հանրային տնտեսության զարգացման համար։*

*Նորակերտի «Կարմիր հոկտեմբեր» կոլտնտեսության սկզբնական պարտկազմակերպությունը ունի 31 անդամ, որոնցից 25-ը անմիջականորեն աշխատում են նյութական բարիքների արտադրության մեջ և ապահովում են իրենց ավանգարդային դերը։ Գյուղի բոլոր կոմերիտականները նույնպես աշխատում են արտադրության մեջ և պատվով կատարում իրենց առջև դրված խնդիրները։*

*Նորակերտցիները լավ են դաստիարակում երիտասարդ սերնդին, հոգ տանում նրանց ապագայի մասին, նրանց մեջ սերմանում սեր դեպի հանրօգուտ աշխատանքը. պատահական չէ, որ անցյալ տարի միջնակարգ դպրոցը ավարտած 10 նորակերտցի պատանիներից 6-ը աշխատում են կոլտնտեսությունում, իսկ մնացածները մեկնել են Սովետական Բանակ։*

*Կոլտնտեսությունն ունի երկու դաշտավարական բրիգադա, որոնք աչքի են ընկնում իրենց լավագույն աշխատանքով։ Դաշտավարական երկրորդ բրիգադան (բրիգադավար՝ Հ. Մկրտչյան), որը մշակում է 355 հեկտար ցանքատարածություն, 1958 թ. յուրաքանչյուր հեկտարից ստացավ 21,6 ցենտներ ցորեն, պլանով նախատեսված 12,5 ցենտների փոխարեն և 36 ցենտներ կորնգան, 25 ցենտների փոխարեն։ Բրիգադայի կոլտնտեսականները պարտավորվել են 1959 թ. հացահատիկի մեկ հեկտարի միջին բերքատվությունը հասցնել 25 ցենտների, պլանով նախատեսված 22,5-ի դիմաց, իսկ յոթնամյակի վերջում՝ 30 ցենտների։ Հ. Մկրտչյանը Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի առաջին մասնակիցներից է։ Իր լավագույն աշխատանքի հա-*

մար նա պարգևատրվել է ցուցահանդեսի ոսկե և արծաթե մեդալներով, դիպլոմով, արժանացել է ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրության՝ Աշխատանքի գերազանցության կրծքանշանի և ՀՍՍՌ Գերագույն Սովետի երկու պատվոգրի։ Չենք կարող չնշել նաև կոլտնտեսության վարչության նախագահ, ՀՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ Հ. Զաքարյանի օրինակելի աշխատանքը։ Նա շուրջ 26 տարի է, ինչ ղեկավարում է Նորակերտի գյուղատնտեսական արտելը և արժանի հեղինակություն է վայելում գյուղի աշխատավորության մեջ։

Նորակերտի կոլտնտեսությունն ավելի քան քսան տարի է, ինչ մշակում է նաև ծխախոտ։ Սակայն յուրաքանչյուր հեկտարից ստացվող բերքը դեռևս ցածր է։ Պետք է հուսալ, որ կարճ ժամկետում նորակերտցիները կլինեն առաջավոր նաև ծխախոտագործության ասպարեզում։

Առաջավոր կոլտնտեսության էկոնոմիկայում նշանակալի կշիռ ունի անասնաբուծությունը։ Այստեղ դեռևս 1938 թվականից սկսել են բարելավել կովերի ցեղը։ Սակայն եղած բնական արոտավայրերը շատ քիչ լինելով, չէին կարող բավարարել անասունների կերակրման մինիմալ պահանջները, ուստի նորակերտցիները ձեռնամուխ եղան կերի կայուն բազա ստեղծելու գործին։ ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումից հետո կոլտնտեսությունը սկսեց զբաղվել եգիպտացորենի մշակությամբ։ Նորակերտցիների համար եգիպտացորենը նոր կուլտուրա էր։ Դաշտավարները դեռևս չէին տիրապետում նրա մշակման ագրոտեխնիկական կանոններին, իսկ ոմանք էլ թերահավատություն էին ցուցաբերում դեպի այդ կուլտուրան, կարծելով, թե այն իրենց դաշտերում չի աճի։ Հաղթահարելով եղած դժվարությունները, կոլտնտեսությունը 1955 թվականին յուրաքանչյուր հեկտարից ստացավ 140 ցենտներ, իսկ 1958 թվականին՝ 225 ցենտներ կանաչ մասսա։ Կոլտնտեսությունը պլանավորել է 1959 թվականին յուրաքանչյուր հեկտարից ստանալ 250 ցենտներ կանաչ մասսա և պատրաստել 7500 ցենտներ սիլոս։

Կերի բազայի ընդլայնման շնորհիվ աճեց խոշոր և մանր եղջերավոր անասունների գլխաքանակը և ավելացավ կաթի արտադրությունը։ 1958 թ. խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը հասավ 800-ի, այդ թվում կովերինը՝ 202, իսկ ֆուրաժային կովի միջին կաթնատվությունը աճել է 220 տոկոսով, կազմելով 1808 կգ։ Կոլտնտեսության յոթնամյա պլանում նախատեսված է 1965 թվականին խոշոր եղջերավոր անասունների թիվը հասցնել 1400-ի (որից 560-ը՝ կովեր), իսկ մեկ ֆուրաժային կովի միջին կաթնատվությունը՝ 2200 կգ-ի։

Կոլտնտեսության անասնապահները պարտավորվել են յոթնամյակի առաջադրանքները անասնաբուծության գծով կատարել 5 տարում։ Այս տարվա սոցմրցման առաջին եռամսյակի պարտավորությունների ստուգման ամփոփումը ցույց տվեց, որ անասնապահների խոսքը գործից չի տարբերվում։ Բոլոր կթվորները ոչ միայն կատարեցին, այլև գերակատարեցին իրենց ստանձնած պարտավորությունները։

Անասնապահական մթերքների արտադրության աճը հնարավորություն է ստեղծել, որպեսզի կոլտնտեսությունը, պետական առաջադրանքները կատարելուց հետո, իր ներքին սպառողական կարիքների համար ունենա անհրաժեշտ քանակությամբ մթերքներ։ Ներկայումս կոլտնտեսականները կոլտնտեսությունից գնում են կաթ՝ կիլոգրամը 2 ռուբլով, միս՝ 8 ռուբլով, պանիր՝ 10 ռուբլով և այլ մթերքներ։ Շատ կոլտնտեսականներ համոզվել են, որ իրենց տնտեսություններում անձնական կարիքների համար կով և այլ անասուններ պահելը



ոչ մի առավելություն չունի։ Հեռու չէ այն ժամանակը, երբ կոլտնտեսականների անձնական տնտեսություններում եղած կովերը կվաճառվեն կոլտնտեսությանը։ Այս երևույթի դրական կողմն այն է, որ կոլտնտեսականներն ազատվելով իրենց անձնական անասունների խնամքը հոգալուց, ավելի շատ ժամանակ կտրամադրեն հանրային աշխատանքին և ավելի լավ պայմաններ կստեղծեն իրենց կուլտուրական կյանքի համար։

Նորակերտի կոլտնտեսությունում որոշակի տեղ են գրավում ոչխարաբուծությունը, խոզաբուծությունը և թռչնաբուծությունը։ Յոթնամյա պլանով նախատեսված է 1965 թվականին մանր եղջերավոր անասունների գլխաքանակը հասցնել 6000-ի, խոզերինը՝ 400-ի, թռչուններինը՝ 5000-ի։

Կոլտնտեսականները հոգատարությամբ են խնամում անասուններին։ Կովանոցները, խոզանոցներն ու թռչնանոցներն աչքի են ընկնում իրենց մաքրությամբ և հարմարությամբ։ Ինչպես ասում են, ամեն ինչ իր տեղումն է։ Անասունների լավ վիճակը Նորակերտի անասնապահների բարեխիղճ աշխատանքի ապացույցն է։ Անասնապահներից իր ազնիվ աշխատանքով խոր հարգանք է վայելում Սանդուխտ Նադիրյանը, որը 17 տարի է ինչ աշխատում է որպես կթվորուհի։ Նա իր խնամած կովերից միշտ էլ ստացել է առատ կաթ և ոչ մի անգամ մատղաշի անկում չի տվել։ Անցյալ տարի իր խնամած 13 կովից ստացավ 13 առողջ հորթ և մեկ ֆուրաժային կովի կաթնատվությունը հասցրեց 2250 կգ-ի։ Աչքի ընկնող կթվորուհիների շարքին են պատկանում նաև Շ. Գրիգորյանը, Ա. Սարգսյանը, Խ. Ղազարյանը և ուրիշներ։

Անասնաբուծության ասպարեզում նորակերտցիների ձեռք բերած փորձը մասսայականացնելու նպատակով ՀԿՊ Բասարգեչարի շրջանային կոմիտեն և շրջսովետի գործկոմը այս տարի կազմակերպեցին փորձի փոխանակում։ Շրջանի մյուս կոլտնտեսությունների վարչության նախագահները, կաթնապրանքային ֆերմաների վարիչները, կթվորները, անասնապահները այցելեցին Նորակերտ և մի ամբողջ օր այնտեղ մնալով, ուսումնասիրեցին առաջավոր անասնապահների աշխատանքի հարուստ փորձը։

Նորակերտի կոլտնտեսությունում անասնաբուծության ասպարեզում եղած հաջողություններն անկասկած զգալի են, սակայն անասնաբուծությունը դեռևս ետ է մնում դաշտավարությունից։ Մթերատու անասունների գլխաքանակի աճը անցյալ տարիներին ընթացել է դանդաղ։ Եթե 1953 թ. 100 հեկտար հողատարածության հաշվով եղել է 2,5 կով, ապա 1958 թ. այն հասել է 8,2-ի, որը շատ քիչ է այդպիսի զարգացած հացահատիկային արտադրություն ունեցող կոլտնտեսության համար։

Աշխատանքի ռացիոնալ կազմակերպման, ինքնարժեքի իջեցման և աշխատանքային կարգապահության բարձրացման շնորհիվ Նորակերտի կոլտնտեսությունը դարձել է Բասարգեչարի շրջանի առաջավոր կոլտնտեսություններից մեկը, որի դրամական եկամուտը 1953 թվականի մեկ միլիոն 172 հազար ռուբլու դիմաց 1958 թվականին հասել է 3 միլիոն 167 հազար ռուբլու։

Կոլտնտեսության անբաժանելի ֆոնդերը 1931 թվականից մինչև 1953 թվականը կազմել են ընդամենը 3 միլիոն 86 հազար ռ., իսկ վերջին 5 տարում այն աճել և 1958 թվականին հասել է 6 միլիոն 986 հազար ռուբլու։

Դաշտավարության ու անասնաբուծության մեջ աշխատատար պրոցեսների մեքենայացումը և աշխատանքի պրոգրեսիվ գործավարձային սիստեմի ճիշտ կիրառումը տվել են դրական արդյունք։ Եթե 1955 թ. մեկ ցենտներ հացահա-

*տիկ ստանալու համար ծախսվել է 3,80 աշխօր, մեկ ցենտներ կաթի համար՝ 42, մսին՝ 31 աշխօր, բրդին՝ 108 աշխօր, ապա 1958 թ. մեկ ցենտներ հացահատիկի արտադրածախսը կազմում է 1,83 աշխօր, կաթինը՝ 36 աշխօր, մսինը՝ 20 և բրդինը՝ 93 աշխօր։ Դրա շնորհիվ զգալի չափով իջել է գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքը։ Մեկ ցենտներ հացահատիկի ինքնարժեքը անցյալ տարի կազմեց 52 ռ. 30 կ., ծխախոտինը՝ 427 ռ., կաթինը՝ 84 ռ. 40 կ., մսինը՝ 469 ռ., բրդինը՝ 1850 ռ. և այլն։*

*Կոլտնտեսության հանրային ֆոնդի և եկամտի աճը անհրաժեշտ պայմաններ ստեղծեցին, որպեսզի գյուղատնտեսական արտելը կոլտնտեսականներին վարձատրելու նախկին ձևից անցնի նոր, պրոգրեսիվ ձևի — դրամական վարձատրության։ Տնտեսական մեծ նշանակություն ունեցող այդ գործի կազմակերպման առաջին քայլը եղավ այն, որ կոլտնտեսությունը 1959 թ. հունվարի մեկից անցավ դրամական վարձատրության, յուրաքանչյուր աշխօրին տալով 20 ռ., որպես երաշխավորված մինիմում։ Նախնական հաշվարկով այդ գումարի վճարումը հնարավոր է այն դեպքում, երբ կոլտնտեսությունը տարեկան կստանա 3 մլն. ռ. եկամուտ, իսկ նորակերտցիների տարեկան եկամուտը այժմ դրանից ավելին է։ Կոլտնտեսության տարեկան եկամուտը բարձրանալու հետ միասին, կբարձրանա նաև կոլտնտեսականների վարձատրության չափը։*

*Կոլտնտեսականները կարող են իրենց ցանկությամբ դրամի փոխարեն, պետական մանրածախ գներով, կոլտնտեսությունից իրենց կարիքների համար ստանալ անհրաժեշտ գյուղատնտեսական մթերքներ։ Պարտիայի շրջանային կոմիտեի բյուրոն հավանություն տվեց նորակերտցիների այս նախաձեռնությանը և շրջանի բոլոր կոլտնտեսությունների պարտիական կազմակերպություններին հանձնարարեց ուսումնասիրել այն՝ իրենց մոտ կիրառելու նպատակով։*

*Գյուղատնտեսական արտելի տնտեսապես ամրապնդումը, եկամտի աճը մեծապես նպաստել են կոլտնտեսականների նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացմանը։ Նորակերտցիները ներկայումս անհամեմատ լավ են ապրում, քան սրանից 5—6 տարի առաջ։ 1958 թվականին աշխօրերի դիմաց բաշխված է 1,9 միլիոն ռուբլի, մեկ աշխօրի արժեքը դրամական արտահայտությամբ կազմել է 23,5 ռուբլի։ Նյութական բարեկեցիկ պայմանները այն խրախուսելի արդյունքներին են հասցրել, որ 1958—59 թթ. 43 տնտեսություններ կամավոր կերպով հրաժարվել են իրենց տնամերձ հողամասերից։*

*Նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման վկայություն է հանդիսանում նաև այն, որ վերջին 2—3 տարում հանրային տնտեսության օգնությամբ կոլտնտեսականները կառուցել են 50-ից ավելի բարեկարգ տներ։ Նորակերտի համարյա բոլոր փողոցները կառուցվել են պլանով և աչքի են ընկնում իրենց մաքրությամբ. փողոցները բարեկարգ են և կանաչապատված։ Վերջին տարիներում նորակերտցիները տնկում են պտղատու այգիներ։*

*Կար ժամանակ, երբ նորակերտցիները կարոտ էին խմելու մաքուր ջրի և ստիպված օգտագործում էին հորերից ստացվող ճահճային ջուրը։ 1954 թվականին կոլտնտեսականների ջանքերով 15 կիլոմետր հեռավորությունից խողովակներով բերվեց աղբյուրի ջուր, որը լիովին բավարարում է գյուղի ազգաբնակչության կարիքները։*

*Լուրջ աշխատանք է կատարվել նաև ճանապարհային շինարարության ասպարեզում. 1958 թ. կոլտնտեսության միջոցներով կառուցվել է 12 կիլոմետր երկարությամբ ճանապարհ, որը գյուղը միացնում է պետական խճուղային մագիստրալի հետ։*



*Նորակերտը ամբողջովին էլեկտրիֆիկացված ու ռադիոֆիկացված է։ Կոլտնտեսականներն ունեն մոտ 100 ռադիոընդունիչ։ Նորակերտը ապրում է սովետական առաջավոր գյուղի նորմալ կյանքով։ Այստեղ հաճախակի են տեղի ունենում դասախոսություններ, շաբաթական 3—4 անգամ ցուցադրվում են կինոֆիլմեր և այլն։ Կազմակերպված են ֆուտբոլի, վոլեյբոլի, ըմբշամարտի, ծանր ատլետիկայի և այլ սպորտային խմբակներ։ Գյուղն ստանում է 90 օրինակ «Սովետական Հայաստան», 5 օրինակ «Պրավդա», 10 օրինակ «Կոմունիստ», 20 օրինակ «Հայաստանի կոլտնտեսական» ամսագիր, «Օգոնյոկ», «Ոգնի» և այլն։*

*Գյուղի ազգաբնակչության բուժ-սանիտարական սպասարկման գործը գտնվում է ուշադրության կենտրոնում։ Նորակերտն ունի 10 մահճակալանոց հիվանդանոց՝ ծննդաբերական բաժանմունքով։ Վաղուց արդեն գործում է մանկամսուր. այս տարի նախատեսվում է բացել նաև մանկապարտեզ։ Ավարտվելու վրա է և շուտով շահագործման կհանձնվի տուֆից կառուցվող երկհարկանի հոյակապ մի շենք, որն ունենալու է ջեռուցման սիստեմ։ Շենքը կունենա 400 տեղանոց դահլիճ՝ իր ճեմասրահով և ստացիոնար կինոսարքավորումով, գրադարան, խաղասենյակներ, հյուրասենյակներ, կոլտնտեսության վարչության գրասենյակ, նիստերի դահլիճ և այլն։*

*Կոլտնտեսությունը ունի էլեկտրաղաց, էլեկտրասղոցարան, վարսավիրանոց։ Նոր, լուսավոր, մաքուր տիպային շենքում է տեղավորված գյուղի խանութը։ Այս տարի նախատեսվում է կառուցել նաև ճաշարան ու հացի փուռ։ Ահա թե ինչպես զարգանում է ու բարգավաճում Նորակերտը։*

*ՍՄԿՊ XXI համագումարը կարևորագույն խնդիրներ դրեց սոցիալիստական գյուղի աշխատավորության առջև։ Նորակերտի կոլտնտեսականները ոգեշնչվելով համագումարի որոշումներով, պարտավորվել են յոթնամյա պլանը կատարել հինգ տարում, որի համար նրանք ունեն բոլոր ռեալ նախադրյալները։*

Ջ. ՍԵՎՈՅԱՆ

# ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ՊԱՏՄԱԿԱՆ ՓԱՍՏԱԹՈՒՂԹԸ

Ռուսերեն լույս է տեսել ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարի սղագրական հաշվետվությունը։ Հաշվետվությունը բաղկացած է երկու հատորից, որոնց մեջ զետեղված են ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցումը և եզրափակման խոսքը, պատգամավորների, եղբայրական կոմունիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչների ողջույնները, համագումարի ընդունած բանաձևերն ու որոշումները։ Հավելվածում տրված են պատգամավորների ցուցակը, ելույթ ունեցողների անվանացանկը և համագումարի անունով ստացված ողջույնները։

Հասկանալի է այն կարևոր նշանակությունը, որ ունի XXI համագումարի նյութերի հրատարակությունը։ Սղագրական հաշվետվությունը հնարավորություն է տալիս լրիվ ծանոթանալու համագումարի ողջ աշխատանքին։ Երբ խորամուխ ես լինում այդ հաշվետվության մեջ, երբ ընթերցում ես ու վերընթերցում ընկեր Ն. Ս. Խրուշչովի հոյակապ զեկուցումը, պատգամավորների ու եղբայրական պարտիաների պատվիրակների ելույթները, նրանց ողջույնի ուղերձները, առավել ուժով զգում ես այն խնդիրների վեհությունը, որ քննարկեց համագումարը, նրանց վիթխարի նշանակությունը մեր երկրի և ամբողջ աշխարհի մարդկության ճակատագրի համար։ XXI համագումարի մեծագույն նշանակությունն ամենից առաջ այն է, որ նա հանրագումարի բերելով սովետական հասարակարգի անցած ուղու հիանալի արդյունքները, գծեց մեր երկրի զարգացման նոր հեռանկարը, պատմական այն ամբողջ էտապի հեռանկարը, որ կոչվում է կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջան: Համագումարը մշակեց կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանի տեսական ու պրակտիկ նշանակություն ունեցող կարևոր պրոբլեմները, սահմանեց նոր էտապի գլխավոր խնդիրները, մշակեց տնտեսական, քաղաքական ու գաղափարական այն բոլոր միջոցառումները, որոնք հնարավորություն կտան արագ տեմպերով կառուցելու մեր երկրում կոմունիզմի նյութա-տեխնիկական բազան։ Ահա թե ինչու լիակատար իրավունքով ժողովուրդը XXI համագումարը անվանեց կոմունիզմ կառուցողների համագումար:

XXI համագումարում վառ կերպով դրսևորվեց մեր պարտիայի անսասան միասնությունը, պարտիայի ու սովետական ժողովրդի միասնությունը, ամբողջ միջազգային բանվորական ու կոմունիստական պարտիաների համերաշխությունը, նրանց համախմբվածությունը մարքսիզմ-լենինիզմի դրոշի ներքո։ Համագումարը շոշափեց ամբողջ մարդկությանը հուզող հարցեր, բոլոր աշխատավորների, բոլոր պրոգրեսիվ մարդկանց սրտերը լցրեց նոր, անսասան հավատով խաղաղության ուժերի հաղթանակի նկատմամբ, ակնառու կերպով



ցույց տվեց այն անխզելի կապը, որ գոյություն ունի կոմունիզմի և խաղաղության գործի միջև, մեր երկրի հզոր առաջընթացի և աշխատավոր մարդկության կենսական շահերի միջև։ Ն. Ս. Խրուշչովի զեկուցումը, համագումարի որոշումները հանդիսանում են լենինիզմի հետագա ստեղծագործական զարգացման, ռևոլյուցիոն թեորիայի ու պրակտիկայի կապի վառ օրինակ։ Ուստի հասկանալի է, թե ինչու սովետական մարդիկ և մյուս երկրների աշխատավորներն այնպիսի հսկայական հետաքրքրություն են ցուցաբերում XXI համագումարի նկատմամբ, ուսումնասիրում են նրա որոշումները։ Համագումարի որոշումների ուսումնասիրությունն այժմ գտնվում է մեր պարտիայի գաղափարական աշխատանքի կենտրոնում։ Պարտիական կազմակերպությունների գլխավոր խնդիրը իդեոլոգիական բնագավառում հանդիսանում է և երկար ժամանակ հանդիսանալու է համագումարի բազմաբովանդակ նյութերի պրոպագանդան, այն հաշվով, որ յուրաքանչյուր աշխատավոր խոր կերպով ըմբռնի և գիտակցի իր տեղն ու դերը կոմունիզմի շինարարության իր ճակատամասում։ Այս տեսակետից սղագրական հաշվետվությունը մեծ օգնություն ցույց կտա մեր կադրերին և, հատկապես, մեր պրոպագանդիստներին։

Սղագրության առաջին հատորում է զետեղված ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցումը։ Իր զեկուցման մեջ Ն. Ս. Խրուշչովը ոչ միայն հանգամանորեն շարադրում է յոթնամյա պլանի խնդիրները, այլև մեր երկրում կոմունիզմի ծավալուն շինարարության գիտականորեն հիմնավորված ծրագիրը, կոմունիստական շինարարության նոր էտապի հետ կապված մարքսիստական-լենինյան թեորիայի կարևորագույն հարցերը։ Ընկեր Խրուշչովի զեկուցումը, ինչպես պատկերավոր կերպով ասաց իր ելույթում Ա. Ի. Միկոյանը՝ «Հնչեց որպես կոմունիստական շինարարության մասին մի հոյակապ սիմֆոնիա» (Սղագրական հաշվետվություն, հ. I, էջ 541)։

Հանրագումարի բերելով Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովրդի հաղթանակների արդյունքները, առանձնապես պարտիայի XX համագումարից հետո ձեռք բերված նվաճումները, Ն. Ս. Խրուշչովը իր զեկուցման մեջ կատարում է կարևոր եզրակացություն այն մասին, որ Սովետական Միությունում ձեռք բերված արտադրողական ուժերի, սոցիալիստական արտադրական հարաբերությունների և կուլտուրական զարգացման ներկա մակարդակը թույլ է տալիս նրան թևակոխելու իր զարգացման նոր, կարևորագույն ժամանակաշրջանը՝ կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը:

Այս ժամանակաշրջանի գլխավոր խնդիրներն են, ինչպես մատնանշեց ընկեր Խրուշչովը և համագումարը իր որոշումներում, կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումը, ՍՍՌՄ տնտեսական ու պաշտպանական հզորության հետագա ամրապնդումը և միաժամանակ ժողովրդի նյութական ու հոգևոր աճող պահանջմունքների ավելի լրիվ բավարարումը։ Գործնականում պետք է լուծվի բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ առավել զարգացած կապիտալիստական երկրներին հասնելու և անցնելու պատմական խնդիրը։

Յոթնամյա պլանի կատարումը վճռական քայլ կլինի վերոհիշյալ խնդիրների իրականացման գործում։

Մանրամասն շարադրելով յոթնամյա պլանի գլխավոր խնդիրները տնտե-

սական, քաղաքական, գաղափարական և միջազգային հարաբերությունների բնագավառում, յոթնամյակի առաջադրանքները արդյունաբերության, տրանսպորտի, գյուղատնտեսության, կապիտալ շինարարության, արտադրողական ուժերի տեղաբաշխման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման, սովետական ժողովրդի բարեկեցության ու կուլտուրայի աճման բնագավառում, Ն. Ս. Խրուշչովը խոր վերլուծության է ենթարկում արդի միջազգային դրությունը, կապիտալիզմի հետ սոցիալիզմի տնտեսական մրցության հեռանկարները, այդ մրցության մեջ սոցիալիզմի հաղթանակի պայմանները, յոթնամյա պլանի իրագործման նշանակությունը համաշխարհային սոցիալիստական սիստեմի հետագա ամրապնդման և խաղաղության գործի հաղթանակի համար։

Յոթնամյա պլանի կատարման շնորհիվ, մատնանշում է ընկեր Խրուշչովը, Սովետական Միությունը արտադրանքի ամենագլխավոր մի քանի տեսակների բացարձակ արտադրությամբ կգերազանցի, իսկ ուրիշ տեսակների արտադրությամբ կմոտենա ԱՄՆ-ի արդյունաբերական արտադրության ներկա մակարդակին։ Մինչև այդ ժամանակ ամբողջությամբ վերցրած և բնակչության մեկ շնչին ընկնող գյուղատնտեսական կարևորագույն մթերքների արտադրությունը կգերազանցի ԱՄՆ-ի ժամանակակից մակարդակը։ Հարկավոր կլինի ևս 5 տարի, որպեսզի բնակչության մեկ շնչին ընկնող արտադրության մակարդակով հասնենք և անցնենք ԱՄՆ-ից։ Դա սոցիալիզմի համաշխարհային պատմական հաղթանակը կլինի միջազգային ասպարեզում կապիտալիզմի հետ խաղաղ մրցության մեջ։

Մեծ, անգնահատելի նշանակություն ունեն մեր պարտիայի և մյուս բոլոր եղբայրական կոմունիստական ու բանվորական պարտիաների համար մարքսիզմ-լենինիզմի մի քանի թեորիական հարցերը, որոնց մասին կոմունիզմի շինարարության նոր էտապի կապակցությամբ խոսեց ընկեր Ն. Ս. Խրուշչովը։ Այդ հարցերից են՝ մեր երկրում սոցիալիզմի ոչ միայն լիակատար, այլև վերջնական հաղթանակի մասին թեորիական ու քաղաքական դրույթը, դեպի կոմունիզմ սոցիալիստական սիստեմի առաջշարժման օրինաչափությունների բնույթը, կոմունիստական հասարակության երկու փուլերի՝ սոցիալիզմը կոմունիզմի վերաճելու օրինաչափությունների, սոցիալիստական արտադրահարաբերությունների կատարելագործման, հասարակության կողմից արտադրված նյութական բարիքները հասարակության անդամների մեջ բաշխելու, սոցիալիստական սեփականության երկու ձևերի զարգացման ու մերձեցման, ֆիզիկական ու մտավոր աշխատանքի միջև եղած էական տարբերությունների վերացման, հասարակության քաղաքական կազմակերպման, պետական կառուցվածքի ու կառավարման, պարտիայի ղեկավար դերի բարձրացման հարցերը։

Ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման և համագումարի որոշումներում առաջ քաշված հարցերի լոկ այս թվարկումն իսկ ցույց է տալիս, թե թեորիական ինչպիսի մեծ հարստություն է բովանդակում, սոցիալիստական շինարարության փորձի ինչպիսի կարևոր ընդհանրացումներ կատարեց պարտիայի XXI համագումարը։

Պարտիայի XXI համագումարի սղագրական հաշվետվության մեջ բերված են համագումարում ելույթ ունեցած 86 պատգամավորների ճառերի լրիվ տեքստերը։ Պատգամավորները միահամուռ կերպով հավանություն տվեցին



համագումարի քննարկմանը դրված յոթնամյա պլանի կոնտրոլ թվերին, ընկեր Խրուշչովի զեկուցման բոլոր դրույթներին, բոլոր եզրակացություններին։ Խոր գործիմացությամբ նրանք քննարկեցին յոթնամյա պլանի հոյակապ խնդիրները, բացահայտելով այն նոր ռեզերվները, որոնք հնարավորություն կտան ոչ միայն կատարելու, այլև մեծ չափով գերակատարելու յոթնամյա պլանի առաջադրանքները։ Ելույթ ունեցող ընկերներն անդրադառնում են այն բոլոր կարևորագույն հարցերին, որոնք դրված էին Ն. Ս. Խրուշչովի զեկուցման մեջ և ունեն կենսական նշանակություն կոմունիզմ կառուցող սովետական ժողովրդի համար։ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի կատարման համար վճռական նշանակություն ունեցող հարցերը՝ աշխատանքի արտադրողականության բարձրացումը, խնայողության ռեժիմի կիրառումը, աշխատանքի կազմակերպման, արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի մասնագիտացման և կոոպերացման, գյուղատնտեսության կուլտուրաների բերքատվության բարձրացման, անասունների մթերատվության աճման և այլ բազմաթիվ հարցեր գտնվում էին պատգամավորների ուշադրության կենտրոնում։

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում առանձնակի նշանակություն են ստանում աշխատավորների կոմունիստական դաստիարակության, ժողովրդական լուսավորության, գիտության, կուլտուրայի զարգացման հարցերը։ Այդ բնագավառում պարտիական, կոմերիտական, պրոֆմիութենական և հասարակական այլ կազմակերպությունների խնդիրների մասին խոսում են շատ պատգամավորներ։ Պարտիական կազմակերպությունների գաղափարական աշխատանքներին են նվիրում իրենց ճառերը Մ. Ա. Սուսլովը, Ե. Ա. Ֆուրցևան, Պ. Ն. Պոսպելովը։ Պարտիական-կազմակերպական աշխատանքի մակարդակի բարձրացման, կադրերի ճիշտ ընտրության ու տեղաբաշխման հարցերին հանգամանորեն անդրադառնում է Ա. Ի. Կիրիչենկոն։ Մեծ հետաքրքրությամբ են ընթերցվում Ա. Ի. Միկոյանի, Օ. Վ. Կուուսինենի, Ռ. Յա. Մալինովսկու, Ա. Ա. Գրոմիկոյի ելույթները, որոնք շոշափում են ՍՍՌՄ արտաքին քաղաքականության, արտասահմանյան երկրների հետ նրա տնտեսական կապերի զարգացման, սոցիալիստական համաշխարհային սիստեմի ամրապնդման, ինտերնացիոնալ կապերի ընդարձակման, խաղաղության համար ՍՍՌՄ ակտիվ պայքարի հարցերը։ Ֆ. Ռ. Կոզլովը, Ա. Բ. Արիստովը, Ա. Ն. Կոսիգինը հանգամանորեն խոսում են ՍՍՌՄ արդյունաբերության, տեխնիկայի, գիտության զարգացման խնդիրների մասին յոթնամյակում։ Գյուղատնտեսության խնդիրների մասին է խոսում Ն. Գ. Իգնատովը։ Սովետական ժողովուրդների բարեկամության ամրապնդման, Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության հարցերին է նվիրում իր ելույթը Ն. Ա. Մուխիտդինովը։ Սղագրության մեջ է զետեղված Կ. Ե. Վորոշիլովի ճառը, որը հիվանդության պատճառով չի կարողացել համագումարում արտասանել։ Այդ ճառում ընկեր Վորոշիլովը քննարկում է աշխատավորների դեպուտատների Սովետների խնդիրները մեր պետության զարգացման ներկա ժամանակաշրջանում։

Միութենական ռեսպուբլիկաների պարտիական կազմակերպությունների ղեկավարների ելույթներում բերված են վառ փաստեր Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության հոյակապ արդյունքների մա-

սին։ Պարտիայի XX համագումարի ցուցումների համաձայն տնտեսական ու կուլտուրական շինարարության բնագավառում ազգային ռեսպուբլիկաների իրավունքների հետագա ընդլայնումը է՛լ ավելի նպաստեց այդ ռեսպուբլիկաների արտադրողական ուժերի զարգացմանը, մասսաների տնտեսական ու կուլտուրական բարգավաճմանը, նրանց ակտիվության ու ստեղծագործական նախաձեռնության բարձրացմանը։ Առաջիկա յոթնամյակում նոր թափով զարգանալու է միութենական ռեսպուբլիկաների էկոնոմիկան՝ նրանց բնական ու տնտեսական պայմաններին համապատասխան։

Հայկական ՍՍՌ-ում, օրինակ, արդյունաբերության արտադրանքն աճելու է յոթնամյակում 2,2 անգամ, իսկ գյուղատնտեսական մթերքների արտադրանքը՝ 1,7 անգամ։ Առանձնապես բարձր տեմպերով են աճելու Հայաստանում գունավոր մետալուրգիան, քիմիական և էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը, մեքենաշինությունը։ Գյուղատնտեսության բնագավառում առավել չափով աճելու է անասնապահությունը և այգեգործությունը, մանավորապես խաղողագործությունը։ Նախատեսվում է 1960 թվականին լրիվ էլեկտրիֆիկացնել ռեսպուբլիկայի բոլոր գյուղերը (Սղագրական հաշվետվություն, հ. II, էջ 218—219)։

Մարզերի, երկրամասերի, միութենական ու ավտոնոմ ռեսպուբլիկաների պատգամավորները խանդավառությամբ պատմում են այն պրակտիկ միջոցառումների մասին, որ ձեռնարկում են տեղերում մասսաները յոթնամյա պլանի առաջադրանքները կատարելու և գերակատարելու համար։

Արդյունաբերության տեխնիկական վերազինման, նոր, կատարելագործված հաստոցների, մեքենաների, սարքավորումների արտադրության բնագավառում խոշոր խնդիրներ են լուծելու Մոսկվայի, Լենինգրադի և Միության այլ քաղաքների պանծալի բանվորները, ինժեներա-տեխնիկական աշխատողները։ Մոսկվայի գործարաններում յոթնամյակի ընթացքում յուրացվելու են նոր տիպի 1.140 բարձր արտադրողականություն ունեցող հաստոցների արտադրությունը, ստեղծվում են 400 ավտոմատ գծեր, կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման են ենթարկվելու 27 գործող խոշոր ձեռնարկություններ, բացի այդ նախատեսվում է տեղադրել ձեռնարկություններում 14 հազար նոր ավտոմատներ, ագրեգատներ, հաստոցներ, 1.560 մեքենայացված կոնվեյերային գծեր (Սղագր. հաշվետ., հ. I, էջ 131—132)։ Վիթխարի չափով աճելու է սև և գունավոր մետալուրգիայի արդյունաբերությունը Սվերդլովի մարզում։ Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսների համաժողովրդական քննարկման ժամանակ Սվերդլովի աշխատավորներ հիմնավորված առաջարկություն մտցրին պլանով նախատեսվածի դիմաց 2 միլիոն տոննայով ավելի չուգուն տալ, համապատասխանորեն ավելացնելով պողպատի և պրոկատի արտադրությունը։

Գյուղատնտեսական մթերքների գծով ըստ բնակչության շնչի ԱՄՆ-ին հասնելու և անցնելու վեհ նպատակով ոգեշնչված գյուղի աշխատավորները միջոցառումներ են մշակել՝ զգալի կերպով գերակատարելու յոթնամյա պլանով նախատեսված առաջադրանքները։

Ուկրաինայի գյուղատնտեսության աշխատավորները ձեռնամուխ են եղել մոտակա 5 տարում մսի արտադրությունը, 100 հեկտար հողային տարածության հաշվով, 1965 թվականի համար պլանով նախատեսված 91,5 ցենտների դիմաց հասցնել 101 ցենտների (սպանդանոցային քաշով)։ Կովերի գլխաքանակը կաթնատու անասնապահության շրջաններում յուրաքանչյուր 100 հեկտար տարածության վրա հասնելու է 20—25 գլխի։



Ռյազանի մարզի աշխատավորները որոշել են մսի արտադրության յոթնամյա պլանը կատարել 2—3 տարում, կրկնակի-եռակի անգամ աճելու է գյուղատնտեսական արտադրությունը Բելոռուսական ՍՍՌ-ում։ Այստեղ խնդիր են դրել՝ հասնել 100 հեկտար հողատարածության հաշվով 500 ցենտներ կաթի և 90 ցենտներ սպանդանոցային կշռով մսի արտադրությանը։ Ի դիմաց պլանով նախատեսված 170 հազար տոննա տեսակավորված թեյի կանաչ տերևի, Վրաստանի գյուղատնտեսության աշխատողները պարտավորություն են վերցրել այն հասցնել 200 հազար տոննայի, որով լրիվ կբավարարվի ՍՍՌՄ-ի թեյի պահանջը։ Ուզբեկստանում բամբակի արտադրությունը կաճի մինչև 3600—3800 հազար տոննայի։ Լատվիական ՍՍՌ աշխատավորները պայքարում են յոթնամյակի վերջին յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց ստանալ 800 լիտր կաթ և 100 ցենտներ միս (սպանդանոցային քաշով)։

Չափազանց հետաքրքիր են և ուսանելի Դոնեցի ավազանի ածխահատ Ն. Յա. Մամայի, Մոսկվայի ավտոգողերի գործարանի փականագործ Ա. Մ. Ռիբակովայի, «Լենին» ատոմային սառցահատի մոնտաժող-փականագործ Վ. Ի. Գորբունովի, «Կրասնոյե Սորմովո» գործարանի պողպատ ձուլող Ն. Ի. Անիշչենկովի, Մինսկի ավտոմոբիլային գործարանի բանվոր Դ. Ի. Բարաշկինի ելույթները։ Բանվոր պատգամավորները խորը գործիմացությամբ պատմում են իրենց արտադրական հարուստ փորձի, յոթնամյակի առաջադրանքների կատարման ուղղությամբ իրենց հանքի, գործարանի, բրիգադայի խնդիրների և, առհասարակ, ամբողջ երկրի առաջ ծառացած կարևորագույն խնդիրների մասին։ Նրանք մտցնում են մի շարք արժեքավոր առաջարկություններ, որոնք համապետական նշանակություն ունեն։

Ահա Ա. Մ. Ռիբակովայի ելույթը։ Նա խոսելով Մոսկվայի ավտոգողերի գործարանի կոլեկտիվի վերցրած մեծ պարտավորությունների մասին առաջիկա յոթնամյակում՝ շոշափում է մի շարք կարևորագույն հարցեր, որոնք վերաբերում են ավտոգողերի արտադրությանը առհասարակ ամբողջ երկրում։ Ռիբակովան միաժամանակ ցեխի պարտկազմակերպության քարտուղար է։ Եվ որպես այդպիսին նա կանգ է առնում պարտիական սկզբնական կազմակերպության աշխատանքի բազմաթիվ հարցերի վրա, որոնք ծագում են ներկա էտապում։ Առանձնապես կարևոր առաջարկություններ է անում նա արդյունաբերական ձեռնարկությունների սկզբնական պարտկազմակերպությունների վերահսկիչ իրավունքի հետագա կատարելագործման մասին (Սղագր. հաշվետ., հ. I, էջ 431—434)։

Մեր Հայրենիքի նավաշինարարության խնդիրներին, նավաշինարարների աշխատանքն առավել արդյունավետ կազմակերպելու հարցերին է նվիրում իր ճառը «Լենին» ատոմային սառցահատի մոնտաժող-փականագործ Վ. Ի. Գորբունովը (Սղագր. հաշվետ., հ. I, էջ 368—373)։

Հետաքրքիր ու բովանդակալից են նաև գյուղատնտեսության առաջավորներ՝ Ե. Ա. Դոլինյուկի, Ա. Վ. Գիտալովի, Պ. Ն. Կովալյովայի, Ս. Կ. Բոյկոյի, Ե. Ի. Անդրեևայի, Տ. Ս. Մալցևի ելույթները։ Դրանք պարունակում են համոզիչ փաստեր այն մեծ ռեզերվների վերաբերյալ, որ կան մեր երկրի կոլտնտեսություններում ու սովխոզներում, և որոնք լիակատար կերպով ապա-

հովում են յոթնամյակի կատարումը ոչ միայն ժամկետին, այլև ժամկետից շուտ։

«Ես անձամբ գտնում եմ,— ասաց համագումարի պատգամավոր, Պոլտավայի մարզի Կրեմենչուգի շրջանի Լենինի անվան կոլտնտեսության նախագահ Ս. Կ. Բոյկոն,— որ ոչ մի կոլտնտեսությունում հիմք չկա ետ մնալը արդարացնելու։ Մեր տնտեսության սոցիալիստական սիստեմը աճման այնպիսի հնարավորություններ է ստեղծել, որ Ամերիկայի Միացյալ Նահանգների ոչ մի ֆերմեր երազում էլ չի կարող տեսնել» (հ. I, էջ 441)։

Հափշտակությամբ են ընթերցվում սովետական ականավոր գիտնականների՝ ակադեմիկոս Ի. Վ. Կուրչատովի, ակադեմիկոս Մ. Ա. Լավրենտևի, ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ Ա. Ն. Նեսմեյանովի, Ղազախական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ Կ. Ի. Սատպաևի, նշանավոր բանաստեղծ Ա. Տ. Տվարդովսկու և սովետական ինտելիգենցիայի այլ ականավոր ներկայացուցիչների ելույթները, որոնց մեջ ցայտուն փաստերով մեր առաջ պատկերվում են սովետական գիտության ու կուլտուրայի մեծագույն նվաճումները և նրանց զարգացման փայլուն հեռանկարները մոտ ապագայում։

Համագումարի պատգամավորների ելույթներում բերվում են մերկացնող փաստեր Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի, Բուլգանինի և Շեպիլովի հակապարտիական խմբի արգահատելի գործունեությունից։ Բոլոր ելույթ ունեցողները, ամբողջ համագումարը միահամուռ կերպով և ցասումով դատապարտեցին այդ հակապարտիական խմբին, որը ցանկանում էր շեղել մեր պարտիան լենինյան ուղուց, վիժեցնել ՍՄԿՊ XX համագումարի որոշումների կենսագործումը։

Պարտիայի XXI համագումարին ներկա էին 72 արտասահմանյան կոմունիստական ու բանվորական պարտիաների պատվիրակություններ, իսկ եղբայրական այն պարտիաները, որոնց ներկայացուցիչները չէին կարողացել անձամբ ներկա լինել, դիմել էին համագումարին ողջերձներով։ Նրանց ողջույնի ճառերի և ողջերձների լրիվ տեքստերը ընթերցողը կգտնի «Սղագրություններում»։ Չի կարելի առանց հուզմունքի կարդալ նրանց ելույթները, որոնցում արտահայտված են արտասահմանյան երկրների կոմունիստների, բանվոր դասակարգի և միլիոնավոր աշխատավորների սերն ու համակրանքը, նրանց համերաշխությունը մեր պարտիայի, մեր ժողովրդի նկատմամբ։ Սոցիալիստական երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչները մեծ ոգևորությամբ մեր համագումարին հաղորդում են իրենց հիանալի հաջողությունների մասին։

Կապիտալիստական երկրների եղբայրական պարտիաների ներկայացուցիչների ելույթներում բերվում են հետաքրքիր փաստեր աշխատավորական մասսաների ծանր դրության և այն հերոսական պայքարի մասին, որ մղում են նրանք սոցիալիզմի, դեմոկրատիայի ու խաղաղության համար։ Եղբայրական պարտիաների ներկայացուցիչների բոլոր ճառերում և ողջերձներում ընդգծվում են ՍՄԿՊ XXI համագումարի համաշխարհային նշանակությունը կոմունիզմի և խաղաղության գործի համար։ Նրանք հիացմունքով են արտահայտվում յոթնամյա պլանի և համագումարի կողմից առաջ քաշված կոմունիստական շինարարության ու արդի համաշխարհային զարգացման թեորիական և պրակտիկ եզրակացությունների մասին։ Ամբողջ աշխարհի խա-



ղաղասեր մարդկությանը առանձնապես ոգեշնչում է համագումարի այն հետևությունը, որ ՍՍՌՄ յոթնամյա պլանի կատարմամբ և սոցիալիզմի երկրների էկոնոմիկայի զարգացման բարձր տեմպերի շնորհիվ միջազգային ասպարեզում ուժերի հարաբերակցության գործում կապահովվի վճռական գերակշռություն հօգուտ խաղաղության և կստեղծվեն ռեալ հնարավորություններ պատերազմը, որպես միջազգային հարցերի լուծման միջոց վերացնելու համար:

Արտասահմանյան պատվիրակությունները ընդգծում են Ն. Ս. Խրուշչովի զեկուցման այն դրույթի կարևորությունը, թե «Տեսականորեն ավելի ճիշտ կլիներ ենթադրել, որ սոցիալիզմի երկրները, հաջողությամբ օգտագործելով սոցիալիստական կարգերի հնարավորությունները, այս կամ այն չափով միաժամանակ կթևակոխեն կոմունիստական հասարակարգի բարձրագույն փուլը»։

Եղբայրական պարտիաների ներկայացուցիչները լիակատար կերպով համերաշխվելով մեր պարտիայի լենինյան գծի հետ, ցասումով դատապարտեցին ռևիզիոնիզմը և հատկապես հարավսլավական ռևիզիոնիստներին, որոնք փորձում էին սեպ խրել կոմունիստական պարտիաների և սոցիալիզմի բոլոր երկրների ինտերնացիոնալ միասնության միջև, պառակտում մտցնել նրանց շարքերում։

Մեծ Չինաստանի Կոմպարտիայի ներկայացուցիչ Չժու Էն-լայը ամբողջ համագումարի բուռն ծափահարությունների տակ հայտարարեց.

«Իմպերիալիստները՝ ԱՄՆ-ի գլխավորությամբ, և ժամանակակից հարավսլավական ռևիզիոնիստները չեն խորշում ոչ մի ստոր միջոցի առաջ, ամեն կերպ ձգտում են պառակտում առաջացնել և քայքայել Չինաստանի ու Սովետական Միության միասնությունը։ Բայց նրանց, հիասթափությունից բացի, ոչինչ չի սպասում։ Եվ թող իմպերիալիստները և ժամանակակից ռեվիզիոնիստներն իրենց մխիթարեն դատարկ հույսերով։ Մեր երկու երկրները՝ Չինաստանը և Սովետական Միությունը, մեր սոցիալիստական լագերի բոլոր երկրները հավերժ միաձուլված կլինեն և հերոսական քայլերով առաջ կընթանան կոմունիզմի գլխավոր ուղիով» (հ. I, էջ 158)։

Մարքսիստական-լենինյան միասնության և ինտերնացիոնալ համերաշխության նույն ոգով են տոգորված Ժակ Դյուկլոյի, Տոլյատիի, Գոմուլկայի, աշխարհի բոլոր 33 միլիոնանոց բանակ կազմող կոմունիստների պատվիրակների ելույթները։

ՍՄԿՊ XXI համագումարի սղագրական հաշվետվությունը, ինչպես տեսնում ենք, բովանդակում է շատ մեծ, արժեքավոր նյութ։ Նրա ուսումնասիրությունը զինում է բոլոր կոմունիստներին, մեր ամբողջ ժողովրդին խոր կերպով յուրացնելու արդի էտապում կոմունիստական շինարարության գործնական ու տեսական խնդիրները և հաջողությամբ պայքարելու ՍՍՌՄ տնտեսության զարգացման յոթնամյա պլանի կատարման համար։

Վ. ԱՎԵՏԻՍՅԱՆ

աշխատության հեղինակի գիտական ու պարտիական հետևողականության մասին։

«Որպեսզի պարզ լինի պարբերականի իդեական, դասակարգային պատկերը,— ծանոթացնում է իր աշխատանքի մեթոդին Հով. Պետրոսյանը,— մենք հաճախ տվել ենք թերթերի ու ժուռնալների՝ ծրագրերը, առաջին համարների խմբագրականներից ընդարձակ քաղվածքներ» (հ. I, էջ VII, տես նաև հ. II, էջ XV)։ Բայց, ըստ երևույթին, մտաբերելով, որ ընթերցողներին լավ ծանոթ է մարքսիստական այն հայտնի ճշմարտությունը, թե քաղաքական գործիչների ու պարտիաների (հետևապես նաև նրանց տպագիր օրգանների) մասին պետք է դատել ոչ թե նրանով, թե նրանք ինչ են ասում իրենց մասին, այլ նրանց կատարած գործերով, հեղինակը շտապում է այդ առթիվ հայտնել իր նկատառումները. «Իհարկե,— շարունակում է «բացատրել» Հով. Պետրոսյանը,— թեթևակի մոտեցման դեպքում կարելի է ասել՝ ուրիշ բան է ծրագիրը, ուրիշ է նրա իրականացումը, այդ ծրագրային խոստումները չեն իրականացվել։ Մենք հակառակն ենք գտնում, այդ ծրագրային հոդվածները տվյալ լրագրի կամ ամսագրի գաղափարական ուղղության և բովանդակության վերաբերյալ շատ բան են տալիս» (հ. I, էջ VIII, ընդգծումը մերն է)։ Եվ, հավատարիմ մնալով այս սխալ սկզբունքին, ընկ. Պետրոսյանը մի շարք ռեակցիոն, բուրժուական-նացիոնալիստական պարբերականների գաղափարական ուղղությունն ու նպատակները ներկայացրել է հենց այդ պարբերականներից խնամքով քաղված մեջբերումներով, հաճախ առանց մեկնաբանության։

Օրինակ, նա ընդարձակ մեջբերում է կատարել էսեռական «Աշխատանք» շաբաթաթերթի խմբագրական հոդվածից՝ ցույց տալու համար թերթի նպատակները և ուղղությունը։ ««Աշխատանք»-ը գալիս է աշխատելու մի դասակարգի համար,— կարդում ենք այնտեղ,— որը մինչև օրս դիտավորյալ կերպով շղթայակապ բանտարկված էր՝ քաղաքացիական բանտարգելությամբ և կամայականության շղթաներով։ Դա աշխատավոր դասակարգն էր և ամենից առաջ գյուղացիությունը իր ծայր տգիտությամբ, իր անթիվ ցավերով, գյուղացիությունը՝ բազմատեսակ կարիքների ծանրության տակ ընկճված, անտերության մատնված, սակայն իր անհետաձգելի պահանջներով... Մեր ժողովրդական մամուլը և նրա հետ միասին «Աշխատանք»-ը այժմ կոչված են այդ նոր կյանքի խրախույսը կարդալու, նրա շենքը շինելու, նրան հիմնավորապես կարգավորելու, իսկական աշխատավորների ձեռքով, նրանց ճաշակով և միմիայն նրանց համար» (հատ. II, էջ 58)։ Առնվազն զարմանալի է, որ ընկ. Պետրոսյանը գտնում է, թե այս ծրագրային հոդվածը, այն էլ առանց իր մեկնաբանության, շատ բան է տալիս էսեռական շաբաթաթերթի «գաղափարական ուղղության և բովանդակության վերաբերյալ»։

Այդպես են ներկայացված՝ «Նոր-դար», «Հանդես», «Տավիղ», «Օշական», «Հայ սկաուտ» և մոտ 145 այլ պարբերականներ։ Եթե Հով. Պետրոսյանի «սկզբունքով» ղեկավարվենք, ապա պետք է հավատանք, որ բուրժուական «Ջարկ»-ը (1906—1907 թթ.) «... Նպատակ է դրել իրան՝ տաքությամբ բռնել ազգի հոգեկան կյանքի զարկաթելերը... Ամենայն կորովով պաշտպանել հարստահարված դասակարգերի շահերը... ջերմ պաշտպան հանդիսանալ բանվոր դասակարգի գերագույն շահերին» (հ. II, էջ 63)։

Նույն այդ «սկզբունքով» սպեցիֆիկների օրգան «Ջնդան»-ը (1909 թ., Բաքու) «բանվոր մարդու արթուն պահապանը պիտի լինի... պիտի նպաստի բանվոր մարդու ազատագրմանը ազգամոլության կապանքներից և պիտի աշխատի հարթելու այն ուղին, որի վրայով բոլոր ժողովուրդների բանվոր մասսաները միասին պիտի քայլեն» (հ. II, էջ 159)։ Ի դեպ, նշենք, որ «Ջնդան» շաբաթաթերթի առաջին համարի խմբագրականից բերված վերոհիշյալ հատվածից բացառված է բանվոր դասակարգի հասցեին սպեցիֆիկյան գրչակի թխած հետևյալ ահավոր հերյուրանքը. «Բանվորական շարքերի մեջ տարածված ախտերը, բարոյական մակարդակի զարհուրելի վայրէջքը, դասակարգային համերաշխության բացակայությունն իրենց արժանավոր գնահատումը պիտի գտնեն (շաբաթաթերթի էջերում)»։

Բիբլիոգրաֆիա կազմող ընկ. Հ. Պետրոսյանը մի այլ տեղ ընթերցողին կողմնորոշում է սպեցիֆիկյան «Կոչ» ամսագրի նկատմամբ, ելնելով միայն նրա ծրագրային հոդվածից, ուր ասված է. ամսագիրը «զինված հետազոտության այն կատարյալ եղանակով, որը տալիս է մեզ դիալեկտիկական մատերիալիզմը մենք գալիս ենք ուսումնասիրելու իրերի այդ ընթացքը, ճանաչելու այն ուղին, որով ընթացել է և ընթանում է մեր հասարակական կյանքի զարգացման անիվը» (հատ. II, էջ 206)։ Մասսայական ընթերցողներին ապակողմնորոշող նման հատվածներ շատ կան բիբլիոգրաֆիայի երկու հատորներում։

Եթե բիբլիոգրաֆիան կազմելիս պարբերականների գաղափարական ուղղությունը որոշելու համար ընկ. Պետրոսյանը ելներ ոչ թե նրանց խմբագրականներում արված հայտարարություններից, այլ հենվեր տվյալ օրգանի հանգամանալից ուսումնասիրության վրա, ապա չէր բավարարվի, օրինակ, «Գործ» (1917 թ., Բաքու) ամսագրի № 1-ում տպագրված խմբագրականից մեջբերում կատարելով, որտեղ, ի դեպ, ասված է, որ «Գործ»-ը «պիտի ընթանա ժողովրդական շահերի ուղիով» (հ. II, էջ 292)։ Ընդհակառակը, նա բազմաթիվ փաստերով կկարողանար ցույց տալ, թե ինչպես այդ ամսագրում երկինք էր բարձրացվում 1917 թվականի բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան, խնկարկվում էին նրա անդրկովկասյան պաշտպանները, թե ինչպես ամսագրի էջերում Հոկտեմբերյան ռևոլյուցիայի թշնամիները ամենացածր միջոցներով փորձում էին վարկաբեկել մարդկության նոր արշալույսը ավետող Մեծ Հոկտեմբերը, թե ինչպես, աշխատավորության մեջ բոլշևիկների ունեցած վիթխարի հեղինակությունից ու ազդեցությունից սարսափահար, նրանք բոլշևիզմը հայ իրականության մեջ համարում էին «քաղաքական տհասության և կուլտուրական հետամնացության արդյունք»։ Ահա թե որտեղ պետք է որոնել այդ ամսագրի գաղափարական բովանդակությունը։ Բայց չզարմանաք, եթե այս բոլորից հետո առաջաբանում կարդաք հենց իր՝ բիբլիոգրաֆիան կազմողի հետևյալ հավաստիացումը. «Մեզ մոտ բիբլիոգրաֆը ոչ թե պասիվ արձանագրող է, այլ սկզբունքային, քաղաքական մոտեցմամբ աշխատող, որ նյութերի ընտրության, ծանոթագրման և բիբլիոգրաֆիական մշակման գործում պիտի ապահովի՝ գիտականությունը և պարտիականությունը։ Բայց գիտականությունը և պարտիականությունը, դրանք երկու տարբեր հասկացողություններ չեն։ Պարտիականությունը դա մարքսիստական-լենինյան աշխարհայացքով բիբլիոգրաֆիայի մշակումն է, դա միաժամանակ նյութի գիտական մշակումն է՝ քննադատական մոտեցումը՝ նյութերի ընտրությանը, փաստական տվյալներին, ծանոթագրումը, սխալ հայացքների բացահայտումը» (հ. II, էջ IX)։

Ընդարձակ մի քաղվածք անելով «Ժամանակ» հանդեսի (Փարիզ, 1901 թ.) խմբագրականից, ծանոթագրության վերջում կազմողը գրում է. «Այս ժուռնալի ուղղության մասին նույն խմբագրականում ասված է. «Ճշմարտություն, գիտություն, գեղարվեստ։ Ահա «Ժամանակ»-ի ուղղությունը...» (հ. II, էջ 17)։ Այսքանը և ուրիշ ոչինչ։ Բայց չէ՞ որ էականը, բիբլիոգրաֆիա կազմողի հիմնական խնդիրը պետք է լիներ՝ նշել, ցույց տալ, թե ինչպիսի՞ ճշմարտություն էր պաշտպանում այդ հանդեսը։ Միայն այդ դեպքում բիբլիոգրաֆիա կազմելիս հնարավոր կլինի պահպանել պարտիական ու գիտական սկզբունքի կիրառման լենինյան պահանջը։

Այս կամ այն պարբերականը ծանոթագրելիս ընկ. Պետրոսյանը երբեմն օգտագործում է այդ օրգանին այլ թերթերի կամ հանդեսների տված գնահատականը։ Սրանում, իհարկե, ոչ մի վատ բան չկա, եթե հեղինակը նյութերի նկատմամբ ցուցաբերեր քննադատական մոտեցում։ Այդպես վարվելու դեպքում նա չէր համաձայնի, օրինակ, պոլսահայ լիբերալ-պահպանողական բուրժուազիայի օրգան «Մասիս»-ին «Արձագանք» շաբաթաթերթի տված հետևյալ գնահատականին, որն իբրև դրական գնահատության նմուշ բերված է «Մասիս»-ի ծանոթագրության մեջ. «...Տաճկաստանում ոչ մի հայ լրագիր է ծնած, որ «Մասիսից» ավելի բարձր լիներ կանգնած որևիցե արժանավորությամբ» (հ. I, էջ 144)։ Իհարկե, բնական կլիներ, եթե բուրժուազիայի մի օրգանի կողմից բուրժուազիայի մի այլ օրգանին ուղղված այս դիֆիրամբին անմիջապես հետևեր բիբլիոգրաֆիան կազմողի բացատրությունն այն մասին, որ «Արձագանք»-ը, իր ուղղության շահերից ելնելով, աղավաղել է անցյալ դարի 50—70-ական թվականների արևմտահայ մամուլի պատմությունը, «մոռացության» տալով պրոգրեսիվ, մարտական-դեմոկրատական այնպիսի մի հանդես, ինչպիսին Հ. Սվաճյանի «Մեղու»-ն էր։

Երկրորդ հատորի առաջաբանում և հատորներում նկարագրված առանձին պարբերականների առնչությամբ հեղինակը խոսում է հայ իրականության մեջ եղած մի շարք պարտիաների մասին։ Այստեղ հարկավոր է նշել, որ գաղութահայ իրականության մեջ գործող քաղաքական պարտիաներին Հ. Պետրոսյանի տված գնահատականը (երկրորդ հատորի առաջաբան), ոչ միայն հակասում է տեքստում արված նրա որոշ կոմենտարներին, այլև քաղաքական առումով հեղհեղուկ է և զուրկ հստակությունից։

Բիբլիոգրաֆիայում հանդիպում են այնպիսի փաստական անճշտություններ ու աղավաղումներ. որպիսիք չէր կարող թույլ տալ այն ուսումնասիրողը, որն իր մասին գրել է. «Մենք... հիմնովին ծանոթացել ենք հայ պարբերական մամուլին, գրել ենք և պատրաստել տպագրության հայ պարբերական մամուլի համառոտ պատմությունը և ապա սկսել այս բիբլիոգրաֆիայի կազմումը» (հ. I, էջ XIV)։ Այժմ մեկ բնորոշ օրինակով տեսնենք, թե ինչ է ստացվել այս «հիմնովին» ու «բազմակողմանի» նախապատրաստումից հետո։

Ինչպես հայտնի է 1856—1874 թթ. Կ. Պոլսում լույս տեսած «Մեղու»-ի խմբագիր Հարություն Սվաճյանը հայ մեծ ռևոլյուցիոներ-դեմոկրատ Մ. Նալբանդյանի գաղափարակիցն ու զինակիցն էր արևմտահայ իրականության մեջ։ Հանրահայտ է նաև «Մեղու»-ի վիթխարի

տնտեսությանը տվել է 2 միլիարդ կոռնի օգուտ: Այժմ երկրում՝ 1937 թվականի համեմատությամբ հիվանդանոցային մահճակալների քանակն ավելացել է երկու անգամ: Տարեցտարի կառավարությունն ավելի մեծ գումարներ է հատկացնում ժողովրդական առողջապահության գործին. բավական է ասել, որ եթե 1949 թվականին բնակչության մեկ շնչի հաշվով ծախսվել է 168 կոռն, ապա 1957 թվականին ծախսվել է 440 կոռն: Աշխատավորական լայն մասսաների նյութական բարեկեցության արմատական բարելավման և առողջապահության գործի լավագույն կազմակերպման շնորհիվ բնակիչների կյանքի միջին տևողությունը ավելացել է. այսպես, 1930—32 թթ. տղամարդկանց միջին տարիքը եղել է 52, իսկ կանանցը՝ 55 տարի, ապա այժմ համապատասխանաբար այն կազմում է 67 և 72 տարի:

Չեխոսլովակիայում առանձնակի ուշադրություն է դարձվում մոր ու մանկան պահպանությանը: Մայրերին ու երեխաներին սպասարկում են հարյուրավոր առողջապահական հիմնարկներ, նվազագույն չափերի է հասել երեխաների մահացության տոկոսը. այժմ քութեշից չի մահանում և ոչ մի երեխա, իսկ դիֆտերիայով հիվանդ 100.000 երեխայից միջին հաշվով մահանում է միայն 0,6 տոկոսը (մինչպատերազմը այն հասնում էր 15,5 տոկոսի): Նախապատերազմյան ժամանակաշրջանի համեմատությամբ մինչև 15 տարեկան երեխաների մահացությունը կրճատվել է չորս անգամ: Ամեն տարի երկրի առողջարաններում ու պիոներական ճամբարներում բուժվում և հանգստանում են ավելի քան 120 հազար երեխա:

## ԱԼԲԱՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱ

Երկրի ձեռնարկություններում, հիմնարկներում և գյուղատնտեսական կոոպերատիվներում կազմակերպված քաղխմբակներում ուսումնասիրում են Ալբանիայի Աշխատանքի պարտիայի (մինչև 1948 թ. Ալբանիայի կոմունիստական պարտիա) պատմությունը: Պարտիայի պատմությունն ուսումնասիրում են նաև բարձրագույն ուսումնական հաստատություններում: Պարապմունքների ծրագիրն ընդգրկում է Ալբանիայի կոմունիստական շարժման պատմության հիմնական էտապները: Առաջին էտապը՝ (1917—1939 թվականները) ընդգրկում է բանվորական և կոմունիստական շարժումները մինչև կոմպարտիայի ստեղծումը, իսկ երկրորդ էտապը (1939—1941 թթ.)՝ դա Ալբանիայի Կոմպարտիայի ստեղծման շրջանն է:

«Ալբանիայի կոմունիստական պարտիան երկրի ազատագրման և ժողովրդական իշխանության հաստատման համար մղվող պայքարում»— այսպես է կոչվում պարտիայի պատմության երրորդ բաժինը, որն ընդգրկում է 1941 թվականի նոյեմբերից մինչև 1944 թվականի նոյեմբերն ընկած ժամանակաշրջանը: Հաջորդ բաժինն ընդգրկում է 1944—1948 թվականները. այդ շրջանում մինչև վերջ է հասցվում ժողովրդա-դեմոկրատական ռևոլյուցիան, իրականացվում են տնտեսական խոշոր վերափոխումներ, վերականգնվում է երկրի տնտեսությունը և այլն: Եզրափակիչ մասը նվիրված է կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ժողովրդական տնտեսության ասպարեզում ալբան ժողովրդի նվաճումներին, որոնք ձեռք են բերվել սոցիալիստական երկրների և առաջին հերթին՝ Սովետական Միության եղբայրական անշահախնդիր օգնությամբ:

## ԿՈՐԵԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱ-ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱ

Մեծ վերելք է ապրում ԿԺԴՌ-ի էկոնոմիկան: Երկրի աշխատավորները գործադրում են բոլոր ջանքերը առաջին հնգամյա պլանը կատարել այս տարի՝ ժամկետից երկու տարի շուտ:

Բուռն զարգացում է ապրում մետալուրգիան: Կորեայի Աշխատանքային պարտիան առաջադրել է «Երկաթը և մեքենաները՝ արդյունաբերության արքաներն են» լոզունգը: Ընդգծելով մետալուրգիական արդյունաբերության կարևորությունը, ընկ. Կիմ Իր Սենը ասել է. «Առանց սև մետալուրգիայի զարգացման անհնարին է ապահովել երկրի մեքենաշինության և կապիտալ շինարարության աճը, չի կարելի հուսալ ժողովրդական տնտեսության հետագա վերելքը, ժողովրդի բարեկեցության բարձրացումը»:

1958 թվականին մետալուրգիական արդյունաբերությունը՝ 1945 թ. համեմատությամբ աճել է 1,7 անգամ. միայն մեկ տարում չուգունի արտադրությունը ավելացել է 1,2 անգամ, պողպատինը՝ 1,3 անգամ, գլանվածքինը՝ 1,2 անգամ և այլն: Կարճ ժամանակամիջոցում Խվանխեի մետալուրգիական գործարանում կառուցվեցին և անցյալ տարի շահագործման հանձնվեցին՝ դոմնային առաջին վառարանը՝ տարեկան 250 հազար տոննա և կոքսային մարտկոցը՝ 300 հազար տոննա կարողությամբ:



Կանսեննկոյի պողպատաձուլական գործարանում կառուցվել է չուգունի ձուլման էլեկտրական վառարան, որը լայն հեռանկարներ է բացում երկրի մետալուրգիայի հետագա զարգացման համար:

Կորեայի Աշխատանքային պարտիայի Կենտկոմի 1958 թվականի սեպտեմբերյան պլենումը կոնկրետ միջոցառումներ մշակեց մետալուրգիական արդյունաբերության զարգացումը արագացնելու համար: Պլենումը որոշեց մոտակա չորս-հինգ տարում երկրում արտադրել 4 միլիոն տոննա չուգուն և 3—3,5 միլիոն տոննա պողպատ, այն հաշվով, որ 1959 թվականին ապահովվի հնգամյա պլանով 1961 թվականի համար նախատեսված մակարդակը:

## ՄՈՆՂՈԼԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱ

Գործողության մեջ է ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի զարգացման 1958—1960 թթ. եռամյա պլանը: Հաջողությամբ ավարտվեց 1958 թվականը: Առանձնապես խոշոր են հաջողությունները գյուղատնտեսության բնագավառում, որը հանդիսանում է ՄԺՌ-ի էկոնոմիկայի գլխավոր օղակը: Ժողովրդա-ռևոլյուցիոն պարտիայի XIII համագումարից հետո անցած մեկ տարում 61 տոկոսով աճեց կոոպերացված գյուղացիական տնտեսությունների թիվը, որով և համարյա ավարտվեց գյուղատնտեսության կոոպերացումը. այժմ գյուղատնտեսական կոոպերատիվ միավորումներում ընդգրկված են տնտեսությունների 96 տոկոսը: Մոնղոլ ժողովրդի այդ մեծագույն հաղթանակը լիովին փոխում է մոնղոլական հասարակության արտադրական հարաբերությունները և դասակարգային կառուցվածքը:

Սոցիալիստական շինարարության ներկա էտապին համապատասխան, ժողովրդական Մեծ Խուրալի III սեսիան, որը տեղի ունեցավ վերջերս, զգալի փոփոխություններ մտցրեց ժողովրդական տնտեսության զարգացման եռամյա պլանում: Արդյունաբերության բնագավառում խնդիր է դրված մոտակա տարիներին ավարտել գործող ձեռնարկությունների վերակառուցումն ու ընդլայնումը, ձեռնամուխ լինել նոր գործարանների կառուցմանը: Միայն այս տարի կապիտալ շինարարության ծավալը տասն անգամ կգերազանցի 1952 թվականի մակարդակը: Եռամյա պլանով նախատեսված է կապիտալ շինարարության համար ծախսել զգալիորեն ավելի շատ միջոցներ, քան առաջին և երկրորդ հնգամյակներում: 1965 թվականին Մոնղոլիան կթողարկի երկու անգամ ավելի շատ արդյունաբերական արտադրանք, քան անցյալ տարի: Եռամյա պլանով նախատեսված է 25—30 տոկոսով ընդարձակել բնակարանային շինարարությունը, ինչպես նաև կառուցել առողջապահական, կուլտուր-լուսավորական բազմաթիվ հիմնարկներ: Զգալիորեն կզարգանա նաև գյուղատնտեսությունը: 1960 թվականին անասունների գլխաքանակը կհասնի 25 միլիոնի: Մոնղոլիայի պայմաններում իսկապես ռևոլյուցիոն նշանակություն կունենա խոպան հողերի մեծ մասսիվների յուրացումը:

## ՎԻԵՏՆԱՄԻ ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱ

Վիետնամի աշխատավոր գյուղացիությունը դարեր շարունակ երազում էր հազարավոր հեկտար անջրդի հողերը ոռոգելի դարձնելու մասին: Այդ և ուրիշ շատ երազանքներ այժմ իրականություն են դառնում ժողովրդական իշխանության ձեռնարկած միջոցառումների շնորհիվ:

Տունգ Խինգի շրջանում արագ թափով շարունակվում է Բակ-Խինգ-Խայի խոշոր ջրանցքի կառուցումը: Այդ համաժողովրդական շինարարության մասին քաջ գիտեն ամենափոքրիկ վիետնամցուց մինչև զառամյալ ծերունին: Այդ ջրանցքի կառուցումով մոտ չորս անգամ կավելանա ոռոգվող հողերի տարածությունը:

Մի այլ վայրում՝ Դոնգ-Տխան նահանգում ավարտվել է արհեստական լճի կառուցումը: Առաջներում այդ նահանգի գյուղացիները լսել անգամ չէին ուզում մարտ ամսին բրնձի ցանք կատարելու մասին, որովհետև եղած քառասուն ջրհորները կարող էին ջրել միայն 100 մաու (1 մաուն=3600 քառ. մետրի) հողատարածություն, իսկ մնացած 300-ը մնում էր անջրդի: 1957 թվականի վերջին Վիետնամի ժողովրդական ժողովի պատվիրակությունը՝ շրջանի գյուղացիության հետ միասին ձեռնամուխ եղավ երաշտի դեմ պայքարի գործին: Դոնգ-Տխանում՝ Հյուսիսային Վիետնամի ամենաջրազուրկ այդ շրջանում հորդեց կյանքը: Բարձունքներից հոսող ջուրը կանգնեցվեց, ստեղծվեց արհեստական լիճ, որն ունի երեսուն հազար քառակուսի մետր մակերես՝ հարյուր հազար խորանարդ մետր ջրատարողությամբ: Այդ լիճը հնարավորություն տվեց ամբողջ տարին ոռոգել բրնձի պլանտացիաները:

յին խորհուրդը կազմակերպեց այդ տնկումնե-
րի մշակությունն ու խնամքը։

Չելյաբինսկի կանանց այդ հայրենասիրական նախաձեռնությունը խանդավառությամբ արձագանքեցին Երևանի կանայք։ Քաղաքի մի քանի ձեռնարկություններում արդեն ստեղծվել են կանանց խորհուրդներ։

Երևանի ալյումինի գործարանում ստեղծված կանանց խորհուրդը որոշել է օգնել աշխատողներին՝ ցեխերում ու բանվորական տեղերում սիստեմատիկաբար պահպանել մաքրությունը, հսկողության տակ վերցնել հասարակական սննդի գործը, բանվորական ավանի խանութներում սահմանել օրինակելի կարգ ու կանոն։ Տնային տնտեսուհիները պարտավորվել են կանաչապատել գործարանի արտադրական տեղամասերը, ավանի թաղամասերը, բնակելի շենքերի շրջակայքը, հսկել մանկական հիմնարկների շինարարության աշխատանքները, օգնել դպրոցներին և այլն։ Նման խորհուրդներ են ստեղծվել նաև Կիրովի անվան գործարանում, ալրաղաց կոմբինատում և մյուս ձեռնարկություններում։

Պարտիայի Երևանի քաղաքային կոմիտեի բյուրոն հավանություն տվեց կանանց այդ հայրենասիրական նախաձեռնությանը և որոշեց կանանց խորհուրդներ ստեղծել քաղաքի գործարաններում, ֆաբրիկաներում և բնակելի խոշոր շենքերում։

## ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԿԵՆՑԱՂԱՅԻՆ ՍՊԱՍԱՐԿՈՒՄԸ ԲԱՐԵԼԱՎԵԼՈՒ ՄԱՍԻՆ

ՀԿՊ Կոտայքի շրջկոմի բյուրոն և Կոտայքի շրջսովետի գործկոմը քննարկեցին բնակչության կենցաղային սպասարկումը բարելավելու հարցը։ Բյուրոն և շրջգործկոմը նշեցին, որ շրջանի բնակչության սպասարկման գործը դեռևս վատ է։ Գոյություն ունեցող կենցաղային սպասարկման օբյեկտները, ինչպես իրենց քանակով, այնպես էլ աշխատանքով չեն բավարարում բնակչության աճող պահանջներին։ Կենցաղային սպասարկման ձեռնարկություններն անհրաժեշտ չափով ապահովված չեն սարքավորումներով, գործիքներով, հումքով, նրանց մեծ մասը գտնվում է անբարեկարգ շենքերում։

Շրջկոմի բյուրոն և շրջսովետի գործկոմը միջոցառումներ մշակեցին բնակչության կենցաղային սպասարկումը բարելավելու ուղղությամբ։ Նախատեսվում է հագուստեղենի արհեստանոցներ բացել Արզնի ավանում, Առինջում, Էլառում, կոշիկի անհատական պատվերների արհեստանոցներ՝ Արզնիում, Պտղնիում, Գառնիում, Քյուլիջայում և այլ գյուղերում։ Շրջանի մի շարք կոլտնտեսությունների խորհուրդ է տրված իրենց սեփական միջոցներով կազմակերպել կոշիկի արհեստանոցներ։ Գյուղական և ավանային Սովետների գործկոմներին և կոլտնտեսությունների վարչություններին և պարտկազմակերպություններին հանձնարարված է կենցաղ սպասարկման ձեռնարկությունների համար առանձնացնել հարմար շենքեր։

---

### ՈՒՂՂՈՒՄ

Մեր ամսագրի հինգերորդ համարի 122-րդ էջի ներքևից 18-րդ տողից կարդալ «խոշոր եղջերավոր անասունների թիվը կհասնի 90 միլիոն գլխի» ու այնուհետև ինչպես տեքստում։

Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք
հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66.
Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении, тел. 2—03—18,
2—56—92, 2—04—66.



ՎՖ 04676 Պատվեր 1238 Տիրաժ 9450
Տպ. 8 մամուլ, մամուլում 68,840 նիշ։ Ստորագրված է տպագրության 18/VI 1959 թ.։
Խմբագրությանը հանձնված ձեռագրերը հեղինակներին չեն վերադարձվում։
ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆ № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51։

ԳԻՆԸ 2 Ռ. 50 Կ.